

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**4**

ԱՊՐԻԼ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении


## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն


*ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ* . . . . . . . . . 3

*ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՅՈՒՄԸ* . . . . . . . . . 4

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 115-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

*Ռեմ ՂԱԶԱՆՋՅԱՆ— Լենինյան հոգատարությունը Հայաստանի նկատմամբ* . . . 21

*Ա. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ— Վ. Ի. Լենինը և գաղափարական ներգործության արդյունավետությունը* . . . . . . . . . . . . . . 33

ԴԵՊԻ XXVII ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐ

*Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ— Արդյունավետ վերահսկողության համար* . . . . . . . 39

*Մ. ՎԱՍԻԼՅԱՆ, Մ. ԱԶԱՐՅԱՆ— Կատարելագործել աշխատանքի վարձատրությունը ըստ վերջնական արդյունքների* . . . . . . . . . . 49

*Ս. ԱՄԻՐՅԱՆ— Գաղափարախոսական աշխատանքի կարևոր օղակը* . . . . . 57

*Ֆ. ԱՀԱՐՈՆՅԱՆ, Ն. ՄԵԼԻՔՅԱՆ— Արարման ճանապարհով* . . . . . . 64

ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 40 ՏԱՐԻՆ

*Ի. ԾԱՄԵՐՅԱՆ— Հաղթանակի հզոր աղբյուրը* . . . . . . . . 68

*Լ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ.— Մեծ հայրենականին նվիրված գրականության բարոյական ուժը* . 77

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԴԱՍԻ ԱՌՋԵՎ

*Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ, Անդ. ՄԻՀՐԱՆՅԱՆ— Անկարելի է մթագնել պատմության ճշմարտությունը* . . . . . . . . . . . . . 84



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ

ИНФОРМАЦИОННОЕ СООБЩЕНИЕ О ПЛЕНУМЕ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ АРМЕНИИ . 3
ДОКЛАД ТОВАРИЩА К. С. ДЕМИРЧЯНА . . . . . 4

К 115-ЛЕТИЮ СО ДНЯ РОЖДЕНИЯ В. И. ЛЕНИНА

Рем КАЗАНДЖЯН — Ленинская забота об Армении . . . . 21
А. ВАРДАПЕТЯН — В. И. Ленин и эффективность идейного воздействия 33

НАВСТРЕЧУ XXVII ПАРТСЪЕЗДУ

Г. МАРТИРОСЯН — За действенность контроля . . . . . 39
М. ВАСИЛЯН, М. АЗАРЯН — Совершенствовать оплату труда по конечному результату . . . . . . . . 49
С. АМИРЯН — Важное звено идеологической работы . . . . 57
Ф. АГАРОНЯН, Н. МЕЛИКЯН — По пути созидания . . . . 64

К 40-ЛЕТИЮ ВЕЛИКОЙ ПОБЕДЫ

И. ЦАМЕРЯН — Могучий источник Победы . . . . . 68
Л. КИРАКОСЯН — Нравственная сила литературы о Великой Отечественной . . . . . . . . . . . . 77

ПЕРЕД СУДОМ ИСТОРИИ

Дж. КИРАКОСЯН, Анд. МИГРАНЯН—Затмить правду истории — невозможно . . . . . . . . . 84





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1985 թվականի մարտի 28-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը։

Պլենումը քննարկեց «Կադրերի հետ տարվող աշխատանքի հետագա բարելավման, նրանց գործունեության ոճի և մեթոդների կատարելագործման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները՝ կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի ետհամագումարյան պլենումների պահանջների լույսի ներքո» հարցը։

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան ՀԿԿ Երևանի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ն. Պ. Ստեփանյանը, գյուղտեխսպետկոմի Հրազդանի շրջանային միավորման փականագործմոնտաժողների բրիգադավար ընկ. Վ. Ի. Ցուբինը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր ընկ. Հ. Վ. Թարջումանյանը, ՀԿԿ Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Հ. Խաչատրյանը, ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Օ. Թոփուզյանը, Երևանի պետական համալսարանի ռեկտոր ընկ. Ս. Ա. Համբարձումյանը, ՀԿԿ Արագածի շրջկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ս. Հ. Զինդոյանը, «Սովետ Էրմանիստանի» թերթի խմբագիր ընկ. Զ. Կ. Կուրբանովը, Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստր ընկ. Հ. Ս. Շահինյանը, Կիրովականի լուսատեխնիկական գործարանի հավաքման արտադրամասի բրիգադավար ընկ. Ի. Հ. Հակոբյանը։

Քննարկված հարցի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ընդունեց համապատասխան որոշում։

Եզրափակման խոսքով պլենումում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Կենտկոմի պլենումը ընկ. Է. Ա. Մանուկյանին հաստատեց «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր, ընկ. Զ. Կ. Կուրբանովին՝ «Սովետ Էրմանիստանի» թերթի խմբագիր։

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը։

Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Վ. Ի. Պոլյակովը։

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

*Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես սովետական բոլոր մարդիկ, մեծ գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մարտյան արտահերթ պլենումի որոշումները, ուր վառ կերպով արտացոլված են կուսակցության քաղաքականության հաջորդայնությունը, նրա անսասան հավատարմությունը իր ավանդույթներին ու սկզբունքներին, արարման և խաղաղության լենինյան կուրսին։*

*Հանրապետության կոմունիստները, ամբողջ ժողովուրդը ջերմորեն, միահամուռ հավանությամբ ընդունեցին պլենումի որոշումը կուսակցական և պետական նշանավոր գործիչ ընկեր Մ. Ս. Գորբաչովին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրելու մասին, որն իր բոլոր գիտելիքները, հարուստ փորձն ու կազմակերպչական տաղանդը նվիրաբերում է կուսակցության քաղաքականության կենսագործմանը, անձնվիրաբար ծառայում Լենինի մեծ գործին։*

*Կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի ետհամագումարյան պլենումների մշակած ստրատեգիական գիծը, նշվեց պլենումում, եղել և մնում է անփոփոխ։ Դա երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, հասարակության կյանքի բոլոր կողմերը կատարելագործելու գիծն է։ Այն ընդգրկում է ինչպես արտադրության նյութատեխնիկական բազայի վերափոխումը, հասարակական հարաբերությունների, նախ և առաջ տնտեսական հարաբերությունների համակարգի կատարելագործումը, այնպես էլ բուն մարդու զարգացումը, նրա կյանքի ու աշխատանքի նյութական պայմանների, նրա հոգևոր նկարագրի որակական բարելավումը։*

*Կուսակցությունն իր առաջնահերթ խնդիրն է համարում վճռական շրջադարձ կատարել ժողովրդական տնտեսությունը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու գործում, կարճ ժամկետում այն դուրս բերել գիտատեխնիկական ամենաառաջավոր դիրքեր, հասնել հանրային աշխատանքի արտադրողականության համաշխարհային բարձրագույն մակարդակին։ Կուսակցությունն անշեղորեն կվարի իր մշակած սոցիալական քաղաքականությունը, ավելի ու ավելի խոր և կոնկրետ բովանդակությամբ կհագեցնի ծրագրային դրույթը՝ ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար։ Նրա քաղաքականությունը նպատակամղված է եղել և կլինի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության դաշինքի, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության անշեղ ամրապնդմանը։*

*Գաղափարախոսական գործունեության կարևոր խնդիրներն են՝ բարձրացնել սովետական մարդկանց աշխատանքային և սոցիալական ակտիվությունը, ամրապնդել կարգապահությունը, դաստիարակել հայրենասիրություն և ինտերնացիոնալիզմ։ Այսուհետ ևս վճռական միջոցներ կձեռնարկվեն կարգուկանոնի հետագա հաստատման, մեր կյանքը խորթ երևույթներից, հասարակության և նրա քաղաքացիների շահերի նկատմամբ ամեն մի ոտնձգությունից զերծ պահելու, սոցիալիստական օրինականությունը ամրապնդելու նպատակով։*

*Արտաքին քաղաքականության բնագավառում մեր կուրսը հստակ է ու հետևողական, նշվեց պլենումում։ Դա խաղաղության և առաջադիմության կուրսն է։ ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը այդ կուրսի իրականացման պայքարում իրենց առաջին պատվիրանն են համարում պահպանել և ըստ ամենայնի ամրապնդել եղբայրական բարեկամությունը սոցիալիստական մեծ ընկերակցության երկրների հետ։ Ելնելով հավասարության, փոխադարձ հարգանքի և ներքին գործերին չմիջամտելու սկզբունքներից, մեր երկիրը հանդես է գալիս բոլոր պետությունների խաղաղ, փոխշահավետ համագործակցության օգտին։ Սովետական Միությունը բարի կամքին միշտ բարի կամքով կպատասխանի, վստահությանը՝ վստահությամբ։ Բայց մեր հայրենիքի և նրա դաշնակիցների շահերը մենք երբեք զանց չենք առնի։*

*«Մեր առջև ծառացած բարդ խնդիրների լուծումը,— պլենումում արտասանած իր ճառում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— ենթադրում է կուսակցության հետագա ամրապնդում, նրա կազմակերպող և ուղղություն տվող դերի բարձրացում։ ՍՄԿԿ-ն միշտ եղել և ելնում է լենինյան այն մտքից, որ սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է։ Այդ քաղաքականությունը, որը մշակվում է կոլեկտիվ կերպով, կիրականացվի հետևողականորեն ու անշեղորեն։ Կուսակցությունը հենց այն ուժն է, որն ի վիճակի է հաշվի առնելու երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների շահերը, նրանց ի մի համախմբելու, ժողովրդի եռանդը մոբիլիզացնելու կոմունիստական արարման ընդհանուր գործի համար»։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի մարտյան պլենումի արդյունքների համաժողովրդական հավանությունը մեկ անգամ ևս ցուցադրեց կուսակցության ու ժողովրդի կուռ միասնությունը, կոմունիստների, բոլոր աշխատավորների վճռականությունը՝ անելու ամեն ինչ, որպեսզի է՛լ ավելի հարուստ ու հզոր լինի սովետական հայրենիքը, է՛լ ավելի լրիվ ի հայտ բերվեն սոցիալիզմի ստեղծարար հնարավորությունները, որպեսզի նվաճվեն առաջընթացի առավել բարձր բնագծեր, հարազատ կոմունիստական կուսակցության XXVII համագումարը նշանավորվի աշխատանքային և ստեղծագործական նորանոր նվաճումներով։*

*Մեր լենինյան կուսակցությունը դեպի իր XXVII համագումարն է գնում ստեղծագործական ուժերով և արարման եռանդով առլեցուն։ Առաջիկա համագումարը խոշորագույն իրադարձություն կլինի մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքում, կընդհանրացնի հաշվետու ժամանակաշրջանում կուսակցության կատարած աշխատանքի արդյունքները, կնշի հաջորդ հնգամյակում և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում երկրի զարգացման հեռանկարները, կընդունի ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը։*

*Պատմական նշանակության այն խնդիրները, որ կառաջադրի ՍՄԿԿ ծրագիրը, մեր երկրի հետագա բազմակողմանի զարգացման այն բոլոր պլանները, որ կնախանշի համագումարը, բնականաբար, պետք է իրականացնեն կադրերը, մեր մարդիկ։ Ահա թե ինչու նրանք մեր հետագա առաջընթացի, առաջադրված սոցիալ-տնտեսական և դաստիարակչական նպատակների հաջող իրականացման հիմնական, վճռական գործոնն են, ահա թե ինչու կուսակցությունը կադրային քաղաքականությունը համարում է այն կարևորագույն լծակներից մեկը, որի օգնությամբ ակտիվորեն ներգործում է հասարակության կյանքում տեղի ունեցող բոլոր պրոցեսների վրա։*

*Կադրային քաղաքականության լենինյան սկզբունքները կուսակցության կադրային աշխատանքի հիմքերի հիմքն են, առանցքն ու էությունը, դրանք եղել են ու կան նրա գործունեության հուսալի կողմնացույցը։ Կադրային քաղաքականության իրականացման ուղղությամբ գիտականորեն հիմնավորված, բազմակողմանի և հետևողական աշխատանք է տանում կուսակցության Կենտրոնական կոմիտեն։ Այդ քաղաքականությունը կառուցվում է լուծվող սոցիալ-տնտեսական խնդիրներին համապատասխան, հաշվի առնելով բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների շահերը։*

*Կուսակցության կադրային քաղաքականությունը մշտապես զարգանում է, ստեղծագործաբար հարստանում նոր բովանդակությամբ, ճշգրտվում, հենվելով*

* Տպագրվում է հապավումներով։

պատմական տվյալ փուլում լուծվող խնդիրների բնույթից։ Է՛լ ավելի են զարգանում և հաստատվում կադրերի հետ տարվող աշխատանքի՝ սոցիալիստական կարգերին հատուկ դեմոկրատական ձևերն ու մեթոդները։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործման՝ կուսակցության առաջադրած լայնածավալ խնդիրների իրականացումը, բնականաբար, ենթադրում է նաև մեր կադրային աշխատանքի, կադրերի ընտրության, ուսուցման և տեղաբաշխման ամբողջ համակարգի կատարելագործում։

Այդ հարցի լուծման համար ծրագրային նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտկոմի հիմնադրույթները ժամանակակից կադրային քաղաքականության մի շարք հարցերի վերաբերյալ։ Նշելով լենինյան սկզբունքների խստիվ պահպանման հիմքի վրա կադրերի հետ տարվող աշխատանքի մշտական բարելավման անհրաժեշտությունը, ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեներին նպատակամղում է հաստատակամորեն հասնել այն բանին, որ տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերը գլխավորեն քաղաքականապես հասուն, իրենց գործին քաջատեղյակ ղեկավարներ, որոնք օժտված լինեն բարոյական վսեմ հատկանիշներով, հեղինակություն վայելեն մասսաների մեջ, ընդունակ լինեն հաջողությամբ կենսագործելու կուսակցության քաղաքականությունը։

Հանրապետական կուսակցական կազմակերպությունը, շեշտում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, ՍՄԿԿ XXVI համագումարից հետո մեծ աշխատանք է կատարել կադրերի որակական կազմի բարելավման, նրանց ընտրության, տեղաբաշխման, դաստիարակման և որակավորման բարձրացման ասպարեզում։

Մեր կազմակերպությունում, ինչպես և ամբողջ կուսակցության մեջ, կադրային աշխատանքում հաստատվել է գիտական մոտեցման և բազմակողմանի հիմնավորվածության, որոշակի կայունության պահպանման, աշխատողների պատասխանատվության և ինքնուրույնության բարձրացման կուրս։ Հավատը, վստահությունն ու հարգանքը մեզ մոտ զուգորդվում են կադրերի նկատմամբ ցուցաբերվող սկզբունքային վերաբերմունքի հետ, որը նրանց հնարավորություն է ընձեռում ձեռք բերելու վստահության զգացում, ասպարեզ բացում նախաձեռնության և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման համար։

Կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը մշտապես գտնվում են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, նրա բյուրոյի և քարտուղարության, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Մեր կուսակցական կազմակերպության կադրային աշխատանքում կարևոր իրադարձություն եղավ 1983 թվականի ապրիլին կայացած Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը, որը քննության առավ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության աշխատանքի մասին Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի հաշվետվությունը։ Կենտկոմի պլենումում հարցի քննարկումը վերածվեց հանրապետական կուսակցական կազմակերպության կադրային քաղաքականության շուրջ սկզբունքային ու շահագրգիռ, օգտակար ու գործարար խոսակցության։ Պլենումն արձանագրեց Կենտկոմի, նրա բյուրոյի և քարտուղարության կադրային աշխատանքի արդյունավետությունը, նրա համապատասխանությունը կուսակցության կադրային քաղաքականության պահանջներին։

Նախահամագումարյան ժամանակաշրջանում կուսակցական աշխատանքի են առաջ քաշվել ժողովրդական տնտեսության շատ մասնագետներ։ Բարելավվել է կուսակցության քաղկոմ-շրջկոմների քարտուղարների կուսակցական-քաղաքական կրթության գործը, նրանց կեսից ավելին ստացել կամ ստանում է բարձրագույն կուսակցական կրթություն։ Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների քարտուղարների և աշխատողների մեծ մասը գործնական դպրոց է անցել ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, աշխատել է որպես սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղար, եղել սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատանքում։



Կուսակցության քաղկոմ-շրջկոմների քարտուղարներից յուրաքանչյուր երրորդը իր ուղին սկսել է որպես բանվոր կամ կոլտնտեսական։

Մենք ունենք կադրային հզոր պոտենցիալ։ Կուսակցական, պետական, տնտեսական աշխատանքի, կուլտուրական շինարարության կարևորագույն տեղամասերը գլխավորում են քաղաքականապես հասուն, կրթված, իրենց գործին խորապես տիրապետող ղեկավարներ, մասսաների փորձառու կազմակերպիչներ ու դաստիարակներ, կուսակցության և ժողովրդի հանդեպ բարձր պատասխանատվությամբ օժտված մարդիկ։

Տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման ասպարեզում հանրապետության ձեռք բերած հաջողությունները մեծապես կապված են մեր կադրերի արգասավոր գործունեության, նրանց որակական կազմի բարելավման, աշխատանքի ոճի կատարելագործման համակողմանի հիմնավորված ծրագրի հետևողական իրականացման հետ։

Մեր կադրերի հաջող գործունեության պարտադիր պայմանն ու բնորոշ գիծն են դարձել մասսաների մեջ աշխատելու կարողությունը, նրանց կազմակերպչական ունակությունը։ Զգալիորեն մեծացել է գաղափարախոսական գործոնների՝ գիտակցականության, գաղափարայնության, քաղաքական լայն կուլտուրայի, կրթվածության մակարդակի ազդեցությունը կադրային աշխատանքի վրա։ Մեր կադրերն սկսել են ավելի շատ հաշվի առնել նաև իրենց գործունեության սոցիալ-քաղաքական,դաստիարակչական կողմերը։ Մշտապես բարձրանում է ղեկավարների, կոմունիստների գաղափարատեսական մակարդակը։

Ամբողջությամբ վերցված՝ գործնական, մասնագիտական բարձր մակարդակով են աչքի ընկնում էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, գաղափարախոսական ոլորտի, գիտության ու կուլտուրայի ղեկավար կադրերը։ Նրանց մեծ մասը հաջողությամբ է լուծում իր առջև ծառացած խնդիրները, գործի նկատմամբ հանդես բերում ստեղծագործական մոտեցում ու ձեռներեցություն։։ Աշխատավորական կոլեկտիվներն իրենց միջավայրից առաջադրել են արտադրության հարյուրավոր տաղանդավոր կազմակերպիչներ ու մասնագետներ, իրենց գործի հիանալի նորարարներ, որոնց անուններն այսօր հայտնի են ամբողջ աշխատավորական Հայաստանին։

Դրա հետ մեկտեղ, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, մեր կադրային աշխատանքում կան նաև նեղ տեղեր, թույլ են տրվում վրիպումներ։ Պատասխանատու տեղամասերում երբեմն հայտնվում են այնպիսի ղեկավարներ, որոնք գլուխ չեն հանում գործից, ետ են մնում կյանքի պահանջներից, չեն ցուցաբերում ստեղծագործական մոտեցում, ձեռներեցություն, աշխատում են հին ոճով։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, Կենտկոմի բաժինները առանձին դեպքերում աչքաթող են անում դա, ժամանակին չեն լուծում հարցերը, դրանց անդրադառնում են ուշացումով, երբ գործին արդեն վնաս է հասցված։ Մյուս կողմից՝ մեզանում ղեկավարներ առաջ քաշելիս երբեմն դրսևորվում է հապճեպություն, ոչ խորամիտ, անկետային մոտեցում։ Դեռևս լիովին արմատախիլ չեն արված սուբյեկտիվ գնահատականների հիման վրա, անձնական նվիրվածության նկատառումով կադրեր ընտրելու փաստերը, որն անխուսափելիորեն ստեղծում է անպահանջկոտության մթնոլորտ, հանգեցնում տարբեր կարգի նեգատիվ հետևանքների, բացասաբար անդրադառնում ամբողջ աշխատանքի արդյունքների վրա։

Անհրաժեշտ է վճռականորեն վերացնել այս թերությունները, խստագույն վերահսկողություն սահմանել, որպեսզի կադրերի հետ տարվող աշխատանքի լենինյան սկզբունքները պահպանվեն անխախտ, ըստ էության, իրականացվեն բոլոր կուսակցական կազմակերպություններում, պետական և տնտեսական կառավարման բոլոր օղակներում։ Ավելի խստապահանջ մոտեցում պետք է հանդես բերել ղեկավար պաշտոնների առաջ քաշվող աշխատողների քաղաքական հատկանիշները գնահատելու հարցում։ Իսկ այդ հատկանիշները նախ և առաջ դրսևորվում են նրանով, թե ապագա ղեկավարը որքան խորն է ըմբռնում կուսակցության քաղաքականությունը, որքանով է պատրաստ անձնվեր, ակտիվ աշխատանքի՝ հանուն այդ քաղաքականության կենսագործման։

Առանձնապես բարձր պահանջներ են ներկայացվում կուսակցական աշխատողներին։ Իրենց բոլոր գործերում ու արարքներում, մարդկանց հետ ունեցած փոխհարաբերություններում նրանք պետք է լինեն կոմունիստին հատուկ գաղափարական ու բարոյական լավագույն հատկանիշների մարմնացում։ Միայն այդ դեպքում նրանք կարող են հեղինակություն լինել ուրիշների համար, հաջողությամբ վարել քաղաքական և կազմակերպչական աշխատանք, լուծել առաջադրված խնդիրները։

Ներկայումս, գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, հսկայական հրատապություն է ձեռք բերել լենինյան այն պահանջը, որ ղեկավար պոստերի առաջ քաշվեն խորապես բանիմաց մարդիկ։ «...Կառավարելու համար,— նշում էր Վ. Ի. Լենինը,— հարկավոր է լինել բանիմաց, հարկավոր է լիովին և ճշգրիտ իմանալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է իմանալ այդ արտադրության տեխնիկան դրա ժամանակակից բարձրության վրա, հարկավոր է ունենալ որոշակի գիտական կրթություն»։

Այժմ, երբ ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում պայքարը ժողովրդական տնտեսությունը գիտատեխնիկական և կազմակերպական որակապես նոր մակարդակի հասցնելու, հանրային արտադրության ինտենսիվացման, դրա արդյունավետության բարձրացման համար, բացառիկ նշանակություն են ձեռք բերում կադրերի պրոֆեսիոնալ բանիմացությունը, նրանց տնտեսական գիտելիքները, ստեղծագործաբար և մասշտաբայնորեն դատելու, հեռանկարայնորեն գործելու կարողությունը, գիտության և տեխնիկայի նվաճումներին զգայուն արձագանքելու ունակությունը։ Առանց այս ամենի անհնար է լիարժեք ժամանակակից ղեկավար լինել։

Պետք է ասել, որ մեր որոշ կուսակցական, սովետական ու տնտեսական մարմիններ հաճախ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում այս հանգամանքներին, ակտիվորեն չեն ձգտում բարելավել ղեկավար կադրերի որակական կազմը։ Վերցնենք նյութական արտադրության ոլորտը։ Վիճակագրությունը ցույց է տալիս, որ հանրապետության արդյունաբերության մեջ դեռևս մեծ է այն աշխատողների տեսակարար կշիռը, ովքեր զբաղեցնում են մասնագետների հաստիքային պաշտոններ, սակայն չունեն բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն։

Դա վերաբերում է թե՛ արդյունաբերությանը, թե՛ գյուղատնտեսությանը, թե՛ էկոնոմիկայի մյուս ճյուղերին և թե կենսագործունեության բոլոր ոլորտներին։

Եվ սա այն դեպքում, երբ մեր հանրապետությունը երկրում ամենաառաջավոր դիրքեր է գրավում դիպլոմավոր մասնագետների թվով։ Ուրիշ էլ ինչո՞վ կարելի է բացատրել դա, եթե ոչ՝ առանձին կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների անբավարար կադրային աշխատանքով, ճյուղերի, ձեռնարկությունների ու տնտեսությունների որոշ ղեկավարների անհեռատեսությամբ, իսկ երբեմն էլ՝ անպատասխանատվությամբ։

Կադրերի հետ տարվող աշխատանքի արատավոր ոճը խոր արմատներ է գցել, օրինակ, հանրապետության սննդարդյունաբերության մինիստրության «Հայգինխարդ Արարատ» արդյունաբերական միավորումում։ Միավորման ղեկավարության կողմից կադրերի ընտրության և տեղաբաշխման կուսակցական սկզբունքների կոպիտ խախտմամբ վերջին տարիներս ընդունվել կամ ղեկավար աշխատանքի են նշանակվել մի շարք աշխատողներ, որոնք չունեն համապատասխան կրթություն, որակավորում, փորձ։ Նրանց մեջ քիչ չեն իրենց վարկաբեկած և անգամ նախկինում դատված անձինք։ Ճյուղի ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների կեսից ավելին չունի բարձրագույն կրթություն, նույնն է վիճակը նաև տեխնոլոգիական պաշտոններում։ Մինչդեռ գինեգործները միավորումում հերթագրված են ըստ մասնագիտության աշխատանքի տեղավորվելու համար, իսկ հայկական գյուղատնտեսական ինստիտուտի գինեգործության տեխնոլոգիայի ֆակուլտետի շրջանավարտները ապարդյուն կերպով մաշում են միավորման ղեկավարների աշխատասենյակների շեմերը։



Կադրերի հետ նման աշխատանքի պարագային զարմանալի՞ է արդյոք, որ ճյուղում անբավարար է արտադրանքի որակը, հաճախակի ոտնձգություններ են թույլ տրվում ժողովրդական ունեցվածքի նկատմամբ։

Հանգամանորեն վերլուծելով կադրերի հետ տարվող աշխատանքի տարբեր ասպեկտները՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ասում է, որ ղեկավար պաշտոնների առաջ քաշելիս մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների, կուսակցական կոմիտեների թույլ տված սխալների հետևանքով տեղ է գտնում մի իսկական կադրային աթուրմա։ Քիչ չեն դեպքերը, երբ առանձին ձեռնարկություններում ու կազմակերպություններում տարին մեկ նոր դիրեկտոր կամ ղեկավար է հայտնվում։ Նա կադրերի հետ տարվող աշխատանքի պրակտիկայից վերցրած կոնկրետ փաստերով ցույց է տալիս, որ, օրինակ, թեթև արդյունաբերության, սննդարդյունաբերության, տեղական արդյունաբերության, բնակկենցաղային սպասարկման և մի քանի այլ մինիստրությունների ու գերատեսչությունների սիստեմներում միշտ չէ, որ ղեկավար աշխատանքի նշանակելիս համակողմանիորեն ուսումնասիրվում են թեկնածությունների բարոյաքաղաքական ու գործարար հատկանիշները։

Քննադատական սուր խոսք ուղղելով հիշյալ մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների հասցեին՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը միաժամանակ նշում է կադրային քաղաքականության ասպարեզում կուսակցության համապատասխան քաղկոմների ու շրջկոմների թույլ տված լուրջ թերացումները, ընդգծում գործունեության այս կարևորագույն բնագավառում կուսակցական ու սովետական ղեկավար աշխատողների անձնական պատասխանատվության բարձրացման անհրաժեշտությունը։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը գյուղատնտեսության մինիստրության, կուսակցության գյուղական շրջկոմների, Կենտկոմի բաժնի ուշադրությունն է հրավիրում նաև հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում ղեկավար կադրերի չարդարացված հաճախակի փոփոխման վրա։ Այստեղ, ասում է նա, սկզբունքային կուսակցական պահանջկոտությունը երբեմն փոխարինվում է վարչարարությամբ, աշխատանքից ազատելով։ Տնտեսական ղեկավարների փոփոխման հաճախականությունը բարձր է հատկապես Հոկտեմբերյանի, Սպիտակի, Իջևանի, Գորիսի, Գուգարքի շրջաններում։

Գյուղատնտեսության բնագավառը ղեկավարող ընկերները, և ո՛չ միայն նրանք, պետք է հաշվի առնեն քննադատությունը և շտկեն վիճակը։

Իրավիճակը բարվոք չէ նաև այնպիսի կարևոր ճյուղում, ինչպիսին է շինարարությունը։ Այստեղ նույնպես չարդարացված կերպով հաճախակի են ձեռնարկությունների ղեկավարների փոփոխման դեպքերը։ Համապատասխան մինիստրությունները պետք է գործուն միջոցներ ձեռնարկեն դրան վերջ տալու համար։ Չէ՞ որ հայտնի է, որ հաջող, արգասավոր աշխատանքի պարտադիր նախադրյալներից մեկը կադրերի կայունությունն է։

Կուսակցական կոմիտեները, մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է լրիվ հրաժարվեն վարչարարությունից, կադրերը հաճախակի փոփոխելուց, հետևողականորեն վարեն նրանց, հատկապես տնտեսական կադրերի կայունության ապահովման գիծ։ Հենց այստեղ իսկ շեշտենք, որ կայունությունը ոչ մի դեպքում չպետք է հանգեցնի քարացածության, կադրերի լիակատար անշարժության, աշխատանքի լճացման։ Առանձին ղեկավարների, որոնց մեջ բթանում է ընկալման սրությունը, նորի զգացումը, որոնք հաշտվել են թերությունների հետ, զուրկ են հեռանկարը տեսնելու ունակությունից, անհրաժեշտ է և պետք է փոխել։

Եվ ապա։ Գյուղական որոշ շրջաններում բարձրորակ գյուղատնտեսական և այլ մասնագիտությունների կադրերի սուր պակասի պայմաններում անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկվում, որպեսզի երիտասարդ կադրերի համար ստեղծվեն բնակարանակենցաղային պատշաճ պայմաններ, այդ պատճառով ցածր է նրանց ամրացումը տեղերում։ Ավելին, կան ոչ քիչ փաստեր, երբ շրջանային մարմինները աշխատանքի չեն տեղավորում իրենց իսկ հայտերով

Փորձը ցույց է տալիս, որ կադրերի գործունեության մեջ եղած շատ թերություններն ու սխալները, պաշտոնական դիրքի չարաշահումները, կուսակցական էթիկայի խախտումների փաստերը և անգամ քրեականորեն պատժելի գործողությունները հետևանք են կուսակցական մարմինների կողմից նրանց աշխատանքի անբավարար վերահսկման, այն բանի, որ գործն ամենուրեք չի դրված այնպես, որպեսզի յուրաքանչյուր ղեկավար մշտապես վերահսկվի թե՛ վերևից, թե՛ ներքևից՝ մասսաների կողմից։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը կոնկրետ փաստեր է բերում այն մասին, թե ընդհանուր գործին ինչպիսի վնաս կարող են հասցնել կադրերի ընտրության գործում կուսակցական պատշաճ պահանջկոտության բացակայությունը, չարդարացված ներողամտությունը նրանց հանդեպ, ովքեր պարսավելի արարքներ են թույլ տալիս։ Նա բերում է այն օրինակը, թե ինչպես Արագածի շրջանային ագրոարդյունաբերական միավորման նախագահի պաշտոնից հեռացվածը նշանակվում է Աշտարակի շրջանի Օշականի սովխոզի դիրեկտոր։ Այստեղ նա դարձյալ թույլ է տալիս խախտումներ և զգալի վնաս հասցնում տնտեսությանը։ Կադրային աշխատանքի սկզբունքների անտեսման հետևանքով Սպանդարյանի շրջանի հասարակական սննդի № 2 միավորման դիրեկտոր է նշանակվում մեկը, որի նկատմամբ քրեական գործ է հարուցված այստեղ թույլ տրված մեքենայությունների համար։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը խստորեն քննադատում է ինչպես վերը նշված, այնպես էլ զեկուցման մեջ բերված մի շարք ուրիշ փաստերի համար մեղավորներին, կադրերի ընտրության ասպարեզում լուրջ սխալներ թույլ տված կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարների։

Մենք պետք է կանոն դարձնենք, շարունակում է նա, որ գործը ձախողած կադրը չի կարող նորից առաջ քաշվել որպես ղեկավար, քանի դեռ նա ստորին օղակում աշխատելով, չի ապացուցել, որ իրեն նորից կարելի է լուրջ գործ վստահել։ Եվ այստեղ պետք է սկզբունքային հետևողականություն ցուցաբերեն թե՛ կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները, թե՛ Կենտկոմի բաժինները։

Մարդկանց արդարացի վրդովմունքն են առաջ բերում այն անձանց կատարած խախտումները, բարոյազանց քայլերը, հանցագործությունները, ովքեր պաշտոնի բերումով պետք է կանգնած լինեին օրինականության պահպանման դիրքերում, պայքարեին հասարակական կարգի ամրապնդման համար։

Փաստերը նորից ու նորից համոզում են, որ աշխատողներին առաջ քաշելիս պետք է ամենասևեռուն ուշադրություն դարձնել նրանց բարոյական հատկանիշներին, ղեկավար պաշտոնի, պատասխանատու աշխատանքի ճանապարհը փակել անարժան, իրենց վարկաբեկած անձանց առջև։ Այս առումով հարկ կլինի առավել մեծ ուշադրություն նվիրել իրավապահպան մարմինների կոմպլեկտավորմանը, այն հաշվով, որպեսզի այստեղ բացառվի անազնիվ մարդկանց ներթափանցումը։

Կուսակցության Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները պետք է ղեկավար կադրերի մեջ անդուլ կերպով դաստիարակեն գաղափարական համոզվածություն, նվիրվածություն գործին, բարոյական և քաղաքական վսեմ հատկանիշներ, հասնեն այն բանին, որպեսզի ղեկավար պաշտոններ զբաղեցնեն անբասիր վարկի տեր աշխատողներ, որոնք հեղինակություն են վայելում ո՛չ թե պաշտոնական դիրքի, այլ իրենց անձնական հատկանիշների շնորհիվ։ Այս գործին մեծապես կնպաստի «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման լրիվ և անթերի կենսագործումը։

Կուսակցության կադրային քաղաքականությունը, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, իր արմատներով գնում է դեպի աշխատավորական կոլեկտիվներ՝ սոցիալիստական հասարակության այդ սկզբնական բջիջները։ Հենց այստեղ, ստեղծարար գործունեության պրոցեսում է սկսվում ապագա ղեկավարների ձևավորումը։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունները՝ որպես աշխատավորական կոլեկտիվների քաղաքական միջուկ, վերջին տարիներս կուտակել են կադրերի ընտրության, առաջքաշման և դաստիարակության գործի հետագա դեմոկրատացման, այդ աշխատանքում հասարակական սկզբունքների զարգացման արժեքավոր փորձ։ Աշխատողների հատկանիշները ավելի լավ ուսումնասիրելու, հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով պարբերաբար անցկացվում է արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների և մասնագետների ատեստավորում։

Հարկավոր է, սակայն, նշել, որ ոչ բոլոր կուսակցական կազմակերպություններն են անհրաժեշտ վերահսկողություն իրականացնում այդ գործի նկատմամբ։ Իսկ խնդիրն այն է, որ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները վերաատեստավորում և մրցութային ընտրություն անցկացնելիս ապահովեն կադրերի գաղափարաքաղաքական, բարոյական և պրոֆեսիոնալ հատկանիշների օբյեկտիվ և համակողմանի քննարկումը։ Փորձը ցույց է տալիս, որ այն կոլեկտիվներում, ուր աշխատավորների նկատմամբ բարձր պահանջկոտության մթնոլորտ է տիրում, որտեղ ղեկավարն ու կուսակցական և հասարակական կազմակերպությունները գործում են համատեղ, որտեղ հաշվի են նստում մարդկանց կարծիքի հետ, որպես կանոն, կադրերի ընտրության գործը ավելի բարվոք է։ Ամենուրեք նման մթնոլորտի ստեղծումը կուսակցական կազմակերպությունների հրատապ խնդիրներից մեկն է։

Կադրերի դաստիարակության լավ դպրոց է կոմերիտմիությունը։ Երիտասարդները հատկապես արագ են աճում, արագ դրսևորում իրենց ընդունակությունները, երբ ակտիվորեն մասնակցում են կոմերիտական, հասարակական-քաղաքական աշխատանքին։ Ներկա սերունդը ավելի կրթված է, ունի բազմակողմանի պատրաստություն։ Քաղկոմների ու շրջկոմների խնդիրն է ակտիվ, հեռանկարային երիտասարդ աշխատողներին անպայման անցկացնել աշխատավորական կոլեկտիվներում կատարելիք գործնական աշխատանքի բովայով, օգնել նրանց առնականանալու աշխատանքում, ձևավորվելու որպես մասնագետ, կազմակերպիչ, նախապատրաստել ավելի բարդ ու ընդգրկուն գործունեության։

Հարկ է հատկապես նշել կանանց կուսակցական, սովետական, տնտեսական և այլ ղեկավար աշխատանքների առաջ քաշելու անհրաժեշտությունը։ Ըստ անցած հաշվետու-ընտրական կամպանիայի արդյունքների՝ կուսկազմակերպությունների կին քարտուղարների թիվը մեզանում կազմում է 39,1 տոկոս։ Մեծ է նաև կին մասնագետների թիվը։ Ինչպես տեսնում եք, մենք ունենք կանանց ղեկավար պաշտոնների առաջ քաշելու բավականաչափ մեծ ռեզերվ, բայց ահա եղած հնարավորությունները դեռևս լրիվին չեն օգտագործվում։ Մի շարք ասպարեզներում ղեկավար աշխատողների թվում կանանց տեսակարար կշիռը չի համապատասխանում աշխատանքում զբաղեցրած նրանց դերին։

Բոլոր մակարդակի կադրերի հետ տարվող աշխատանքի արդարացված ձև է աշխատողների ստաժավորումը առաջավոր ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, կուսակցական մարմիններում, որի գլխավոր նպատակն է աշխատողին նախապատրաստել նրա համար նոր, ավելի բարդ պարտականությունների կատարմանը, զինել լավագույն փորձով։ Վերջին տարիներս լայնորեն է օգտագործվում նաև կադրերի հետ աշխատանքի մի այնպիսի ձև, ինչպիսին են կուսակցության Կենտկոմում կուսակցության քաղկոմների, շրջկոմների քարտուղարների, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմների նախագահների, մինիստրների, գերատեսչությունների ղեկավարների հետ անցկացվող զրույցները։ Տարբեր մակարդակի ղեկավար աշխատողների հետ հանդիպումներ ու զրույցներ են անցկացվում քաղկոմների ու շրջկոմների մեծ մասում։ Զրույցների ընթացքում

րողանան կազմակերպել գործը, պետք է լինեն ճշտակատար մարդիկ, պետք է աչքի ընկնեն կատարողական բարձր կարգապահությամբ, ձեռներեցությամբ և ստեղծագործական մոտեցմամբ:

Ցավոք, մեզանում ամենուրեք չէ, որ սովորել են ճշտորեն սահմանել նպատակները, առաջնահերթ անելիքները և դրանց համաձայն էլ ընդունել կշռադատված, կոնկրետ որոշումներ, որոնք կոմպլեքսայնորեն ներառնեն բոլոր հարցերն ու պրոբլեմները, դրանց իրականացման ուղիներն ու միջոցները: Մյուս կողմից (որտեղ մենք ավելի շատ ենք կաղում)՝ միշտ չէ, որ մեր որոշումները իրականացվում են ամբողջովին և ժամանակին, ինչը և, բնականաբար, վնաս է հասցնում գործին:

Աշխատանքի այս երկու հիմնական ուղղություններում տեղ գտած թերությունների վերացմանը մենք պետք է նպատակամղենք մեր կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների, սովետական ու տնտեսական մարմինների, կառավարման բոլոր օղակների ջանքերը:

Մենք ամենքս կարևորագույն գործ ենք համարում պարենային ծրագրի կատարումը: Ճշմարիտ է և այն, որ ծրագրի գլխավոր կետերից մեկը անասնապահության զարգացումն է, մսի ու կաթի արտադրության ծավալի մեծացումը: Իսկ կարելի՞ է արդյոք հասնել դրան առանց հանրային հոտի ընդլայնված վերարտադրության: Իհարկե՝ ոչ: Եկեք տեսնենք, թե ինչպես է կատարվում «1982—1985 թվականներին հանրապետությունում հոտի վերարտադրությունը բարելավելու և կովերի գլխաքանակն ավելացնելու միջոցառումների մասին» Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի որոշումը: Ամբողջությամբ վերցված հանրապետությունում այդ որոշմամբ հաստատված առաջադրանքները կատարվել են. 1982 թվականին՝ 96,5, 1983-ին՝ 95,5, 1984-ին՝ 95 տոկոսով: Մի՞թե սա թույլատրելի է:

Անդրադառնալով վերոհիշյալ որոշման իրականացման գործում կուսակցության Կրասնոսելսկի շրջկոմի աշխատանքին՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ շրջանի մի շարք սովխոզներում անասնապահական մթերքների արտադրության ծավալը շարունակ փաստորեն մնում է նույն մակարդակին: 1981—1984 թվականներին յուրաքանչյուր երրորդ տնտեսություն չի կատարել կաթի մթերումների պլանները, յուրաքանչյուր չորրորդը՝ մսինը: Նկատելի բարելավում չկա սելեկցիոն, տոհմաբուծական աշխատանքում: Կուսակցության շրջկոմի բյուրոն չի հասել այն բանին, որ կադրերի հետ տարվող աշխատանքը դառնա յուրաքանչյուր տնտեսության արտադրական գործունեության բարելավման վճռական պայմաններից մեկը: Թույլ է կադրերի ռեզերվի պատրաստման աշխատանքը: Վերջին չորս տարիներին սովխոզների 16 դիրեկտորներից փոխվել է 10-ը:

Կամ մեկ այլ բնագավառ: Ստուգումները ցույց են տվել, որ 1982—1983 թվականներին և 1984 թվականի առաջին կիսամյակում կուլտուրայի մինիստրությունը հսկողության վերցված հանձնարարություններից ու որոշումներից յուրաքանչյուր երկրորդը կատարել է ժամկետների խախտմամբ: Նման օրինակներ կարելի է բերել նաև այլ մինիստրություններից ու գերատեսչություններից: Այս ամենը վկայում է, որ մեզ մոտ շատ տեղերում դեռևս ցածր է կատարողական կարգապահությունը, ղեկավարների նկատմամբ պատշաճ պահանջկոտություն չի ցուցաբերվում հանձնարարված գործի համար, թույլ է նրանց գործունեության վերահսկումը:

Անշեղորեն կատարելագործելով իրենց գործունեության ձևերն ու մեթոդները՝ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, բոլոր աստիճանի սովետները, մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է ձգտեն գործարարության հաստատմանն իրենց աշխատանքում: Գործարարությունը բնութագրվում է գործը վարելու հմտությամբ, աշխատանքի հստակությամբ ու կազմակերպվածությամբ, խոսքի և գործի, որոշման և կատարման միասնությամբ, կարգապահությամբ ու ձեռներեցությամբ, թերությունների, անտըն-



տեսվարության և վատնողության հանդեպ անհանդուրժողականությամբ, ծագող դժվարությունները հաղթահարելու, առկա հնարավորություններն ու ռեզերվներն օգտագործելու, ռեալ ձեռքբերումների և վերջնական ծանրակշիռ արդյունքների հասնելու գործնական նպատակամետությամբ:

Ցավոք, աշխատանքի նման ոճը առայժմ բնորոշ է ոչ բոլոր կուսկոմիտեներին:

Կուսակցական մարմիններն ու կազմակերպությունները պետք է իրենց գլխավոր խնդիրը համարեն ամենուրեք գործնականության և գործարարության, իրական հնարավորությունների օպտիմալ հաշվառման, ինչպես նաև ձեռքբերվածի սկզբունքային քննադատական գնահատականի հաստատումը:

Այդ գործում մեծ տեղ է հատկացվում կուսակցական ապարատին, որը պետք է մշտապես նպատակամղված լինի կուսակցության քաղաքականության իրականացմանը, կուսակցական որոշումների վերահսկման ու կատարման կազմակերպմանը: Նրա կարևորագույն խնդիրն է՝ ուժեղացնել կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը տեղերում, գործնական օգնություն ցույց տալ սկզբնական կուսակցական կազմակերպություններին, հրահանգավորել մարդկանց, առավելագույն գործարարություն հաղորդել աշխատանքին, ստեղծագործաբար ընդհանրացնել առաջավոր փորձը, հասնել բացահայտված թերությունների վերացման:

Փորձը ցույց է տալիս, որ շատ թերություններ ու սխալներ, տարբեր կարգի չարաշահումներ հետևանք են կադրերի աշխատանքի պատշաճ վերահսկման բացակայության: Մինչդեռ, պատահում է, մեզանում ո՛չ միայն առանձին կադրերի, այլև ամբողջ կազմակերպությունների աշխատանքը երբեմն տարիներ շարունակ չի ստուգվում, նրանք հաշվետու չեն լինում վերադաս մարմիններում և դրանով իսկ, ըստ էության, մնում են վերահսկումից, քննադատությունից դուրս:

Կարևոր նշանակություն ունի քննադատության և ինքնաքննադատության ոգու հաստատումը աշխատավորական բոլոր կոլեկտիվներում: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը հուսալի միջոց են բոլոր աշխատողներին տոգորելու բարոյական վեհ հատկանիշներով, ձեռներեցությամբ, անհանդուրժողականությամբ քարացածության, լճացման հանդեպ:

Անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, հասնել այն բանին, որ դրանք սրությամբ և օպերատիվորեն արձագանքեն աշխատանքում թույլ տրվող ամեն մի թերության, գործերի վատ վիճակին, հոգան, որ քննադատությունը միշտ լինի գործնական ու կոնստրուկտիվ, անկեղծ ու շիտակ, ազնիվ ու սկզբունքային:

Քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը նպաստում է կուսակցական և կոլեկտիվների ժողովներում, միասնական քաղօրերում հանրապետական և տեղական մարմինների հասցեին արված քննադատական դիտողություններն ու առաջարկությունները հաշվի առնելու, իրացնելու, դրա արդյունքների մասին աշխատավորներին տեղեկացնելու այն կարգը, որը գործում է հանրապետական կուսակցական կազմակերպությունում:

Աշխատանքում կուսակցական ոճի հաստատումը ենթադրում է անզիջում պայքար բյուրոկրատիզմի ամեն դրսևորման, համապետական շահերի անտեսման, անպատասխանատվության և ձևականության փաստերի դեմ: Բյուրոկրատիզմի և անբարեխղճության արտահայտություն է, օրինակ, այն, որ որոշ աշխատողներ խուսափում են իրենց իրավասության հարցերի լուծումից, այն բարդելով ուրիշների ուսերին: Նրանք իրենց ամբողջ ջանքերը գործադրում են ոչ թե խնդիրների հաջող լուծման, այլ այն բանի համար, թե ինչպես որևէ կերպ «փակեն» հարցը, կամ այն «փոխանցեն» մեկ այլ գերատեսչության, իրենց ամեն կողմից «պատնեշեն» թղթերով՝ պատասխանատվությունից խուսափելու համար:

Մյուս կողմից էլ անհրաժեշտ է վճռականորեն կասեցնել հարցերը ամեն գնով, օրենքը շրջանցելով լուծելու սիրահարների՝ այսպես կոչված «գործնա-

կամպանիա չէ և միշտ կլինի հասարակական պրոգրեսի մեծ նպատակների նվաճման ամենագործուն միջոցների մեր զինանոցում։

Այդ կարևորագույն գործին ամենաակտիվ մասնակցությունը պետք է բերեն սովետները, արհմիությունները, կոմերիտմիությունը։ Մշտապես կատարելագործելով աշխատանքի ոճն ու մեթոդները՝ նրանք պարտավոր են ըստ ամենայնի բարձրացնել իրենց դերը սոցիալ-տնտեսական և դաստիարակչական բոլոր խնդիրների լուծման գործում։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ցուցումները մեզ պարտավորեցնում են բարձրացնել հանրապետության կյանքի բոլոր ոլորտների ղեկավարման արդյունավետությունը, այսօրվա բարձր պահանջների մակարդակին հասցնել կադրերի հետ տարվող ողջ աշխատանքը, բարելավել նրանց գործունեության ոճը, ձևերն ու մեթոդները։ Հմտորեն օգտագործելով առկա հնարավորությունները՝ հարկավոր է կոմունիստների, բոլոր աշխատավորների ջանքերը նպատակամղել կուսակցության առաջադրած ստեղծարար ծրագրերի, ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի արտահերթ՝ մարտյան պլենումի առաջադրած մեծ ու պատասխանատու խնդիրների իրականացումն ապահովելուն։

«Ժամանակը պահանջում է վերից վար կուսակցական բոլոր կազմակերպությունների լարված, ստեղծագործական աշխատանք,— պլենումում շեշտեց ընկեր Մ. Ս. Գորբաչովը։— Բոլոր տեղամասերում, ամենուրեք և ամենուր կոմունիստները պետք է քաղաքացիական պարտքի, հասարակության բարօրության օգտին բարեխիղճ աշխատանքի կատարման օրինակ ծառայեն, ամենուրեք հաստատեն աշխատանքի լենինյան ոճը։ Դա նախ և առաջ վերաբերում է կուսակցության կադրերին, կուսակցական և պետական ղեկավարներին։ ՍՄԿԿ-ն անշեղորեն կվարի պահանջկոտությունն ուժեղացնելու, հանձնարարված գործի համար պատասխանատվությունը բարձրացնելու գիծը»։

Ուստի կարևոր է, որ մենք բոլորս, յուրաքանչյուր կոմունիստ ու աշխատավոր նոր եռանդով, բարձր պատասխանատվության զգացումով ձեռնամուխ լինենք գործին։ Շատ անելիքներ ունենք, ընկերնե՛ր, այս տարվա, ամբողջությամբ վերցրած 11-րդ հնգամյակի տնտեսական և սոցիալական զարգացման պլանները հաջողությամբ կատարելու և, դրանով իսկ, գալիք հնգամյակի վստահ մեկնարկն ապահովելու համար։ Խնդրի իրագործումը դժվարացրին խստաշունչ ձմեռն ու տարերային աղետները։ Դա մեզ պարտավորեցնում է ամենուրեք, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության բոլոր օղակներում, շինարարության մեջ, տրանսպորտում, կենսագործունեության բոլոր բնագավառներում բարձրացնել կազմակերպվածությունն ու կարգուկանոնը, աշխատանքային ու պետական կարգապահությունը, համախմբվել, առավելագույն ջանքեր գործադրել, մոբիլիզացնել ամբողջ ուժերը, գործի դնել բոլոր ռեզերվները թերին լրացնելու և նախատեսված բնագծերին անպայման հասնելու համար։

Մասսաների աշխատանքային խանդավառությունը, նրանց բարձր քաղաքական և հասարակական ակտիվությունը, Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի 40-ամյակը, հարազատ կոմունիստական կուսակցության XXVII համագումարը արժանավայել դիմավորելու համար ամբողջ հանրապետությունում ծավալված լայն շարժումը մեզ բոլորիս համակում են այն հաստատ վստահությամբ, որ այդ խնդիրը պատվով կկատարվի։

Թույլ տվեք, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հավաստիացնել կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը անհրաժեշտ ամեն ինչ կանի կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման, նրանց գործունեության ոճի ու մեթոդների կատարելագործման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումները հետևողականորեն իրագործելու համար, նոր հաջողությունների կհասնի ստեղծարար աշխատանքում, արժանավայել ավանդ կմուծի մեր մեծ հայրենիքի հետագա բարգավաճման գործում։ **(Բուռն ծափահարություններ)**։

---



# ԼԵՆԻՆՅԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԿԱՏՄԱՄԲ

**ՌԵՄ ՂԱԶԱՆՋՅԱՆ**

ՀԱԶԱՐԱՎՈՐ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ու փաստաթղթերից բաղկացած լենինյան հարուստ ժառանգությունը, որը խնամքով հավաքվել և հրատարակվել է նրա հիսունհինգ հատորանոց Երկերի լիակատար ժողովածուում և տասներկու հատորանոց կենսագրական ժամանակագրությունում, պարունակում է 180-ից ավելի աշխատություն ու փաստաթուղթ, որոնք այս կամ այն չափով վերաբերում են Հայաստանին և հայ ժողովրդին, նրա պատմությանը։ Դրանք նախ և առաջ Վ. Ի. Լենինի այն երկերն են, որոնցում համաշխարհային պրոլետարիատի առաջնորդը մերկացնում և անարգանքի սյունին է գամում Հայաստանի նկատմամբ հետադիմական կառավարությունների վարած հակաժողովրդական քաղաքականությունը, դեմ է դուրս գալիս նրա նվաճման, մասնատման և գաղութացման փորձերին, առաջադրում է ազգերի ինքնորոշման իրավունքի հիման վրա հայկական հարցի արդարացի լուծման ծրագիր, բազմաթիվ օրինակներ է բերում հայերի կյանքից, հանդես է գալիս հայ ժողովրդի ազգային-ազատագրական շարժման աջակցության օգտին։

Լենինյան ժառանգության մյուս մասը կազմում են այն բազմաթիվ նամակները, հեռագրերը, երկտողերն ու որոշումների նախագծերը, ինչպես նաև Վ. Ի. Լենինի ստորագրած փաստաթղթերը, որոնցում դրսևորվել են փոքրաթիվ հայ ժողովրդի կարիքների նկատմամբ նրա հսկայական ուշադրությունն ու հոգատարությունը։ Դրա հետ մեկտեղ այդ փաստաթղթերը վկայում են Վլադիմիր Իլյիչի քաջատեղյակությունը հայ իրականությանը, բազմաչարչար ժողովրդի ակնկալություններին։ «...Լենինը շատ լավ հասկանում է մեր վիճակը»,— գրել է Վահան Տերյանը 1917 թ. նոյեմբեր-դեկտեմբերին իր եղբորը ուղղված նամակներից մեկում։ (Վ. Տերյան, **Երկերի ժողովածու**, հ. 3, Ե., 1963, էջ 482)։

Երրորդ խմբի մեջ մտնում են բազմաթիվ գրական և այլ աղբյուրներ, դրանցից քաղվածքներ, նշումներ և այլն, որոնցից Վ. Ի. Լենինն օգտվել է իր ամենօրյա բազմաբնույթ գործունեության ընթացքում։ Դրանցից շատերն անմիջականորեն առնչվում են Հայաստանի պատմությանը և պերճախոս կերպով վկայում հայկական թեմատիկայի նկատմամբ Իլյիչի մշտական հետաքրքրության մասին։

Միաժամանակ այս ամենի ետևում թաքնված է ինֆորմացիայի հավաքման ու մշակման մի տիտանական աշխատանք։ Հանրահայտ են այն պահանջները, որ Լենինը ներկայացնում էր հարցի այս կողմին։ «Ստույգ փաստեր, անվիճելի փաստեր,— գրել է նա,— ահա թե ինչն է... առանձնապես

социал-демократия на Кавказе» (ч. I, Женева, 1910) գիրքը: Մի տարի
անց Բեկզադյանը նրան մանրամասն նամակ է ուղարկում Ռուսաստանի և
Թուրքիայի հայերի շրջանում ծավալված ազգային շարժման վերաբերյալ
(տե՛ս Ա. Ա. Բեկզադյան, **Նամակներ, հոդվածներ, փաստաթղթեր**: Ե., 1981,
էջ 15), իսկ 1913 թ. սեպտեմբերին Շահումյանը հայկական հարցի վերա-
բերյալ երկու զեկույց է ներկայացնում Վ. Ի. Լենինին (տե՛ս Ստ. Շահումյան,
**Երկերի լիակատար ժողովածու հինգ հատորով**, հ. 2, Ե., 1976, էջ 321): Բո-
լոր այս և բազմաթիվ այլ փաստերը վկայում են, որ Լենինին խորապես հե-
տաքրքրել է հայ ժողովրդի ճակատագիրը:

Բազմազգ լինելով տեղերում, այդ թվում նաև Ռուսաստանի ծայրա-
մասերում, գործերի վիճակին, աշխատավոր լայն զանգվածների ակնկալու-
թյուններին, զանազան քաղաքական կուսակցությունների ծրագրերին ու գոր-
ծունեությանը, Վ. Ի. Լենինն արդեն դարասկզբին քննոշեց հայկական կու-
սակցությունների քաղաքական հավատամքը: Այսպես, 1903 թ. փետրվարին
«Իսկրա»-ում լույս տեսած **«Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանի-
ֆեստի մասին** հատուկ հոդվածում Վ. Ի. Լենինը ողջունում էր այդ կազմա-
կերպության ստեղծումը որպես «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բան-
վորական կուսակցության նոր անդամի», հատկապես նշելով «Միության վե-
րաբերմունքը դեպի ազգային հարցը» և «ազգային հարցի ճիշտ դրվածք
տալու նրա հիանալի փորձը» (**ԵԼԺ**, հ. 7, էջ 129—133):

Հետագայում Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Կովկասի սոցիալ-քաղաքական
կյանքի առանձնահատուկ պայմանները նպաստել են այնտեղ մեր կուսակ-
ցության առավել մարտական կազմակերպություններ ստեղծելուն» (**ԵԼԺ**,
հ. 10, էջ 226): Եվ որպես այդ կազմակերպությունների դրական հատկանիշ-
ներից և առանձնահատկություններից մեկը, Վ. Ի. Լենինը մատնանշում էր
այն հանգամանքը, որ նրանցում «ս.-դ. վրացիները+հայերը+թաթարնե-
րը+ռուսները աշխատում էին **միասին... մ ի ա ս ն ա կ ա ն** ս.-դ. կազմա-
կերպության մեջ» (ԵԼԺ, հ. 48, էջ 200), ինչպես նաև պրոպագանդան վար-
վում էր «միաժամանակ վրացերեն, հայերեն, թաթարերեն և ռուսերեն լեզու-
ներով» (**ԵԼԺ**, հ. 23, էջ 68): Ուշագրավ է նաև, որ 1904 թ. կուսակցության
խորհրդում արտասանած ճառում Վ. Ի. Լենինը դեմ է դուրս գալիս «Հայ
ս.-դ. բանվորական կազմակերպությանը» (սպեցիֆիկներին) միջկուսակցա-
կան կոնֆերանսին հրավիրելուն՝ «այդ կազմակերպությունը սոցիալիստ-հե-
ղափոխականներին մոտ լինելու» կապակցությամբ, իսկ հնչակյանների թեր-
թի վերաբերյալ նշվում է, որ այն «միշտ չէ, որ եղել է սոցիալ-դեմոկրատա-
կան», առաջարկելով վերահսկողություն սահմանել նրա նկատմամբ (տե՛ս
ԵԼԺ, հ. 8, էջ 543, 546), և սա մեկ անգամ ևս հաստատում է, որ Լենինը
անդուլ կերպով հետևում էր և լավ ծանոթ էր հայ իրականությանը:

Հատկապես ուշագրավ են Հայաստանի նկատմամբ զավթողական ծրա-
գրերի մերկացումը Լենինի կողմից, հայկական հարցի լուծման նրա ծրա-
գիրը: Վերևում արդեն նշվեց, որ դեռևս իր առաջին աշխատություններում
Վ. Ի. Լենինը հայերին նշում էր ճնշվող ազգերի թվում: 1912 թ. սկսած
Լենինը հսկայական ուշադրություն է նվիրում ազգային հարցի լուծ-
մանը և այդ առթիվ եռանդագին ուսումնասիրում է նաև հայկական հարցին
վերաբերող նյութերը: Նույն 1912 թ. իր **Բանվորական դեպուտատների մի
քանի ելույթների հարցի շուրջը** և **Դումայի բանվորական դեպուտատների և
նրանց դեկլարացիայի հարցի շուրջը** հոդվածներում Լենինը նշում է, որ Պե-
տական դումայի բանվորական դեպուտատները պետք է եռանդագին մեր-
կացնեն զավթումների՝ այդ թվում նաև Թուրքահայաստանի զավթման, քա-
ղաքականությունը (տե՛ս **ԵԼԺ**, հ. 22, էջ 239, 245): Վ. Ի. Լենինը մերկաց-
նում է նաև միջազգային իմպերիալիզմին, որը ոչինչ չի ասում մի շարք
երկրների ապագա դեմոկրատական կառուցվածքի մասին. դրանց թվում նա
նշում է նաև Հայաստանը (տե՛ս ԵԼԺ, հ. 23, էջ 147): Հետագա տարիներին
Լենինը արտասահմանյան գրադարաններում ուսումնասիրում է Հայաստանի



պատմությանը և հայ ժողովրդին ուղղակիորեն վերաբերող մի շարք գրքեր,
ինչպես Կ. Ֆ. Լեման-Հաուպտի **Հայաստանը նախկինում և այժմ** (Բեռլին,
1910), Ֆր. Բոդենշտեդտի **Կովկասի ժողովուրդները և նրանց ազատագրա-
կան պատերազմները...** (1885), Բ. Իշխանյանի **Կովկասյան ազգությունների
ազգային կառուցվածքը, մասնագիտական խմբավորումը և հասարակական
շերտավորումը (վիճակագրական-տնտեսական ուսումնասիրություն)** գիրքը
(Բեռլին, 1914), Ռ. Ա. Ֆադեևի **Կարծիք արևելյան հարցի վերաբերյալ** (ՍՊբ,
1870), Գ. Ա. Եվրեինովի **Մերձավոր արևելյան հարցի գաղափարախոսու-
թյունը** (ՍՊբ., 1911), **Ինչ է սպասում Ռուսաստանը պատերազմից** (Պբ.,
1915) և այլն: 1914 թ. հրատարակված Օտտո Հյուբների աշխարհագրական-
վիճակագրական աղյուսակներից տվյալներ է դուրս գրում նաև Հայաստանի
տարածքի և բնակչության մասին, հայկական հարցի վերաբերյալ մի շարք
դուրսգրումներ կատարում Կ. Կաուցկու, Ֆր. Կվադֆլիգի և այլոց գրքերից:
Պ. Լենչի **Գերմանական սոցիալ-դեմոկրատիան և համաշխարհային պատե-
րազմը** (Բեռլին, 1915) և Տ. Եգերի **Պարսկաստանը և պարսկական հարցը**
(Վայմար, 1916) գրքերի ընթերցումից հետո իր տետրում Վ. Ի. Լենինը հե-
տևյալ նշումներն է կատարում. «Գերմանիան 1913 թ. սպառնում էր պատե-
րազմով Հայաստանի պատճառով», «Պարսկաստանը պարտված է Ռուսաս-
տանի դեմ մղված պատերազմում: Թուրքմենչայի հաշտությունը (զիջում է
Նախիջևանը, Երևանը և այլն)»: Իսկ Ա. Վիրթի **Արդիականության համաշ-
խարհային պատմություն** (Լայպցիգ, 1913), Գ. Էգելհաֆի **Նորագույն ժա-
մանակի պատմություն Ֆրանկֆուրտի հաշտությունից մինչև այժմ** (Շտուտ-
գարտ, 1913) և այլ աշխատությունների ուսումնասիրությունից հետո կազ-
մում է երկու աղյուսակ՝ «Գաղութային զավթումների և պատերազմների
աղյուսակ» և «1870 թվականից հետո համաշխարհային պատմության գլխա-
վոր տվյալների ամփոփված փորձ», որոնցում հատուկ նշում է. «1913... ոտըն-
ձգություն Հայաստանի դեմ» (**ԵԼԺ**, հ. 28, էջ 612, 868): Այդ նույն ժամա-
նակաշրջանում, քաղվածք արտագրելով իտալական պառլամենտում Տուրա-
տիի արտասանած ճառից, որտեղ վերջինս հայկական հարցը, ինչպես նաև
մի շարք այլ հարցեր, դասեց «երկրորդական հարցերի» շարքը, որոնք, իբր,
հեշտությամբ լուծելի են արբիտրաժային ճանապարհով, Լենինը կծու հեգ-
նանքով իր տետրի էջերում նշում է. «Բուրժուա-պացիֆիստական բթամտու-
թյան մարգարիտնե՛ր» (Ленинский сборник, XXIX, стр. 385), իսկ
Լ. Մարտովի հոդվածից քաղվածքի դիմաց տետրում նշում է կատարում.
«(հայկական հարց)», և այնուհետև՝ «Շրջանցված է գլխավորը՝ անջատման
ազատությունը» (Ленинский сборник, VII, стр. 240):

Սակայն Վ. Ի. Լենինը իր խնդիրը տեսնում էր ոչ միայն հայկական
հարցի վերաբերյալ նյութերի հավաքման և ուսումնասիրման մեջ, և նույնիսկ
ոչ այնքան այդ բանում, որքան Հայաստանի նկատմամբ իմպերիալիստական
տերությունների զավթողական քաղաքականության դեմ ակտիվորեն բողո-
քելու մեջ: Այս առումով միանգամայն հատկանշական է, որ 1912 թ. (իմպե-
րիալիստական պատերազմին նախապատրաստվելու սկիզբը) մինչև 1917 թ.
ընկած ժամանակաշրջանում Լենինն իր ավելի քան 60 աշխատություններում
վկայակոչում է Հայաստանի օրինակը, ընդ որում, այնպիսի հիմնարար աշ-
խատություններում, ինչպիսին են **Քննադատական դիտողություններ ազգա-
յին հարցի վերաբերյալ** (1913), **II Ինտերնացիոնալի կրախը**, **Եվրոպայի
Միացյալ Նահանգների լոզունգի մասին**, **Ուրիշի դրոշի ներքո**, **Սոցիալիզմը
և պատերազմը** (1915), **Ինքնորոշման վերաբերյալ դիսկուսիայի արդյունք-
ները** (1916), **Պատերազմ և հեղափոխություն**, **Սպառնացող աղետը և ինչպես
պայքարել դրա դեմ**, **Կուսակցական ծրագրի վերանայման շուրջը**, **Հեղափո-
խության դասերը** (1917) և այլն: «...Արդեն տասնամյակներ շարունակ,—
գրել է Լենինն այդ օրերին, մերկացնելով իմպերիալիստական տերություն-
ների մեքենայությունները,— ավազակային քաղաքականություն է վարվում
Չինաստանի, Պարսկաստանի, Հայաստանի, Գալիցիայի դեմ» (**ԵԼԺ**, հ. 27,
էջ 279—280), պատերազմը մղվում է «Հայաստանը, Թուրքիան, Գալիցիան

կողոպտելու համար» (**ԵԼԺ**, հ. 31, էջ 62), «Գալիցիան, Հայաստանը և ուրիշներին խեղդելու համար» (**ԵԼԺ**, հ. 30, էջ 293), «Հայաստանի, Գալիցիայի, Կոնստանդնուպոլսի և այլնի կողոպտման ու նվաճման համար» (**ԵԼԺ**, հ. 31, էջ 2), «...Թուրքիայի, Ռումինիայի, Հայաստանի, Աֆրիկայի և ուրիշ երկրների բաժանման» նպատակով (**ԵԼԺ**, հ. 30, էջ 348): Մեկ անգամ ևս հիշեցնելով միջազգային բուրժուազիայի խիստ շահագրգռվածության մասին Գալիցիայի և Հայաստանի շահութաբեր պաշտոններով (**ԵԼԺ**, հ. 31, էջ 384), Վ. Ի. Լենինը հատուկ ընդգծում էր, որ «**Քանի դեռ** իշխանությունը կապիտալիստների դասակարգի ձեռքին է, **նրանց** հաշտությունն **անխուսափելիորեն** կլինի «անեքսիաների փոխանակություն»՝ Հայաստանը Լոթարինգիայի հետ, գաղութները գաղութների հետ...» (**ԵԼԺ**, հ. 32, էջ 150): Այդ նույն ժամանակ Վ. Ի. Լենինը ՌՍԴԲԿ-ի անունից ստորագրեց Ցիմերվալդյան միջազգային սոցիալիստական կոնֆերանսի «Մանիֆեստը» (Շվեյցարիա, 1915 թ.), որտեղ դիմում էր ուղղվում Եվրոպայի պրոլետարիատին այն մասին, թե «ամբողջ ժողովուրդների ու երկրների, ինչպիսին են Բելգիան, Լեհաստանը, Բալկանյան պետությունները, Հայաստանը, սպառնում է փոխհատուցումների խաղում առևտրի առարկա դառնալու և ամբողջությամբ կամ կտոր-կտոր զավթվելու ճակատագիրը» (Первая Циммервальдская конференция (Официальные документы). Пг. Б.г. стр. 18): Բացի այդ, նույն միջազգային կոնֆերանսում Լենինի մասնակցությամբ հատուկ փաստաթուղթ ընդունվեց «Կարեկցանքի արտահայտություն» վերնագրով, որում արտահայտվում էր «...խորին կարեկցանք... հալածվող հրեա և հայ ազգերին...» (նույն տեղը, էջ 16):

Այս առթիվ հետաքրքրական է նշել, որ Լենինը դեռևս 1916 թ. անառարկելի էր համարում հայ ժողովրդի ազատագրական շարժման իրավունքը: «...Հազիվ թե մեկը հանդգնի ժխտել այն,— գրում էր Վ. Ի. Լենինը այդ տարիներին,— որ անեքսիայի ենթարկված Բելգիան, Սերբիան, Գալիցիան, Հայաստանը անեքսիա կատարողի դեմ իրենց «ապստամբությունը» կանվանեն «հայրենիքի պաշտպանություն» և **ճիշտ էլ կանվանեն**» (**ԵԼԺ**, հ. 30, էջ 36): Ի դեպ նկատենք, որ մի քանի տարի անց Սովետական Ռուսաստանի կառավարությունը, ղեկավարվելով այս սկզբունքով, 1918 թ. սկզբին հատուկ շրջաբերական հրապարակեց, որով բոլոր սովետական հիմնարկություններին պարտավորեցվում էր աջակցություն ցույց տալ ՌՍՖՍՀ-ի տարածքում կազմավորվող հայկական կամավորական ջոկատներին, որոնք գնում էին «պաշտպանելու իրենց հայրենիքը թուրք-գերմանական բռնադատիչներից» (ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 558, оп. 1, д. 129, л. 1):

Միաժամանակ Լենինի կողմից առաջ քաշվեց Հայաստանին ինքնորոշման իրավունք վերապահելու ծրագրային պահանջը: Ընդ որում դա վերաբերում էր ոչ միայն Արևելյան Հայաստանին, այլ նաև Արևմտյան (Թուրքահայաստանին)— **«ամբողջ** Հայաստանին», ինչպես ճիշտում էր իր միտքը Վ. Ի. Լենինը (տե՛ս **ԵԼԺ**, հ. 31, էջ 459, հ. 34, էջ 295): Հանճարեղ խորաթափանցությամբ նա նշում էր, որ միայն սոցիալիստական հեղափոխությունն է ի վիճակի հայ ժողովրդին ինքնորոշման իրավունք տալու, համակողմանի զարգացման ու ծաղկման պայմաններ ստեղծելու: Միայն պրոլետարիատն է ընդունակ, ընդգծում էր Լենինը 1917 թ. մարտին Յա. Ս. Գանեցկուն գրած նամակում, «...**լիովին** ազատագրել... ճնշված ժողովուրդներին, զորքերն **անմիջապես** դուրս բերել Հայաստանից ու Գալիցիայից» (**ԵԼԺ**, հ. 49, էջ 529):

Եռհոկտեմբերյան շրջանում, չնայած աշխարհում առաջին սոցիալիստական պետության առջև ծառացած հսկայածավալ խնդիրներին, ինչպես նաև քաղաքացիական պատերազմին ու Անտանտի երկրների ռազմական ինտերվենցիային, Վ. Ի. Լենինը չէր դադարում հետաքրքրվել հայ ժողովրդի ճակատագրով: Հանրահայտ են նրա զրույցները Հայաստանի վերաբերյալ հայ կոմունիստներ Վահան Տերյանի, Ա. Ի. Միկոյանի, Ս. Մ. Տեր-Գաբրիելյանի,



Ա. Ա. Մռավյանի և այլոց հետ 1917—1920 թթ.: «Զարմացնում էր, որ Վլադիմիր Իլյիչն ամենամանրակրկիտ կերպով հետաքրքրվում էր Կովկասի բոլոր հարցերով, այդ թվում նաև մանրամասներով,— իր հանդիպումներից մեկի մասին հիշում է Ա. Ի. Միկոյանը:— Բազմաթիվ հարցեր էր տալիս, ճշտում էր, թե ինչ է տեղի ունենում Բաքվում և ամբողջապես Ադրբեջանում, Վրաստանում, Հայաստանում, Դաղստանում, Չեչնիայում և Կովկասի մյուս ժողովուրդների մոտ»: «Թվում էր, թե դրանով զբաղվելու ժամանակ ամենևին չուներ,— շարունակում է այնուհետև Միկոյանը:— Ռուսաստանյան հանրապետության թե՛ արտաքին, թե՛ ներքին դրությունը շարունակում էր մնալ ծայրահեղորեն ծանր... Նման ամենածանր պահին նա հնարավոր համարեց երկու ժամից ավելի ինձ հարցուփորձ անել այն մասին, թե ինչ է տեղի ունենում հեռավոր Կովկասում, ինչ հարցեր են հուզում տեղի կոմունիստներին, ինչպես ենք մենք մտադիր դրանք լուծել» (А. И. Микоян. Мысли и воспоминания о Ленине. М., 1970, стр. 39—40):

Սակայն չբավարարվելով այդ զրույցներով ու եղած տեղեկություններով, Լենինը 1920 թ. հունիսին թախանձագին խնդրանքով դիմեց Կոմինտերնի նախապատրաստվող II կոնգրեսի պատվիրակներին իրեն տեղեկություններ հաղորդելու մի շարք «ամենաբարդ հարցերի» վերաբերյալ, որոնց թվում նշված է. «Հարաբերությունները Կովկասում»: Այդ նույն ժամանակ Անդրկովկասում սովետական ներկայացուցիչներին ցուցում տրվեց հաղորդել «հայերի սոցիալական դրության», գյուղացիության, Անտանտի և Սովետական Ռուսաստանի նկատմամբ դաշնակների կուսակցության քաղաքականության մասին (տե՛ս ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 64), իսկ Կոմինտերնի Արևելյան հանձնաժողովի աշխատանքների թեմատիկան որոշելիս, որի մշակմանը մասնակցում էր Վ. Ի. Լենինը, հատուկ (երկրորդ) «Հայաստան» կոչվող բաժնում նշված էին ուսումնասիրման ենթակա հետևյալ հարցերը. «1) Հայ-թուրքական հարցի դրությունը մինչև պատերազմը, պատերազմի ընթացքում և այժմ: Հայերի և թուրքերի փոխհարաբերությունները: 2) Արևմտաեվրոպական պետությունների վերաբերմունքը Հայաստանի նկատմամբ մինչև պատերազմը, պատերազմի ընթացքում և զինադադարից հետո: 3) Դասակարգային փոխհարաբերությունները Հայաստանում: Դաշնակների քաղաքականությունը: 4) Ագրարային հարցը ռուսական և թուրքական Հայաստանում: 5) Հայաստանի... արդի տնտեսական վիճակը: Հարկային սիստեմը: 6) Հայաստանի ազգագրական սահմանները պատերազմից առաջ և այժմ» (ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 17):

Հայ ժողովրդի պատմության նկատմամբ Վ. Ի. Լենինի խոր հետաքրքրության մասին է վկայում նաև այն փաստը, որ արդեն 1918 թ. օգոստոսին Վլադիմիր Իլյիչը գրադարանից պահանջեց Վ. Յա. Բրյուսովի Летопись исторических судеб армянского народа և Поэзия Армении с древнейших времен до наших дней գրքերը (ПА Арм. фил. ИМЛ при ЦК КПСС, ф. 4001, от. 1, д. 45, л. 1):

Հետագայում Կրեմլի՝ Լենինի աշխատասենյակում մշտապես գտնվում էին հայ ժողովրդի պատմությանը վերաբերող այնպիսի գրքեր, ինչպիսին են А. Барби, В стране ужаса. Мученица Армения (Тифлис, 1919). В. Станкевич, Судьбы народов России (Берлин. 1921), И. В. Фигуровский, Климатический очерк северо-восточной Армении с соседними районами (Тифлис, 1920) և մի շարք այլ գրքեր, ինչպես նաև կախված էին Կովկասի երկու քարտեզներ, որոնց վրա Լենինը գունավոր մատիտներով ստվարագծել էր կովկասյան ժողովուրդների տարաբնակեցման վայրերը և Ադրբեջանի, Հայաստանի ու Վրաստանի սահմանները: Բացի այդ, Կրեմլի նրա անձնական գրադարանում կային. Будущее устройство Армении. По официальным дипломатическим документам Оранжевой книги, трактующей реформы в Армении (Пг. 1915). Х. Ф. Б. Линч, Армения (Тифлис, 1910, в двух томах). Вестник Московского комитета помощи Армении (1923, № 1), Հակոբ Հակոբյանի

բանաստեղծությունների ժողովածուն (հայերեն), Մարիետա Շահինյանի միհատորյակը, Հ. Օրբելու «Временная выставка сасанидских древностей» աշխատությունը և այլն: 1920 թ. նոյեմբերին Վ. Ի. Լենինը գրադարանից լրացուցիչ պահանջեց «Документы и материалы по внешней политике Закавказья и Грузии» (Тифлис, 1919: Այս գիրքը հետագայում թողնվեց նրա աշխատասենյակում), Кариби, Красная книга 1920 года. Армянские революционные деятели в турецкой Армении и у нас (Тифлис, 1920), А. Кричинский, Очерки русской политики на окраинах (Баку, 1919.—Տե՛ս Ленинский сборник XXXV, стр. 180—181):

Հայաստանում սովետական իշխանության հաստատումը առաջադրեց մի շարք նոր խնդիրներ, որոնք իրենց վրա հրավիրեցին Վ. Ի. Լենինի սևեռուն ուշադրությունը:

Դեռևս դրանից մի քանի տարի առաջ, Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո, Ռուսաստանի և Արևելքի աշխատավոր մահմեդականներին ուղղված դիմումում, որ Լենինն ստորագրել էր 1917 թ. նոյեմբերի 20-ին (դեկտեմբերի 3-ին), հայտարարվում էր, որ ռազմական գործողությունները դադարելուն պես հայերին ինքնորոշման իրավունք կտրվի (Документы внешней политики СССР, т. I, М., 1957, стр. 35), որը լիովին համապատասխանում էր Հոկտեմբերյան հեղափոխության նախօրեին Վ. Ի. Լենինի առաջադրած այն ծրագրային դրույթին, որ «իշխանությունը գրավելով, մենք, անշուշտ, իսկույնևեթ կճանաչեինք այդ (ինքնորոշման— Ի. Դ.) իրավունքը թե՛ Ֆինլանդիայի, թե՛ Ուկրաինայի, թե՛ Հայաստանի... համար» (**ԵԼԺ**, հ. 34, էջ 477—478):

Այդ դրույթին համապատասխան Լենինն արդեն 1917 թ. նոյեմբերի կեսերին հանձնարարում է Վահան Տերյանին Հայաստանի վերաբերյալ ներկայացնել զեկուցագիր և դեկրետի նախագիծ (տե՛ս Владимир Ильич Ленин. Биографическая хроника, т. 5, стр. 63: Զեկուցագրի լրիվ տեքստը և դեկրետի նախագիծն իր տարբերակներով հրապարակել է Լ. Ա. Խուրշուդյանը «Բանբեր Հայաստանի արխիվների»-ի 1981 թ. № 2-ում, էջ 30—44), որը նույն տարվա դեկտեմբերին երկու անգամ քննարկվել է Ժողկոմխորհի նիստում՝ Վ. Ի. Լենինի նախագահությամբ (ЦГАОР СССР, ф. 130, оп 1, л.л. д. 50, 55. Տես նաև Владимир Ильич Ленин. Биографическая хроника, т. 5, стр. 148, 155, 159): Այդ նույն ժամանակաշրջանում Լենինը հարցուփորձ է անում Վահան Տերյանին և ուրիշներին՝ հայկական հարցի լուծման հայերի համար ցանկալի ուղիների մասին (տե՛ս Վ. Տերյան, **Երկերի ժողովածու**, հ. 3, Ե., 1963, էջ 479—482): 1917 թ. դեկտեմբերի 29-ին (1918 թ. հունվարի 11-ին) Վ. Ի. Լենինը ստորագրեց Ժողկոմխորհի դեկրետը ««Թուրքահայաստանի» մասին», ուր նշված էր. «Ժողովրդական կոմիսարների խորհուրդը հայտարարում է հայ ժողովրդին, որ Ռուսաստանի բանվորական և գյուղացիական կառավարությունը պաշտպանում է... հայերի ազատ ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև լիակատար անկախություն» (Документы внешней политики СССР, т. I, стр. 74—75):

Բրեստ-Լիտովսկի բանակցությունները, որոնցում սովետական կողմի հիմնական սկզբունքները մշակել էր Վ. Ի. Լենինը, նորից հավաստեցին Լենինի գլխավորած ՌՍՖՍՀ-ի կառավարության վճռականությունը՝ պաշտպանելու հայ ժողովրդի շահերը: Մասնավորապես այդ է վկայում 1917 թ. դեկտեմբերի 28-ի (1918 թ. հունվարի 10-ի) պլենար նիստում սովետական պատվիրակության հայտարարությունն այն մասին, որ կնքվող հաշտությունը պետք է լինի «...առանց անեքսիաների՝ լեհերի, լիտվացիների, լատիշների, էստոնացիների, հայերի և մյուս ժողովուրդների նկատմամբ...» (Мирные переговоры в Брест-Литовске, т. I. Стенограммы, М., 1920, стр. 59): Սակայն, ստիպված լինելով Բրեստի հաշտությունը (1918 թ.) կնքելու, սովետական պատվիրակությունը միաժամանակ հանդես եկավ վճռական բողոքով այն առթիվ, որ Գերմանիան բռնի ուժով Ռուսաստանից անջատում է



Արդահանի, Կարսի և Բաթումի մարզերը, դա համարելով անեքսիա (տե՛ս (Документы внешней политики СССР, т. I, стр. 118):

Հետագայում, 1918 թ. ապրիլի 12-ին, Գերմանիայի կառավարությանը հղած նոտայում սովետական կառավարությունը նորից շեշտում էր, որ ինքը «...ստիպված էր տալու Արդահանը, Կարսը և Բաթումը միայն այն պատճառով, որ Թուրքիայի դաշնակիցը Գերմանիան էր» (նույն տեղը, էջ 240—241): Միևնույն ժամանակ, 1918 թ. ապրիլի 12-ի, սեպտեմբերի 20-ի, հոկտեմբերի 3-ի և 10-ի նոտաներով Գերմանիայի և Թուրքիայի կառավարություններին բողոք հայտնվեց՝ Կովկասում Թուրքիայի կողմից հաշտության պայմանները խախտելու, հայերին ինքնորոշման իրավունքից զրկելու, նաև Հայաստանի մնացած մասի զավթման, օկուպացված մարզերում հայ բնակչության ոչնչացման և այլնի դեմ, վճռականորեն պահանջելով մաքրել Հայաստանը թուրքական զորքերից և ազատ հանրաքվե անցկացնել գաղթականների և կտարանդիների մասնակցությամբ (տե՛ս նույն տեղը, էջ 240—241, 490—492, 509—510, 514—516):

Մեծ աշխատանք ծավալվեց նաև հայ գաղթականներին օգնություն ցույց տալու գործում, որոնց կարիքների համար 1918 թ. հունվարին բաց թողնվեց ավելի քան 6 մլն ռուբլի: 1918 թ. հունիսի 26-ին Լենինի նախագահությամբ կայացած Ժողկոմխորհի նիստում նորից որոշվեց հայ գաղթականներին օգնելու համար, հաշվի առնելով նրանց «ծայրահեղ կարիքը», բաց թողնել 6.194.784 ռուբլի (տե՛ս **Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական կարգերի հաստատումը Հայաստանում:** Ե., 1960, էջ 233), իսկ նույն տարվա նոյեմբերի 23-ին, Անդրկովկաս գաղթած հայերի համար բուժման և կերակրման կետեր կազմակերպելու նպատակով լրացուցիչ տրամադրվեց շուրջ 10 մլն ռուբլի (տե՛ս Владимир Ильич Ленин. Биографическая хроника, т. 6. стр. 235, 245): Եվ դա ա՛յն ժամանակ, երբ Ռուսաստանն ինքը քայքայման և քաղաքացիական պատերազմի պատճառով սուր կարիքի մեջ էր:

Այն բանից հետո, երբ 1919 թ. մարտին կազմավորվեց ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն, ուր տեղափոխվեց բոլոր հիմնական հարցերի լուծումը, և հատկապես 1920 թվականին, Հայաստանի վերաբերյալ հարցը քաղբյուրոյի նիստերում Վ. Ի. Լենինի մասնակցությամբ քննարկվել է գրեթե ամեն ամիս, իսկ երբեմն էլ ամսական երկու անգամ: Այդ նիստերում վճռվում էին քաղաքական ու պատմական մեծ նշանակության հարցեր, որոնք արմատապես փոխեցին հայ ժողովրդի ճակատագիրը: Ընդ որում ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի և պլենումի մի շարք որոշումներ (օրինակ, 1920 թ. նոյեմբերի 27-ի, 1921 թ. հունվարի 26-ի և այլն) գրել է անձամբ Վ. Ի. Լենինը (տե՛ս **ԵԼԺ**, հ. 42, էջ 56, հ. 54, էջ 521):

Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո Վլադիմիր Իլյիչի ուշադրությունը կենտրոնացվեց հիմնականում երկու խնդրի վրա. Թուրքիայի կողմից զավթած Հայաստանի տարածքի ազատագրումը և երիտասարդ սովետական հանրապետությանը նյութական օգնություն ցույց տալը, հայ ժողովրդին սովամահությունից փրկելը: Արդեն 1920 թ. դեկտեմբերի 14-ին Վ. Ի. Լենինը հարցում է անում Գ. Վ. Չիչերինին հայերի վիճակի և օգնության միջոցառումների մասին. «Ընկ. Չիչերի՛ն: Երեկ ինձ մոտ էր Տեր-Գաբրիելյանը, որը նույնպես ասում էր ջարդի ահեղ վտանգի մասին (ի նկատի ունի 1920 թ. Թուրքիայի կողմից Հայաստանի գրավման հետևանքները:— Ռ. Դ.): 1) Այն, որ 600.000 հայ գաղթականներ կործանվում են... Հարկավոր է, իմ կարծիքով... **ա մ ե ն կ ե ր պ** օգնել № (1)-ի կապակցությամբ» (ԵԼԺ, հ. 52, էջ 37): Չիչերինի պատասխանը լավագույնս է բնութագրում Վ. Ի. Լենինի գլխավորած կառավարության քաղաքականությունն այդ հարցում, «Դուք հարցնում եք հայերին սպառնացող ջարդի, հայ գաղթականների վիճակի... մասին: Այնքանով, որքանով խոսքը վերաբերում է հայ բնակչությանն ընդհանրապես, ապա մեր ամբողջ գործունեությունն այդ ուղ-

դությամբ, ինչպես Ձեզ հայտնի է, նպատակ ունի կանգնեցնել թուրքերի հետագա հարձակումը և ստիպել նրանց ետ քաշվել... Մենք կկարողանայինք անել ավելին, եթե հնարավոր լիներ Հայաստան ուղարկել ավելի շատ զորք» (ըստ Գ. Ա. Գալոյան, **Հանուն պատմական ճշմարտության:** «Լենինյան ուղիով», 1967, № 7, էջ 76):

Դա այնպիսի մի ժամանակաշրջան էր, երբ Լենինի պատկերավոր արտահայտությամբ, Ռուսաստանի դրությունը նման էր «...այն մարդու դրությանը, որին ծեծելով կիսամահ են արել. յոթ տարի ծեծել են նրան, և այժմ, աստված տա, որ գեթ հենակներով շարժվի» (**ԵԼԺ**, հ. 43, էջ 81): Այս պայմաններում, երբ Թուրքիան, ի դեպ, Մոսկվայում սովետական կառավարության հետ վարած բանակցություններին զուգահեռ միաժամանակ Լոնդոնում բանակցություններ էր վարում նաև Անտանտի երկրների հետ, դրանով իսկ սպառնալով նոր գործողություններ ձեռնարկել Հայաստանի և նրա ժողովրդի դեմ՝ այս պայմաններում միակ երկընտրանքը մնում էր այն, որ հանուն հայ ժողովրդի փրկության ֆիզիկական բնաջնջումից, որքան կարելի է շուտ հաշտության պայմանագիր կնքել Թուրքիայի հետ, միայն որը, Լենինի այն ժամանակվա բնորոշմամբ, «...մեզ ազատում է մշտական պատերազմներից Կովկասում» (նույն տեղը, էջ 181):

Սակայն սովետա-թուրքական պայմանագրի կնքումից (1921 թ. մարտ) հետո էլ սովետական իշխանությունը չէր դադարում պայքարել Հայաստանի ազատագրման համար: 1921 թ. ապրիլի 9-ին, Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ, Ի. Վ. Ստալինը հեռագրել է Գ. Կ. Օրջոնիկիձեին. «առաջին. Ալեքսանդրոպոլը (այժմ՝ Լենինական:— Ռ. Ղ.) պետք է մաքրվի ինչ միջոցով ուզում է լինի» (ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 85, оп. 18, д. 84, лл. 2—3. Цит. по: С. В. Хармандарян. Документы периода гражданской войны в Армении в 1921 г., ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», Հաս. գիտ., 1957, №2, էջ 97): Միաժամանակ թուրքական կառավարությանը պաշտոնապես հայտարարվեց, որ «...պատերազմը Թուրքիայի և Սովետական Հայաստանի միջև կնշանակի պատերազմ Թուրքիայի և Սովետական Ռուսաստանի միջև» (Документы внешней политики СССР, т. IV, М., 1960, стр. 50): Նույն այդ ժամանակաշրջանում ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն Վ. Ի. Լենինի մասնակցությամբ որոշում ընդունեց Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի սովետական հանրապետություններ ցուցում ուղարկել Թուրքիայի հետ պայմանագրեր կնքելու վերաբերյալ: «Թուրքիայի և Հայաստանի միջև պայմանագիրը պետք է տարբերվի Թուրքիայի և Վրաստանի միջև պայմանագրից որոշ մանրամասնություններով,— բացատրում է Գ. Վ. Չիչերինն այդ առթիվ:— Նրանում ամենասկզբից պետք է լինի մի հոդված, որի համաձայն երկու պայմանավորվող կողմերը հայտարարում են իրենց միջև եղած պատերազմական վիճակն ավարտված: Հայաստանի համար հատկ նշանակություն է ձեռք բերում բոլոր նախորդ պայմանագրերը չեղյալ հայտարարելու վերաբերյալ հոդվածը, որով չեղյալ է համարվում մինչև օրս Թուրքիայի կողմից ճանաչվող Ալեքսանդրապոլի պայմանագիրը... Պետք է ամենայն վճռականությամբ հայտարարել, որ այն ուժ չունի... Ալեքսանդրապոլի պայմանագիրն այնքան հրեշավոր է, որ նրա վրա կատարվող ամեն մի հղում պետք է ամենակտրուկ հակահարվածն ստանա», և այնուհետև. «...Ռուսաստանյան հանրապետությունը ոչ մի բանի առջև կանգ չի առնի, եթե կրկնվելու լինի Ալեքսանդրապոլի պայմանագիրը ճանաչելը Հայաստանին պարտադրելու որևէ փորձ... Մենք չենք ճանաչելու կովկասյան հանրապետությունների սուվերենությունը խախտող որևէ որոշում՝ նրանց և Թուրքիայի միջև կնքվող պայմանագրերում» (АВП СССР): Ծանոթանալով այս առաջարկությանը, Վ. Ի. Լենինը նշել է. «Ըստ իս, դա անվիճելի է...» (Ленинский сборник, XXXVIII, стр. 356):

Մյուս պրոբլեմը, որն այդ տարիներին խիստ մտահոգում էր Վ. Ի. Լենինին, Հայաստանին նյութական օգնություն ցույց տալու հարցն էր: Դրությունը առանձնապես բարդանում էր, որովհետև այդ ժամանակաշրջանում Ռու-



սաստանն ինքը, Լենինի խոստովանությամբ, խիստ կարիքի մեջ էր (տե՛ս **ԵԼԺ**, հ. 52, էջ 156):

Եվ, այնուամենայնիվ, Հայաստանում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից ՌՍՖՍՀ-ն նրան նյութական օգնություն էր ցույց տալիս: Արդեն 1920 թ. դեկտեմբերի 3-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն հանձնարարեց Գ. Կ. Օրջոնիկիձեին մտածել «Հայաստանի նյութական մատակարարման մասին» (ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 85. оп. 14, д. 33, л. 28), իսկ նույն թվականի դեկտեմբերի 14-ին Լենինը ստորագրեց Ժողկոմխորհի որոշումը՝ Հայաստանին 3 **մլրդ** ռուբլի տրամադրելու վերաբերյալ (տե՛ս **Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական կարգերի հաստատումը Հայաստանում:** Ե., 1960, էջ 425—426): Այդ ժամանակ էլ մենշևիկյան Վրաստանի դիվանագիտական ներկայացուցչի վկայությամբ «Նա (Լենինը) շատ էր հետաքրքրվում, թե իրո՞ք տեղի է ունեցել Հայաստանի համար պարենամթերքի առաքման ձգձգում» (ЦГИА Груз. ССР, ф. 1866, оп. 1, д. 87, лл. 62—63): Չգոհանալով դրանով՝ Վ. Ի. Լենինը 1921 թ. հունվարի վերջին ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի հաստատմանն է ներկայացնում իր կազմած որոշման նախագիծը, որի առաջին կետում ասված էր. «Հանձնարարել արտժողկոմատին ձգձգել խզումը Վրաստանի հետ... ավելի համառորեն պահանջել թույլատրել մթերքները փոխադրելու Հայաստան» (ԵԼԺ, հ. 54, էջ 521: ЦПА ИМЛ при ЦК КПСС, ф. 17, оп. 2, д. 56): Երկու շաբաթ անց Լենինը հիշելու համար իր մոտ նշումներ է կատարում. «1) Գիլքո, 2) Հայաստան, Վրաստան, 3) Պարսկաստան» (Владимир Ильич Ленин. Биографическая хроника, т. 10, стр. 105):

1921 թ. փետրվարի կեսերին Վ. Ի. Լենինն ստանում է Սովետական Հայաստանի ներկայացուցիչ Ս. Մ. Տեր-Գաբրիելյանի զեկուցագիրը հանրապետության ողբերգական վիճակի մասին և այդ կապակցությամբ Պարսկաստանում Հայաստանի համար հաց գնելու անհրաժեշտության մասին: Նույն օրն ևեթ ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի և կազմբյուրոյի համատեղ նիստը Լենինի մասնակցությամբ որոշում է կայացնում Հայաստանի համար Պարսկաստանում հաց գնելու մասին (նույն տեղը, էջ 120), իսկ նույն տարվա հուլիսի սկզբին Լենինը համաձայնություն է տալիս այդ նպատակով ՌՍՖՍՀ-ի ֆոնդերից տրամադրել արծաթյա վալյուտա (նույն տեղը, էջ 648): 1921 թ. ապրիլի 6-ին Վ. Ի. Լենինը ստորագրում է Ժողկոմխորհի որոշումը Հայաստանին լրացուցիչ 1,5 **մլն** ռուբլի ոսկով տրամադրելու վերաբերյալ (նույն տեղը, էջ 280, 284): Երկու օր անց ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն Վ. Ի. Լենինի մասնակցությամբ քննարկեց Հայաստանին պարենամթերք մատակարարելու հարցը և ընդունեց համապատասխան որոշում (նույն տեղը, էջ 291): Հետագայում ևս Հայաստանին ցույց էր տրվում ֆինանսական և պարենային օգնություն, որի մասին են վկայում Ժողկոմխորհի՝ Լենինի ստորագրած, 1921 թ. մայիսի 20-ի, հուլիսի 21-ի, սեպտեմբերի 30-ի, նոյեմբերի 11-ի, 1922 թ. հոկտեմբերի 31-ի և այլ որոշումները:

Դրան զուգահեռ Վ. Ի. Լենինը շարունակում է հետաքրքրվել Հայաստանում գործերի վիճակի մասին, խորհուրդներ, ցուցումներ է տալիս, հարցումներ կատարում: 1921 թ. ապրիլի 9-ին նա խնդրում է Գ. Կ. Օրջոնիկիձեին «համառոտ հաղորդել Հայաստանի վիճակի մասին» (տե՛ս С. В. Хармандарян, указ. соч., стр. 97):

Տեղեկություն ստանալով Անդրկովկասի ծանր տնտեսական վիճակի մասին, Լենինը Ա. Բ. Խալաթովին երկտող է գրում. «Կարդացե՛ք և վերադարձրե՛ք կարծիքի հետ: Չի՞ կարելի մի բան անել» (**ԵԼԺ**, հ. 52, էջ 153): Միաժամանակ հեռագրում է Կովկասում պարենժողկոմատի ներկայացուցիչ Մ. Ի. Ֆրումկինին. «Առաջարկում եմ ամենավճռական միջոցներ ձեռք առնել Ադրբեջանին, Վրաստանին, Հայաստանին մատակարարելու ուղղությամբ և մի օր անց զեկուցել նրանց մատակարարման ընթացքի ու փաստացի առաքման մասին» (նույն տեղը, էջ 447, ծանոթագրություն 198: Հեռագրի լրիվ

տեքստը տե՛ս **Վ. Ի. Լենինը Անդրկովկասի մասին**, Ե., 1963, էջ 393)։ Բացի այդ, Լենինը հատուկ թղթապանակ է պահում՝ վրան մակագրելով «Անդրկովկասի համար պարենամթերքի մասին», որի մեջ պահում է այդ հարցի վերաբերյալ բոլոր ստացված տեղեկությունները, այդ թվում նաև Հայաստանի տնտեսական վիճակի մասին եղածները։ 1921 թ. վերջին նա ծանոթանում է նաև Կենտվիճվարչության № 55 բյուլետենին, որտեղ կային տվյալներ նաև Հայկ. ՍՍՀ-ի առկա և Թուրքիայի խլած մարզերի տարածքի ու բնակչության մասին։ Մի տարի անց Վ. Ի. Լենինը նորից է հետաքրքրվում, թե «...ուղի՞ ուղարկվե՞լ է արդյոք Հայաստան... Իսկ հայերին օգնելու մյուս միջոցնե՞րը։ Հարկավոր է **շտապեցնել և ստուգել**։ Սպասում եմ պատասխանի» (**ԵԼԺ**, հ. 54, էջ 362)։

Այդ տարիներին Լենինին հատկապես հետաքրքրում էր Համակովկասյան տնտեսական կենտրոնի ստեղծման հարցը։ «Ստիպողաբար պահանջում եմ,— հեռագրում էր նա Գ. Կ. Օրջոնիկիձեին 1921 թ. ապրիլի 9-ին,— ստեղծել մարզային տնտեսական օրգան ամբողջ Անդրկովկասի համար...» (**ԵԼԺ**, հ. 52, էջ 156)։

Մեկ հոդվածում անհնարին է ընդգրկել Վ. Ի. Լենինի բազմաբնույթ գործունեության բոլոր կողմերը։ Նույնիսկ լինելով ծանր հիվանդ՝ նա չէր դադարում հետաքրքրվել հասարակական գործերով։ Եվ այդ շրջանում նրա ծանոթացած նյութերի մեջ է նաև «Вестник Московского комитета помощи Армении» հանդեսի 1923 թ. առաջին համարը...

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՆԵՐԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ կառուցման համար մղվող պայքարում կուսակցության առջև ծառացած սոցիալ-տնտեսական, կուլտուր-քաղաքական խնդիրների լուծման գործում Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս գաղափարական ներգործության հարցերին։ Նա քաղաքական պրոպագանդայի հաջողության կարևորագույն պայմաններից մեկը համարում էր ճշմարտացիությունը։ «Եթե մեր հակառակորդները,— գրել է Վ. Ի. Լենինը,— ասում և ընդունում էին, որ մենք ագիտացիան ու պրոպագանդան զարգացնելու գործում հրաշքներ ենք գործել, ապա դա մակերեսորեն չպետք է հասկանալ, թե մենք շատ ագիտատորներ ենք ունեցել և շատ թուղթ ենք ծախսել, այլ պետք է հասկանալ ներքնապես, որ այն ճշմարտությունը, որը կար այդ ագիտացիայի մեջ, թափանցում էր բոլորի մտքերը։ Եվ այդ ճշմարտությունից շեղվել չի կարելի» «ԵԼԺ, հ. 40, էջ 303—304)։ Վ. Ի. Լենինը մեծապես կարևորում էր քաղաքական պրոպագանդայի պարզությունը և ճշմարտացիությունը, որը գաղափարախոսական ներգործության գրավականն է։ Ճշմարտությունն ասել բանվորներին, աշխատավորներին՝ նշանակում է ապացուցել, որ բուրժուական հասարակարգը դատապարտված է կործանման, որ պրոլետարիատը անխուսափելիորեն պետք է կատարի սոցիալիստական հեղաշրջում և անցնի իշխանության գլուխ, նոր ձևով վերակառուցի ամբողջ կյանքը, ստեղծի կոմունիստական հասարակարգ։*

*Զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի դրույթները, Վ. Ի. Լենինն այն խոր համոզման էր, որ կապիտալիզմի կործանումը և կոմունիստական հասարակարգի հաստատումը անխուսափելի են։ Լենինն իր ողջ եռանդը և ուժերն ի սպաս դրեց նոր հասարակարգի կառուցմանը։ Եվ ոչ միայն նա, այլև գիտական կոմունիզմի ուսմունքով զինված հեղափոխականների մի ամբողջ սերունդ իր գիտակցական կյանքն անմնացորդ նվիրեց աշխատավոր զանգվածների սոցիալական ու ազգային ազատագրման վեհ գործին։ Ցարական ինքնակալության դաժան պայմաններում դաստիարակվեցին ու կոփվեցին բազմաթիվ պրոֆեսիոնալ հեղափոխականներ, որոնց գործունեության կարևոր բնագավառներից էր պրոպագանդան։*

*Գիտական կոմունիզմի տարածման հաջողությունը պրոլետարիատի շրջանում պայմանավորված էր հենց նրանով, որ Մարքսի և Էնգելսի ուսմունքի լուսաբանումը տարվում էր ճշմարտացի հունով։ «...Մեր պրոպագանդան,— ասում էր Վ. Ի. Լենինը,— այդպիսի հաջողություն ունի ոչ թե այն պատճառով, որ մենք արդեն շատ փորձված պրոպագանդիստներ ենք, նա հաջողություն ունի այն պատճառով, որ այն, ինչ մենք ասում ենք, ճշմարտություն է»* (Լենինը պրոպագանդայի և ագիտացիայի մասին, *Հայպետհրատ, 1956, էջ 6)։*

*Վ. Ի. Լենինին, որպես գիտական մտքի տիտանի, որպես հանճարեղ տեսաբանի, բնորոշ էր խոր համոզվածությունը հեղափոխության հաղթանակի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործի նկատմամբ։ Նրա հատկանիշներից էր նաև մարքսիզմի խոր իմացությունը։ Նա ոչ միայն կատարելապես տիրապետում էր առարկային, այլև կարողանում էր մարքսիզմի տեսությունը վարպետորեն կիրառել հասարակական կյանքի ամենատարբեր ասպարեզնե-*

րում։ Բանվորական շարժման հետ կապված ամեն մի հանգուցային հարց, իրոք, նա զուգակցում էր հեղափոխական տեսության հետ։ Վ. Ի. Լենինի Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ, Ի՞նչ անել, Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ, Սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը առաջին ռուսական հեղափոխության մեջ, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Պետություն և հեղափոխություն և բազմաթիվ այլ աշխատություններում ցույց է տրված գաղափարախոսության վիթխարի դերը նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում։ Նրանցում սահմանված են աշխատավորների քաղաքական գիտակցականության բարձրացման ձևերը և ուղիները։ Լենինյան աշխատություններում խորապես բացահայտված են պատմական ժամանակաշրջանի սոցիալ-տնտեսական հարաբերությունները, դասակարգերի գաղափարական, քաղաքական միտումները։

Վ. Ի. Լենինի գրավոր ու բանավոր խոսքին բնորոշ են մտքի պարզությունը, բոլոր իրավիճակներում արագ կողմնորոշվելը, օբյեկտիվությունը, սկզբունքայնությունը, մեթոդաբանական ուղղվածությունը, կանխատեսման ուժը։ Հիրավի, մարդկանց համոզելու անկասելի ուժը, առաջադրված փաստերի համոզչականությունը և գրավչությունը, յուրաքանչյուրին անմիջապես հասկանալը, մեծ գործերի ոգեշնչելն ու հրապուրելը լենինյան խառնվածքի բնորոշ հատկանիշներից են։

Լենին-պրոպագանդիստի մասին շատերն են արտահայտվել։ Այսպես, բանվոր-հեղափոխական Ի. Վ. Բաբուշկինը, որը մասնակցել է Լենինի վարած քաղաքատնտեսության պարապմունքներին, գրել է. «...Դասախոսը մեզ այդ գիտությունը շարադրում էր բանավոր, առանց որևէ տետրի, հաճախակի ջանալով մեր մեջ առաջ բերել կա՛մ առարկություն, կա՛մ վիճելու ցանկություն, և ապա դրդում էր մեկին, ստիպելով, որ մյուսին ապացուցի տվյալ հարցի վերաբերյալ իր տեսակետի ճշմարտացիությունը։ Այսպիսով, մեր դասախոսությունները կրում էին շատ աշխույժ, հետաքրքիր բնույթ՝ հռետորներ դառնալու հմտություն ձեռք բերելու հավակնությամբ. պարապմունքների այդ եղանակը լավագույն միջոցն էր, որով ունկնդիրներն էին պարզաբանում տվյալ հարցը։ Մենք բոլորս շատ գոհ էինք լինում այդ դասախոսություններից և միշտ հիանում էինք մեր դասախոսի խելքով...» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, 1, Ե., 1957, էջ 150)։

Վ. Ի. Լենինը վարպետորեն տեսությունից կատարում էր անհրաժեշտ եզրակացություններ, որոնք ծառայում էին որպես գործողության ուղեցույց։ Նա հեղափոխական պրոպագանդիստներին խորհուրդ էր տալիս տեսությունը սերտորեն շաղկապել կյանքի, պրակտիկայի հետ, այն բանի հետ, ինչ անհրաժեշտ էր անել տվյալ պահին։ Մի խոսքով, նա կարողանում էր տեսությունը բխեցնել կյանքից։ Վ. Ի. Լենինը մեծ պատասխանատվությամբ էր պատրաստվում իր յուրաքանչյուր ելույթին, դասախոսությանը, զեկուցմանը։ Այդ են վկայում նրա բազմաթիվ կոնսպեկտները, տեզերը, գրառումները։ Իր ելույթներում նա դարձնում էր ցայտուն ամենակարևորը, ամենագլխավորը՝ վառ օրինակներով լուսաբանում յուրաքանչյուր միտք։ Իլյիչը լսարանին ասում էր ճշմարտությունը, ցավոտ հարցերն արծարծում էր ամենայն սրությամբ և կոնկրետությամբ։ Նրա խոսքը կտրուկ էր, դիպուկ, հրապուրիչ, ամեն մի դարձվածքը, պատկերավոր արտահայտությունները մխրճվում էին լսողների հիշողության մեջ։

Լենինը զարմանալիորեն կարողանում էր կռահել լսարանի տրամադրությունը, նվաճել ունկնդիրների ուշադրությունը։ Մասսաների առջև ելույթ ունենալիս նա միշտ կողմնորոշվում էր ըստ լսարանի, հաշվի էր առնում նրանց պահանջներն ու տրամադրությունները։

Վ. Ի. Լենինի թե՛ գրավոր և թե բանավոր խոսքում ցայտուն կերպով դրսևորվում էին գաղափարական ներգործությունից բխող կազմակերպական, պրակտիկ հետևությունները։ Նա ձգտում էր որքան կարելի է պարզ խոսել,



ունկնդիրներին մղել դասակարգային պայքարի ընդդեմ ցարիզմի։ Լենինյան խոսքը, այսպիսով, ինքնանպատակ չէր, այն քաղաքական պայքարի կոչ էր։ «Առանց հեղափոխական տեսության չի կարող լինել նաև հեղափոխական շարժում»,— գրել է Վ. Ի. Լենինը Ինչ անել հանճարեղ աշխատության մեջ, առարկելով էկոնոմիստներին, որոնք դեմ էին պրոլետարիատի քաղաքական պայքարին, հետևաբար չէին ընդունում քաղաքական ագիտացիան որպես մասսաներին ակտիվացնելու մեթոդ։

Վ. Ի. Լենինը հանդես էր գալիս ամենածավալուն ագիտացիա վարելու օգտին, մերկացնում էր էկոնոմիստներին, որոնք փորձում էին նեղացնել ագիտացիայի բովանդակությունը։ Նա գտնում էր, որ քաղաքական ագիտացիան և տնտեսական ագիտացիան անքակտելիորեն կապված են, ինչպես միևնույն մեդալի երկու երեսները։ Ագիտացիայի այդ երկու տեսակները, բազմիցս նշել է նա, հավասարապես անհրաժեշտ են պրոլետարիատի դասակարգային ինքնագիտակցության զարգացման համար։ «...Թե՛ տնտեսական և թե քաղաքական ագիտացիան,— գրել է Վ. Ի. Լենինը,— հավասարապես անհրաժեշտ են իբրև ռուսական բանվորների դասակարգային պայքարի ղեկավարություն, որովհետև ամեն մի դասակարգային պայքար քաղաքական պայքար է» (ԵԼԺ, հ. 2, էջ 563)։

Լենինյան բնորոշմամբ ագիտատորը ժողովրդական տրիբուն է, որը կարողանում է խոսել մասսայի հետ և որի կրակոտ խոսքը արձագանք է գտնում, յուրացվում աշխատավորների կողմից։ «...Այդպիսի ագիտատոր, այդպիսի ժողովրդական տրիբուն էր նաև ինքը՝ Լենինը»,— գրել է Ն. Կ. Կրուպսկայան (Լենինը պրոպագանդայի և ագիտացիայի մասին, էջ 13)։

Լենինը կոմունիստներին խորհուրդ էր տալիս սովորել մասսաներին ունկնդրելու եղանակներն ու ձևերը, ուսումնասիրել նրանց մանրազնին կերպով, ժամանակին կարողանալ ճիշտ լոզունգներ առաջադրել, ամեն մի ժամանակահատվածում փաստերի շղթայից հենց այն օղակն ընտրել, որից անհրաժեշտ է բռնել՝ ամբողջ շղթան դուրս քաշելու համար, լուսաբանել երևույթների ամբողջ գումարը փոխկապակցվածության մեջ։

Հիրավի, կուսակցությունն իր ողջ գործունեության ընթացքում հավատարիմ է մնացել Վ. Ի. Լենինի պատգամներին՝ պատմական պայմաններին համապատասխան մշտապես փոփոխել իր լոզունգները, որի պայմաններում փոխվում էին նաև կուսակցության աշխատանքի եղանակները։ Քաղաքական ագիտացիայի մեթոդներն ու ձևերը կատարելագործվում են և համապատասխանում պատմական փոփոխված պայմաններին։

Լոզունգների ճիշտ ընտրությունը,— գրել է Լենինը,— տեսությունը կապում է պրակտիկայի հետ, ագիտացիան դարձնում ավելի ներգործուն։ Իրոք, այն լոզունգները, որոնք առաջադրել էին բոլշևիկները Փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո՝ մինչև Հոկտեմբերը («ամբողջ իշխանությունը սովետներին», խաղաղության լոզունգը, հողի մասին լոզունգը) ճիշտ էին, ուստի ապահովեցին բանվոր դասակարգի հաղթանակը բուրժուական ժամանակավոր կառավարության դեմ։

Կյանքը ցույց տվեց լենինյան լոզունգների ճշմարտացիությունը մեծ Հոկտեմբերի հաղթանակի համար մղված պայքարում։ Հեղափոխության օրերին ասպարեզ եկան հազարավոր հեղափոխական ագիտատորներ, որոնց ազդեցությունն օրեցօր ուժեղանում էր, որովհետև սերտորեն կապված էին աշխատավորական լայն խավերի հետ և արտահայտում էին նրանց տնտեսական, քաղաքական շահերը։ Իսկ մասսաները փաստերով ու գործերով են համոզվում և ոչ թե մերկ խոսքերով։ Ոչ թե խոսքին, այլ գործին են հավատում բանվորները և գյուղացիները։ Սովետների համառուսաստանյան III համագումարում Վ. Ի. Լենինը հայտարարեց. «Մենք գիտենք, որ ժողովրդական մասսաներում այժմ բարձրանում է ուրիշ ձայն. Նրանք իրենց ասում են՝ այժմ չպետք է վախենալ հրացանավոր մարդուց, որովհետև նա պաշտպանում է աշխատավորներին և անողոք կլինի շահագործողների տիրապետության ճնշման գործում։ Ահա թե ինչ է զգացել ժողովուրդը, և ահա թե ինչու

*այն ագիտացիան, որ մղում են հասարակ, անուսում մարդիկ, երբ նրանք պատմում են այն մասին, որ կարմիրգվարդիականներն իրենց ամբողջ հզորությունն ուղղում են շահագործողների դեմ — ահա թե ինչու այդ ագիտացիան անհաղթելի է» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 35, էջ 317—318)։*

*Քաղաքական ագիտացիան ավելի լայն թափ ստացավ քաղաքացիական պատերազմի ժամանակ։ Հատուկ նշանակություն ունեցան ագիտացիոն գնացքներն ու շոգենավերը։ Գաղափարախոսական ներգործման կարևոր ազդակ հանդիսացան սովետական իշխանության առաջին դեկրետներն ու միջոցառումները։*

*Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս գաղափարախոսական գործունեությանը սոցիալիստական շինարարության բնագավառում՝ մասսաներին դեպի նորանոր հաջողությունների ոգեշնչելու համար, հատկապես նշելով դրա կազմակերպչական կողմը։*

*Սոցիալիզմի կառուցման տարիներին փոխվեց գաղափարախոսական աշխատանքի բովանդակությունը։ Այն փոխադրվեց նոր ռելսերի վրա, սերտորեն կապվեց կյանքի, տնտեսական շինարարության, պլանային տնտեսության խնդիրների հետ։ Վիթխարի ագիտացիոն նշանակություն ստացավ սոցիալիստական մրցությունը։ «Հին տիպի պրոպագանդան,— գրել է Վ. Ի. Լենինը,— պատմում է, օրինակներ է տալիս, թե ի՞նչ բան է կոմունիզմը։ Բայց այդ հին պրոպագանդան ոչ մի բանի պետք չէ, որովհետև հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպե՞ս պետք է կառուցել սոցիալիզմ։ Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա... Մեր գլխավոր քաղաքականությունն այժմ պետք է լինի պետության տնտեսական շինարարությունը... Եվ դրա վրա պետք է կառուցվի ամբողջ ագիտացիան ու պրոպագանդան... Յուրաքանչյուր ագիտատոր պետք է լինի պետական ղեկավար, բոլոր գյուղացիների ու բանվորների ղեկավարը տնտեսական շինարարության գործում» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 41, էջ 487—488)։*

*ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԿՈՄՈՒՆԻՍՏ, որտեղ էլ աշխատելիս լինի, կոչված է հանդես գալու որպես լենինյան կուսակցության գաղափարների ջատագով և այդ գործին նվիրաբերի իր ողջ գիտելիքները, հոգու կրակը։ Գաղափարախոսական ոլորտը կոմունիզմի համար պայքարի կարևոր ճակատն է, որի նպատակն է հաջողությամբ իրագործել կուսակցության առաջադրած տնտեսական, շինարարական և կուլտուրական խնդիրները։ Հիրավի, լենինյան տիպի գաղափարախոսը կոչված է ճշմարիտ խոսքով ոգեշնչելու մարդկանց, խթանելու նրանց աշխատանքը, ակտիվ կենսադիրքորոշումը։*

*Կուսակցության գաղափարախոսական-քաղդաստիարակչական աշխատանքի մեթոդներն ու սկզբունքներն առավել կատարելագործվեցին ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի և մյուս պլենումների փաստաթղթերում։ Կոմունիստի, պրոպագանդիստի և ագիտատորի տրամադրության տակ այժմ գտնվում են գործողության լայն ծրագրեր։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը գաղափարախոսական աշխատանքը համարեց ամբողջ կուսակցության, հետևաբար նաև յուրաքանչյուր կոմունիստի սրբազան գործը։ Պլենումի որոշման մեջ շեշտված է քաղաքական ագիտացիայի և պրոպագանդայի գաղափարական ներգործունության բարձրացման անհրաժեշտությունը։ Որոշումը պարտավորեցնում է ըստ ամենայնի բարձրացնել գաղափարադաստիարակչական աշխատանքի որակը և արդյունավետությունը, զարգացնել պրոպագանդայի և ագիտացիայի հարձակողական բնույթը, մարտունակությունը։ Պլենումը սահմանեց պրոպագանդայի և ագիտացիայի գլխավոր ուղղությունները, դրանց հետագա կատարելագործման անհրաժեշտությունը։ Կուսակցությունը բարձր է գնահատում պրոպագանդիստական կադրերին, որոնք մարքս-լենինյան գաղափարներով են տոգորում աշխատավորական լայն խավերին։ Կուսակցության քաղաքականության պրոպագանդան մեծ չափով նպաստում է մեր երկրի զարգացման սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծմանը։ Մարդկանց շրջանում գիտակցականություն, պատրաստակամություն, կամք և կոմունիզմի կառուցման հմտություն*



*պատվաստելը դիտվում է կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման համար մղվող պայքարի հետ անխզելի կապի մեջ։*

*Զարգացած սոցիալիզմի ներկա փուլում կուսակցությունը պահանջում է ապահովել պրոպագանդայի և ագիտացիայի գիտական բարձր մակարդակ, գործարարություն, հարձակողականություն։ Պահանջվում է գիտական գաղափարներն է՛լ ավելի հասկանալի և մատչելի պրոպագանդել աշխատավորությանը, երիտասարդ սերնդին։*

*Կուսակցությունը նշում է, որ նոր մարդու կերպավորման պրոցեսը նույնքան անընդհատ ու բարդ է, որքան անընդհատ ու բարդ է կյանքն ինքը։ Փոխվում են աշխատանքի ու կենցաղի սոցիալ-տնտեսական պայմանները, հասունանում են նորանոր սերունդներ։ Եվ դա հարուցում է բազմաթիվ նոր խնդիրներ։ Այսօր անհրաժեշտ է վճռականորեն հաղթահարել այնպիսի երևույթներ, ինչպիսիք են՝ կյանքի սուր պրոբլեմներից խուսափելը, ձևամոլությունն ու պարադայնությունը։ Ռեալիզմ, ճշմարտացիություն ու գործարարություն, մեր նվաճումների հմուտ ցուցադրում և մարդկանց հուզող հարցերի խորազնին վերլուծություն, մտքի թարմություն և շարադրանքի պարզություն՝ ահա թե Կենտրոնական կոմիտեն ինչի վրա է սևեռում գաղափարախոսական աշխատողների ուշադրությունը։*

*Ամբողջ գաղափարախոսական գործունեությունը պետք է նպաստի ամենուրեք աշխատանքի լենինյան գործարար, ստեղծագործական ոճի հաստատմանը, որը տոգորված է բարձր գաղափարայնությամբ, սոցիալիստական բարոյականության նորմերին, կոլեկտիվիստական կացութաձևին հակասող ամեն տեսակ քարացածության նկատմամբ անհաշտվողականությամբ։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումն իրավացի կերպով բնութագրվեց որպես գաղափարախոսության և պրոպագանդայի, ընդհանրապես նոր մարդու կոմունիստական ձևավորման բնագավառում կուսակցության՝ գործունեության ոգեշնչող երկարաժամկետ ծրագիր։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումից հետո գաղափարախոսական, քաղաքական, պրոպագանդիստական աշխատանքների բնագավառում կուսակցությունը կուտակել է մեծ փորձ։ ՍՄԿԿ Կենտկոմի այդ որոշումը կարևոր փաստաթուղթ է և այն մեծ նշանակություն ունի գաղափարադաստիարակչական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացման, աշխատավորների տարբեր շերտերի առանձնահատկությունները հաշվի առնելով՝ քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովման համար։ Գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի նպատակն է աշխատավորությանը, երիտասարդ սերնդին զինել մարքս-լենինյան տեսությամբ, նրան տոգորել կոմունիստական իդեալներին հավատարմության ոգով։*

*Կուսակցության բազմաբեղուն գործունեության այդ կարևորագույն բնագավառը մշտապես գտնվում է ՍՄԿԿ Կենտկոմի ուշադրության կենտրոնում։ Դրա վառ վկայությունն էր «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» կուսակցության Կենտկոմի անցյալ տարվա հոկտեմբերին ընդունած որոշումը։ Այդ պատմական փաստաթուղթը հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորներն ընդունեցին խանդավառությամբ, երախտագիտության խոր զգացումով։ Այս ծրագրային որոշումը մեր կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի կողմից մեր ժողովրդի բարօրության, Սովետական Հայաստանի հետագա վարգացման ու ծաղկման նկատմամբ ցուցաբերվող հոգատարության ևս մի նոր, վառ դրսևորում է։*

*ՍՄԿԿ-ն այժմ գաղափարաքաղաքական, դաստիարակչական աշխատանքը ծավալում է՝ ելնելով զարգացած սոցիալիզմի կատարելագործման շահերից։ Այն, անշուշտ, մեծապես նպաստում է մեր հասարակարգի առաջընթացին, կոմունիստական շինարարությանը, ժողովրդի բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացմանը։*

Այդ ռեալ իրադրությունից են բխում նաև միջազգային ոլորտում մեր գաղափարաքաղաքական աշխատանքի առանձնահատկությունները։ Կուսակցությունը գաղափարադաստիարակչական բնագավառի կադրերից պահանջում է պրոպագանդան դարձնել գործնական, այն ծավալել պրակտիկայի հետ սերտորեն առնչված, ցուցաբերել ստեղծագործական մոտեցում տեսության նկատմամբ, պայքար ծավալել դոգմատիզմի և տիրացուականության դեմ, իրողություններից, կյանքից հեղափոխական պայքարի կտրվածության դեմ, հավատարիմ մնալ տեսության և պրակտիկայի անխզելի կապին։ Գործնական, հարձակողական պրոպագանդա, վճռական պայքար՝ աջից և ձախից մարքս-լենինյան տեսությունը ռևիզիայի ենթարկելու բոլոր փորձերի դեմ։

ՍՍՀՄ-ի, սոցիալիստական ընկերակցության երկրների համախմբվածությունն ու միասնությունը, նրանց տնտեսական, կուլտուրական, քաղաքական վիթխարի հաջողությունները, ինչ խոսք, դուր չեն գալիս սոցիալիզմի թշնամիներին, մարքս-լենինյան գաղափարախոսության հակառակորդներին։ Հասկանալի է, իմպերիալիստական հետադեմ շրջանների վիթխարի պրոպագանդիստական մեքենան ուղղված է սոցիալիստական երկրների դեմ։ Իմպերիալիզմի գաղափարախոսական ներգործությունը դարձել է կապիտալիստական երկրների աշխատավորների քաղաքական, ինչպես նաև հոգևոր ստրկացման գործիքներից մեկը։ Իմպերիալիստական շրջանները համառ պայքար են մղում իրենց կորցրած դիրքերի վերականգնման ու ամրապնդման համար։ Իմպերիալիստական աշխարհի պրոպագանդան ձգտում է ստվեր գցել լարվածության թուլացման, աշխարհում կայուն, տևական խաղաղություն հաստատելու նպատակով սովետական պետության, սոցիալիստական ընկերակցության երկրների և մարքս-լենինյան կուսակցությունների կողմից ծավալած եռանդուն գործունեության վրա։

Արդի փուլում միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարն ուժեղանում է ռեալ սոցիալիզմի դիրքերի և հեղինակության ամրապնդման կապակցությամբ։ Արևմուտքում մեծանում է հետաքրքրությունը սոցիալիզմի, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների նկատմամբ։ Ամբողջ աշխարհում լայնորեն տարածվում են Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները։ Միաժամանակ ավելի ու ավելի վառ կերպով բացահայտվում են կապիտալիզմի որպես շահագործման, ճնշման ու բռնության սիստեմի, արատները, իմպերիալիզմի ագրեսիվ էությունը, դեմոկրատիայի դեմ մղած պայքարի միտումը։ Կուսակցությունը պահանջում է ուժեղացնել և կատարելագործել արտաքին քաղաքական պրոպագանդան, ժամանակին արձագանքել աշխարհում տեղի ունեցող փոփոխություններին, ժամանակին և հիմնավոր կերպով հակահարված հասցնել իմպերիալիզմի ամեն տեսակ գաղափարախոսական մեքենայություններին և սադրանքներին։ Գաղափարախոսական կադրերը միշտ պետք է հիշեն մեծ Լենինի հետևյալ պատգամը. «...Անպայման ավելի առաջ գնանք, անպայման ավելի շատ բան ձեռք բերենք, անպայման ավելի հեշտ խնդիրներից անցնենք ավելի դժվարներին։ Առանց դրա ոչ մի առաջընթաց ընդհանրապես հնարավոր չէ, անհնարին է նաև առաջընթացը սոցիալիստական շինարարության մեջ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 37, էջ 238)։

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. մարտյան արտահերթ պլենումում կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Մեր առջև ծառացած բարդ խնդիրների լուծումը ենթադրում է կուսակցության հետագա ամրապնդում, նրա կազմակերպող և ուղղություն տվող դերի բարձրացում։ ՍՄԿԿ-ն միշտ էլ եղել է և մնում է լենինյան այն մտքից, որ սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է։ Այդ քաղաքականությունը, որը մշակվում է կոլեկտիվ կերպով, կիրառելու ենք հետևողականորեն ու անշեղորեն։ Կուսակցությունը հենց այն ուժն է, որն ի վիճակի է հաշվի առնել երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի և ազգությունների շահերը, նրանց ի մի համախմբել, ժողովրդի եռանդը մոբիլիզացնել կոմունիստական արարման ընդհանուր գործի համար»։



# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով, մշտական ուշադրություն է նվիրում երկրում մասսայական և ներգործուն վերահսկողության զարգացմանը։ Առաջնորդը ժողովրդական վերահսկողությունն անխզելիորեն կապում էր սոցիալիստական կարգերի, դրանց դեմոկրատական բնույթի հետ և խնդիր էր դնում այդ աշխատանքում ակտիվորեն ներգրավել աշխատավորական զանգվածներին, բարձրացնել կուսակցական, սովետական և արհմիութենական մարմինների պատասխանատվությունը՝ արդյունավետ վերահսկողություն ապահովելու գործում։ Զարգացնելով վերահսկողության մասին լենինյան դրույթները՝ ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ կառավարման մարմինների և պաշտոնատար անձանց աշխատանքի համապարփակ ժողովրդական վերահսկողությունը սովետական դեմոկրատիայի անհրաժեշտ բաղկացուցիչ մասն է։

Վերջին տարիներին իրականացվել են շատ միջոցառումներ ժողովրդական վերահսկողությունն ուժեղացնելու համար։ Սկզբունքային նշանակություն ունեն ՍՍՀՄ սահմանադրության դրույթները, որոնք կանխորոշում են վերահսկողության տեղն ու դերը սովետական հասարակության քաղաքական սիստեմում։ Այդ նպատակին են ծառայում նաև ժողովրդական վերահսկողության վերաբերյալ օրենքը և այդ առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշումը։ «Տարածվելով տնտեսական կյանքի և սոցիալ-կուլտուրական շինարարության վրա, արտադրության ու բաշխման բնագավառի վրա, պետական ապարատի գործունեության վրա՝ ժողովրդական վերահսկողությունը կարևոր դեր է խաղում սովետական սոցիալիստական համաժողովրդական պետության խնդիրների և ֆունկցիայի իրականացման գործում»— ասված է «ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին» օրենքում։

Վերահսկողության զարգացման գործում նշանակալից փուլ էր ժողովրդական վերահսկիչների համամիութենական խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ 1984 թվականի հոկտեմբերին։ Խորհրդակցությունը մեծ ու բարերար ազդեցություն գործեց արդի պայմաններում ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքի պրակտիկայի կատարելագործման վրա, սահմանեց դրա արդյունավետության բարձրացման ուղիները։

Ժողովրդական վերահսկողության մարմինների առջև նոր խնդիրներ դրեց ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1985 թ.) պլենումը։ Ինչպես նշեց ընկեր Մ. Ս. Գորբաչովը, «Ժողովրդական վերահսկողության ակտիվացումը համարվում է կուսակցության ներքին քաղաքականության արմատական խնդիրներից մեկը»։

Կուսակցության մշտական ուշադրության շնորհիվ ժողովրդական վերահսկողությունը վերածվել է պետական և հասարակական մեծ ուժի, հանդես է գալիս որպես կուսակցության անմիջական օգնական։ Գործելով նյութական արտադրության և սպասարկման ոլորտի բոլոր տեղամասերում՝ ժողովրդական վերահսկողության մարմինները կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ մեծ աշխատանք են ծավալում կուսակցության դիրեկտիվների, սովետական օրենքների և կառավարության որոշումների կատարման ստուգ-

ման ասպարեզում։ Նրանց համակարգում իր արժանի տեղն ունի նաև Սովետական Հայաստանի ժողովրդական վերահսկիչների 110 հազարանոց ջոկատը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ղեկավարությամբ հանրապետության աշխատավորական կոլեկտիվները հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXVI համագումարի և հետհամագումարյան պլենումների որոշումները։ Ինչպես նշվեց «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ՀԿԿ Կենտկոմը, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական մարմիններն ու կազմակերպությունները քաղաքական և կազմակերպական որոշակի աշխատանք են կատարել կարգապահության ամրապնդման, կադրերի ակտիվության ու գործարարության բարձրացման նպատակով։ Եվ այդ կուրսը տվել է դրական արդյունքներ։ Փաստաթղթում միաժամանակ նշված են հանրապետության կուսկազմակերպության առջև ծառացած սոցիալ-տնտեսական և կուլտուր-քաղաքական հրատապ խնդիրների ու պրոբլեմների լուծման կոնկրետ ուղիները։ Այդ գործում որոշակի դեր պետք է խաղան նաև ժողովրդական վերահսկողության մարմիններն ու խմբերը, բոլոր վերահսկիչները։ Եվ նրանք անում են ամեն բան՝ ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ բացահայտված թերությունները վերացնելու և առաջադրված խնդիրներն իրականացնելու համար։

Հանրապետությունում էապես բարձրացել է աշխատավորների արտադրական և հասարակական ակտիվությունը, հաջողությամբ կատարվել են անցած չորս տարիների տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները։ Ինչպես ժողովրդական վերահսկողության հանրապետական ակտիվի ժողովում նշեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, այդ ամենի մեջ իրենց ավանդը ներդրեցին ժողովրդական վերահսկիչները, ամբողջությամբ վերցրած ժողովրդական վերահսկողության խմբերն ու մարմինները։

Վերջին տարիներին հանրապետությունում նշանակալիորեն ուժեղացել է ժողովրդական վերահսկողության կուսակցական ղեկավարումը։ Դա նպաստել է կոմիտեների, խմբերի ու վերահսկիչների ակտիվության աճին։ Ավելի նպատակասլաց ու արդյունավետ է դարձել վերադաս մարմինների դիրեկտիվների, սովետական օրենքների կատարման հսկողությունը։ Վերջին երկու տարում ժողովրդական վերահսկողության կոմիտեները քննարկել են ավելի քան 5.400 ստուգումների արդյունքներ։ Դրանց մեծ մասը վերաբերել է էկոնոմիկայի զարգացման հրատապ հարցերին և նպաստել հանրապետության մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքում տեղ գտած շատ թերությունների վերացմանը։ Նկատելիորեն ուժեղացել է կոմիտեների և խմբերի պահանջկոտությունը խախտումներ կատարած պաշտոնատար անձանց նկատմամբ։ Այդ նույն ժամանակամիջոցում կոմիտեները պետական կարգապահության զանազան խախտումների, անտնտեսվարության և չարաշահումների համար պատասխանատվության են ենթարկել ավելի քան 7.700 պաշտոնատար անձանց, ընդ որում նրանցից 157-ը հեռացվել են գրաված պաշտոններից, 1.585 մարդու վրա 320 հազար ռուբլու դրամական տույժ է գրվել։

Իհարկե, ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքի մասին չի կարելի դատել սոսկ ստուգումների քանակով և պատասխանատվության ենթարկված պաշտոնատար անձանց թվով։ Կարևոր է, թե ինչպես է անցկացվում բուն ստուգումը։ Կյանքը ցույց է տալիս, որ լավ կազմակերպված ամեն մի ստուգում ինքնին արդեն նպաստում է թերությունների վերացմանը, կադրերի դաստիարակմանը, խախտումների կանխարգելմանը։

Ժողովրդական վերահսկողության մարմինները մեկուսի համակարգ չեն։ Դրանք կուսակցության և կառավարության ձեռքին զենք են ժողովրդական տնտեսության կառավարման ասպարեզում։ Դրա համար կոմիտեներն ու խմբերը պետք է իրենց աշխատանքը գնահատեն՝ ելնելով ձեռնարկություններում և կառույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում, հիմնար-



կություններում և կազմակերպություններում գործերի իրական վիճակից։ Նրանց գործունեության թերությունները, ըստ էության, արտահայտում են թերացումները նաև կոմիտեների և խմբերի աշխատանքում։

Ժողովրդական վերահսկողության մարմինների խնդիրները բխում են հանրապետության ժողովրդական տնտեսության առանձին օղակների աշխատանքներում տեղ գտած թերությունների վերացման և չլուծված հարցերի կարգավորման անհրաժեշտությունից։ Ներկայումս ժողովրդական վերահսկողության կոմիտեների, խմբերի ու վերահսկիչների առջև ծառացած են մեծ ու բարդ, որակապես նոր խնդիրներ, որոնք առաջադրել է ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. մարտյան պլենումը։

Ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության հիմնական ուղղություններից մեկը տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների կատարման հսկողությունն է։ Հանրապետությունը հաջողությամբ կատարեց 1984 թվականի, ամբողջությամբ վերցրած հնգամյակի չորս տարիների տնտեսական հիմնական ցուցանիշների պլանները։ Դրա հետ մեկտեղ հնգամյակի եզրափակիչ տարվա՝ 1985 թվականի առաջին ամիսների պետական պլանների կատարման գործում կան էական թերություններ։ Արդյունաբերության մեջ նվազել են արտադրանքի ծավալի աճի տեմպերը, արտադրամիավորումների և ձեռնարկությունների 15 տոկոսը չի կատարել արտադրանքի թողարկման, 17 տոկոսը՝ իրացման, 23,5 տոկոսը՝ առաքման հաշվառմամբ իրացման պլանները։ Արտադրանքի իրացման պլանները թերակատարող շատ ձեռնարկություններ կան Երևանի Լենինյան և Շահումյանի շրջաններում, Աբովյանի, Արարատի, Սիսիանի, Հրազդանի և ուրիշ շրջաններում։ Լուրջ թերացումներ կան կապիտալ շինարարության մեջ։ Հիմնական ֆոնդերի գործարկման առաջին եռամսյակի պլանը կատարվել է 32,3 տոկոսով։ Առաջին երկու ամսում շինմոնտաժային աշխատանքի ծավալի պլանը թերակատարվել է 21,4 միլիոն ռուբլով։

Էական թերություններ կան գյուղատնտեսության մեջ։ Մի շարք շրջաններում անբավարար էին նախապատրաստվել հանրային հոտի ձմեռմանը, Ամասիայի, Արթիկի, Աշտարակի, Ղուկասյանի, Սիսիանի և Թումանյանի շրջաններում հունվար-փետրվար ամիսներին, անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, նվազել են կաթի համախառն արտադրությունը և դրա վաճառքը պետությանը, 16 շրջաններ չեն կատարել մսի մթերումների պլանը։

Կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները, աշխատավորական կոլեկտիվները միջոցներ են ձեռնարկում այդ թերությունները վերացնելու, 1985 թ. տնտեսական և սոցիալական զարգացման պլանները կատարելու համար։ Դրան պետք է ուղղեն իրենց ջանքերը նաև ժողովրդական վերահսկողության կոմիտեներն ու խմբերը։

Ժողովրդական վերահսկիչների երկու երրորդը աշխատում է նյութական արտադրության ոլորտում։ Եվ շատ կարևոր է, որպեսզի նրանք իրենց հարվածային աշխատանքով ապահովեն պլանների գերակատարումը ամեն ամիս, եռամսյակ և ամբողջությամբ վերցրած 1985 թվականին։

Ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության կարևոր ուղղություններից մեկը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվների բացահայտումն ու դրանց օգտագործումն է։ Հանրապետությունում մշտապես բարելավվում է արտադրանքի, կատարած աշխատանքի, մատուցած ծառայությունների որակը։ Այդ խնդրի լուծմանը ուշադրություն են նվիրում նաև ժողովրդական վերահսկողության կոմիտեները, խմբերն ու կետերը։ Սակայն դեռևս շատ ձեռնարկություններ թողարկում են ցածրորակ արտադրանք, կատարում ոչ որակյալ աշխատանք, իսկ նույն կոլեկտիվներում աշխատող ժողովրդական վերահսկիչները հաշտվում են այդ ամենի հետ։

Ցածր է «Սևանի» արտադրամիավորման թողարկած ժամացույցների որակը։ ՍՍՀՄ պետստանդարտի հայկական հանրապետական վարչության 1984 թ.

նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին կատարած ստուգումներով պարզվել է, որ գլխամասային ձեռնարկությունում փորձարկված ընդհանուր արտադրաքանակի մեջ էլեկտրոնամեխանիկական ժամացույցների 44 տոկոսը, մեխանիկականի՝ 88 և արտահանման համար նախատեսված մեխանիկականի 24 տոկոսը չեն համապատասխանել նորմատիվային-տեխնիկական փաստաթղթերին։ Միավորումում ստացվում են մասսայական բողոքներ, արտադրանքի զգալի մասը ետ է վերադարձվում։ Վերջին երեք տարում ձեռնարկությունը ցածրորակ արտադրանքի համար վճարել է ավելի քան 700 հազար ռուբլի տուգանք։

Ցածրորակ արտադրանքի առիթով լուրջ կշտամբանքներ են լինում Երևանի ֆրեզերային հաստոցների, Հրազդանի ցեմենտի, Սպիտակի շաքարի գործարանների, Լենինականի և Չարենցավանի կարի ֆաբրիկաների, Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատի և մի շարք այլ ձեռնարկությունների հասցեին։ Վերջերս ստուգումներով բացահայտվել են նախագծային լուծումների, հակասեյսմիկական միջոցառումների խախտումների, հարդարման ցածրորակ աշխատանքի մի շարք փաստեր «Երևանշին», «Կիրշին», «Սևանշին», «Ախթալշին» տրեստների կառուցած բնակելի շենքերում։

Ցածրորակ արտադրանքի թողարկումը և անբավարար կատարած աշխատանքը այդ ձեռնարկությունների և կառույցների ղեկավարների անպատասխանատվության հետևանք են։ Սակայն հարց է ծագում՝ որտե՞ղ են ժողովրդական վերահսկողության խմբերն ու վերահսկիչները, որոնք, ցավոք, հաճախ իրենք են լինում այդ պրոցեսների մասնակիցներ։ Կոմիտեները, խմբերը և վերահսկիչները պետք է էապես ուժեղացնեն հսկողությունը թողարկվող արտադրանքի, կատարած աշխատանքի որակի նկատմամբ, խստորեն պահանջեն նրանցից, ովքեր մեղավոր են այդ գործում։

Արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ռեզերվ են բանվորական ժամանակի ռացիոնալ օգտագործումը, դրա կորուստների բացառումը։ Հանրապետությունում շատ բան է արված այդ ասպարեզում, և դրանում լուրջ ներդրում ունեն ժողովրդական վերահսկիչները։ Կիրովականի լուսատեխնիկական գործարանի ժողովրդական վերահսկողության խումբը հանդես է եկել «Աշխատանքային կարգապահությունը՝ ժողովրդական վերահըսկիչների անդուլ հսկողության ներքո» նախաձեռնությամբ։ Խումբը իր հսկողության տակ է պահում արտադրական կոլեկտիվի աշխատանքային կարգապահության վիճակը։

Բանվորական ժամանակի կորուստների դեմ պայքարի հարցերով լավ են զբաղվում նաև Երևանի «Ալմաստ», «Էլեկտրասարք», Կիրովականի Շահումյանի անվան կարի արտադրամիավորումների, Լենինականի «Շինմեքենա» գործարանի, Կամոյի անվան շրջանի Բատիկյանի անվան սովխոզի և ուրիշ այլ խմբեր։ Ուսումնասիրությունները միաժամանակ ցույց են տալիս, որ բանվորական ժամանակի կորուստները դեռևս զգալի են, մինչդեռ շատ խմբեր անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում այդ հարցին։ Նախ՝ պետք է նշել, որ ոչ ամենուրեք են հաշվի առնում բանվորական ժամանակը, դրա կորուստները։ Այդ թերությունը բնորոշ է շինարարական կազմակերպություններին և գյուղատնտեսական ձեռնարկություններին։ Առանձին տեղեր թաքցնում են բանվորական ժամանակի կորուստները և դրանով հարցի «բարեհաջողության» տպավորություն ստեղծում։ Հայկական ՍՍՀ հատուկ շինմոնտաժային վարչության հինգ մոնտաժային կազմակերպություններում կատարված ստուգումներից պարզվել է, որ գործալքությունների քանակն արհեստականորեն իջեցված է ավելի քան երեք անգամ, հաշվի չի առնվել բանվորների արտաժամյա, շաբաթ և կիրակի օրերի աշխատանքը։ Ցավոք, այդպիսին է վիճակը շատ շինարարական կազմակերպություններում, իսկ նրանց արհմիութենական կոմիտեներն ու ժողովրդական վերահսկողության խմբերը հաշտվում են դրա հետ։ Մինչդեռ նրանք բանվորական ժամանակի, աշխատանքային կարգապահության հսկողությունը պետք է համարեն իրենց գործունեության կարևոր տեղամասը։



Կուսակցությունը գիտատեխնիկական առաջընթացի արագացումը համարում է հանրային արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ռեզերվ։ «Մենք պետք է, պարտավոր ենք կարճ ժամանակամիջոցում դուրս գանք ամենաառաջավոր գիտատեխնիկական դիրքերը, հանրային աշխատանքի արտադրողականության ամենաբարձր համաշխարհային մակարդակին», ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1985 թ.) պլենումում։ Այդ ասպարեզում զգալի գործ է արված նաև մեր հանրապետությունում։ Վերջին տարիներին ժողովրդական վերահսկողության մարմինները ավելի մեծ ուշադրություն են նվիրում այդ բնագավառին։

Սակայն, ինչպես ՀԿԿ Կենտկոմի 1985 թ. հունվարյան պլենումում նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, «Մեզանում այնքան էլ բարվոք չէ նոր տեխնիկայի, առաջադիմական տեխնոլոգիայի և առաջավոր փորձի արմատավորման առաջադրանքների կատարման վիճակը։ Ժողովրդական տնտեսության ճյուղերի մեծ մասում դրանց հետ կապված միջոցառումներն իրականացվում են ոչ լրիվ»։ Այստեղ մենք պետք է տեսնենք նաև ժողովրդական վերահսկողության կոմիտեների ու խմբերի էական թերացումը։ Այդ կարևոր գործի հսկողությունն անբավարար են իրականացնում Լենինականի քաղաքային, Երևանի Շահումյանի, 26 Կոմիսարների անվան, Օրջոնիկիձեի, ինչպես նաև Կամոյի անվան, Արթիկի, Հրազդանի և այլ շրջանային կոմիտեներ։

Տեխնիկական առաջընթացի 1984 թվականի պլանը առանձին ուղղություններով կատարվել է 87,4 տոկոսով։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ որոշ գիտահետազոտական ինստիտուտներ գործում են առանց անհրաժեշտ հատուցման, ցածր արդյունավետությամբ։ Այդպես է վիճակը, օրինակ, Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի գիտահետազոտական ինստիտուտում։ Այստեղ 1976—1984 թվականներին ավարտված 36 թեմաներից միայն 21-ը կամ 58,3 տոկոսը, իսկ Հայկական ՍՍՀ ԳԱ օրգանական քիմիայի գիտահետազոտական ինստիտուտում 1976—1983 թվականներին բյուջետային ավարտված թեմաներից 55 տոկոսն են միայն կիրառություն գտել պրակտիկայում։ Այդպիսի փաստեր են բացահայտվել նաև միկրոբիոլոգիայի, գեոֆիզիկայի և ինժեներական սեյսմոլոգիայի, շինարարության ու ճարտարապետության և ուրիշ գիտահետազոտական ինստիտուտներում։ Բայց չէ՞ որ յուրաքանչյուր ինստիտուտում կան ժողովրդական վերահսկողության խմբեր (հանրապետությունում դրանց կազմում ընդգրկված է 2.400 մարդ), որոնք կոմպլեկտավորված են բարձր որակավորում ունեցող մասնագետներից։

Ժողովրդական վերահսկողության կոմիտեներն ու խմբերը պարտավոր են օգտագործել իրենց ազդեցությունը, հնարավորությունները գիտատեխնիկական առաջընթացի բոլոր ուղղությունների արագացումն ապահովելու համար։

Ինչպես նշվեց ժողովրդական վերահսկիչների համամիութենական խորհրդակցությունում, ներկա պայմաններում ժողովրդական վերահսկողության ողջ համակարգի, յուրաքանչյուր վերահսկիչի համար, որտեղ էլ նա աշխատելիս լինի, մեր աշխատանքի պտուղների, ամեն մի ժողովրդական կոպեկի, ամեն մի կիլոգրամ մետաղի, հումքի, ամեն մի կիլովատ/ժամ էլեկտրաէներգիայի խնայողաբար օգտագործելու նկատմամբ հոգատար վերաբերմունքը պետական կարևորագույն խնդիր է։ Հանրապետությունում այդ ասպարեզում զգալի գործ է արվել։ 1984 թ. տնտեսվել է 15,7 հազար տոննա մետաղ, 118,6 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 30,9 հազար տոննա ցեմենտ, 54,7 հազար խմ անտառանյութ, 62,8 հազար պայմանական տոննա հնոցավառելանյութ և այլն։ Այդ գործում ակտիվ դեր են խաղացել նաև ժողովրդական վերահսկիչները։ Նրանք սիստեմատիկաբար անցկացրել են նյութական ռեսուրսների օգտագործման ստուգումներ, ստուգատեսներ, պատասխանատվության են ենթարկել նրանց, ովքեր հոգատարությամբ չեն վերաբերվել ժողովրդական բարիքին։

Միաժամանակ հարկ է նշել, որ ոչ ամենուրեք են ռացիոնալ օգտագործ-

վում հումքը, նյութերը, վառելիքն ու էլեկտրաէներգիան, իսկ ժողովրդական վերահսկողության խմբերը հանդուրժողաբար են վերաբերվում դրան։ Ժողովրդական վերահսկողության հանրապետական կոմիտեի 1984 թ. ստուգումներով հումքի, նյութերի, էներգիայի անտնտեսվար օգտագործման փաստեր են բացահայտվել «Հայավտո» արտադրամիավորման, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և արդյունաբերական շինարարության մինիստրությունների ձեռնարկություններում, «Հայհացարդ» արտադրամիավորման գործարաններում, Հրազդանի ցեմենտի գործարանում, «Հայարդապակի» արտադրամիավորումում և այլուր։

Ինչպես հայտնի է, ձեռնարկություններում և կազմակերպություններում կանոնավոր կերպով մշակում են նյութական ռեսուրսների տնտեսման կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ։ Սակայն հաճախ դրանք մնում են թղթի վրա։ Ժողովրդական վերահսկողության խմբերը պետք է հսկողություն սահմանեն այդ միջոցառումների իրականացման նկատմամբ, իսկ որտեղ նման պլաններ չկան, հետևեն դրանց մշակմանը։ ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. հունվարյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Բոլոր մինիստրություններում ու գերատեսչություններում, յուրաքանչյուր ձեռնարկությունում, յուրաքանչյուր տնտեսությունում պետք է մշակվեն և իրականացվեն հումքի, նյութերի, վառելիքի և էներգիայի ծախսի իջեցման միջոցառումներ»։ Այդ պահանջին հետամուտ լինելը ամբողջությամբ վերաբերում է նաև ժողովրդական վերահսկողության կոմիտեներին ու խմբերին։

Անհրաժեշտ է մշտական հսկողություն սահմանել նյութական ռեսուրսների պահանջարկի նորմավորման նկատմամբ։ Այդ գործում եղած թերությունների պատճառով շատ բան է կորչում։ Վերցնենք, օրինակ, հանրապետության գյուղմինիստրությունը։ Այն սահմանել է վառելիքի ծախսման տարբերակված նորմաներ։ Սակայն այնուհետև այդ գործն առաջ չգնաց։ Շատ տնտեսություններում չկան վառելիքի ծախսման տարբերկված նորմաներ վարելահողի էտալոնային հեկտարի, տրանսպորտային աշխատանքի տոննա-կիլոմետրի հաշվով։ Իսկ մի քանի տնտեսություններ նույնիսկ օգտագործում են «սեփական» անհամեմատ բարձրացված նորմաներ։

Մեզ հարկավոր է ավելի մեծ ուշադրություն նվիրել օբյեկտիվ հսկողության և չափումների միջոցների աշխատանքին։ Ստուգումները ցույց են տալիս, որ ոչ ամենուրեք են ճիշտ գործում փոքր ու մեծ կշեռքները, էլեկտրաէներգիայի, բնական գազի, ջրի հաշվիչները և մյուս սարքերը։ Վերջին երկու տարում շատ բան է արված ավտոմեքենաների արագաչափերը կարգավորելու գործում։ Բայց նույնիսկ այդ պայմաններում ավտոմեքենաների զգալի մասը շահագործվում է դեռևս անսարք արագաչափերով։ Այդ ամենի հետևանքով նյութական ռեսուրսներն օգտագործվում են առանց հսկողության։

Ժողովրդական բարիքի խնայողության համար մղվող պայքարում պասիվությունն անհանդուրժելի է։ Կոմիտեները, խմբերը, ժողովրդական վերահսկիչները պետք է էապես ուժեղացնեն իրենց գործունեությունն այդ ասպարեզում, ակտիվորեն մասնակցեն տարվա ընթացքում 2—3 օր տնտեսված հումքի, նյութերի, էներգիայի հաշվին աշխատելու համար ծավալված պայքարին։

Կյանքը հրամայաբար պահանջում է ուժեղացնել հսկողությունը երկաթուղային և ավտոմոբիլային տրանսպորտի աշխատանքի, ուղևորների սպասարկման բարելավման նկատմամբ։ Այս ասպարեզում Հայաստանի ժողովրդական վերահսկիչների գլխավոր խնդիրը պայքարն է վագոնների պարապուրդները նվազեցնելու, վագոնների և կոնտեյներների շրջապտույտն արագացնելու համար։ Պետք է խոստովանել, որ այդ ոլորտում մեր գործունեությունը չի տալիս ցանկալի արդյունքներ։ 1984 թ. մերձատար ուղիներում վագոնների միջին պարապուրդը 5, 25 ժամ նորմայի դիմաց կազմել է 7,45 ժամ, որի համար ձեռնարկությունները վճարել են 2,5 միլիոն ռուբլու տուգանք։ Վագոնները սիստեմատիկաբար պարապուրդ են տվել Մասիսի միացյալ տրանսպորտային տնտեսության, Արարատի ցեմենտ-շիֆերի, Չարենցավանի կենտրոնաձուլ



գործարանների, «Նաիրիտ» գիտաարտադրական, «Հայարդապակի» միավորումների և շատ այլ ձեռնարկությունների մերձատար ուղիներում։ Սակայն այդ ամենն այնքան էլ չի անհանգստացնում այդ տրանսպորտային տնտեսությունների մեջ մտնող ձեռնարկությունների ժողովրդական վերահսկողության խմբերի և Մասիսի, Արարատի, Հրազդանի շրջանային, Լենինականի քաղաքային և այլ կոմիտեների նախագահներին։

Մինիստրությունների, գերատեսչությունների ղեկավարները վերջին երկու տարում զգալի աշխատանք են կատարել ավտոտրանսպորտի, վառելիքաքսուքային նյութերի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու ասպարեզում։ Ճիշտ է, այդ գործում կա և ժողովրդական վերահսկիչների ներդրումը, սակայն նրանց արածը դեռևս չի կարելի բավարար համարել։ Կոմիտեներն ու խմբերը պետք է մշտապես հետևեն, որպեսզի ավտոտրանսպորտն օգտագործվի ռացիոնալ կերպով, բեռնման, նորոգման ժամանակ պարապուրդ չտա։ Նրանք պետք է ուժեղացնեն պայքարը այնպիսի արատավոր երևույթների դեմ, ինչպիսիք մարդատար տրանսպորտում անտոմս երթևեկությունն է և ուղևորների անօրինական փոխադրումը։

Կուսկազմակերպությունների ղեկավարությամբ հանրապետությունում ակտիվ պայքար է ծավալվում սոցիալիստական սեփականության նկատմամբ ոտնձգությունների, ինչպես նաև հավելագրումների ու աչքակապության դեմ։ Այդ կարևոր խնդիրների լուծման վրա են սևեռում իրենց ուշադրությունը ժողովրդական վերահսկողության կոմիտեներն ու խմբերը։ Վերջին երկու տարում կոմիտեները քննարկել են դրանց վերաբերող մոտ հազար ստուգումների արդյունքները։ Պատասխանատվության կանչված պաշտոնատար անձանց 50 տոկոսը մեղադրվել է անտնտեսվարության, վատնման, սոցիալիստական սեփականության պահպանությունը չապահովելու, հավելագրումների և պետությանը խաբելու համար։

Սակայն կատարված աշխատանքը բավարար համարել չի կարելի։ Հաճախ աշխատավորական կոլեկտիվի, ժողովրդական վերահսկողության նրա խմբերի աչքի առջև տեղի են ունենում սոցիալիստական սեփականության հափշտակման, աչքակապության և պետությանը խաբելու դեպքեր։ Դեռևս անբավարար է երկաթուղային տրանսպորտով փոխադրվող բեռների պահպանման վիճակը։ Կան փաստեր, երբ հափշտակությունը կատարում են երկաթուղայիններն ու պահակները։

Հայկական ՍՍՀ կամավոր հրշեջ ընկերությունում ստեղծվել էր հակահրդեհային ազդանշանների մոնտաժման տեղամաս։ Այժմ արդեն նախկին այդ տեղամասի ղեկավարությունն արհեստականորեն բարձրացրած և անօրինական նորմաների օգտագործմամբ ու, այսպես կոչված, «մեռած հոգիների» միջոցով յուրացրել էր զգալի գումար։ Վերջերս կատարված ստուգմամբ մասսայաբար էլեկտրաէներգիա գողանալու փաստեր են բացահայտվել Մարտունու, Ղուկասյանի, Ամասիայի և մի շարք այլ շրջաններում։

Այս ամենը վկայում է, որ ժողովրդական վերահսկողության կոմիտեներն ու խմբերը պետք է հիմնավորապես ուժեղացնեն հսկողությունը սոցիալիստական սեփականության պահպանության նկատմամբ։ Այդ աշխատանքի գլխավոր ուղղությունը հափշտակությունը բացառող պայմանների ստեղծումն է, հանրային բարիքի կորստի ճանապարհների փակումը։ Մինչդեռ ստուգումների ընթացքում հավելագրումների բազմաթիվ փաստեր են հայտնաբերվում օբյեկտների գործարկման, արտադրանքի թողարկման և իրացման պլանների կատարման վերաբերյալ հաշվետվություններում։ Մենք գտնում ենք, որ ժողովրդական վերահսկիչների համամիութենական խորհրդակցությունում մեր հասցեին ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ ընկ. Ա. Շկոլնիկովի քննադատությունը իրավացի է։ Նա նշեց, որ «Կոմիտեների և խմբերի մի մասը, բախվելով պետությանը խաբելու փաստերին, ներողամտություն է դրսևորում մեղավոր անձանց հանդեպ։ Նրանք չեն օգտագործում օրենքով իրենց տրված իրավունքը խախտումների դեմ մղվող պայքարում,

այդ հարցերը սրությամբ չեն դնում ղեկավար մարմինների առջև, դրանց չեն տալիս լայն հրապարակայնություն»։

Երկրի տնտեսական և սոցիալական հետագա զարգացման գործում չափազանց մեծ է գյուղատնտեսության դերը։ Մեր հանրապետությունում տնտեսության այդ առաջատար ճյուղը զարգանում է դինամիկ և կայուն կերպով։ 1981—1984 թթ. գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալի միջին տարեկան աճի տեմպերը գերազանցում են հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները։ Սակայն գաղտնիք չէ, որ էկոնոմիկայի ագրարային սեկտորում դեռևս կան ոչ քիչ թերություններ ու նեղ տեղեր։ Դրանց վերացմանն է ուղղում իր ջանքերը գյուղական ժողովրդական վերահսկիչների 31 հազարանոց ջոկատը։

Գյուղատնտեսության մեջ մեր խնդիրները բխում են Հայաստանի կոմկուսի 1984 թ. նոյեմբերյան պլենումի որոշումներից։ Կկամենայի գյուղական ժողովրդական վերահսկիչների ուշադրությունը հրավիրել դրանցից մի քանիսի վրա։ Ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեները և կոլտնտեսությունների ու սովխոզների խմբերը պետք է անմիջականորեն հսկողության տակ պահեն մելիորացված հողերի օգտագործումը։ Դա ՀԿԿ Կենտկոմի հանձնարարությունն է մեզ։ Բանն այն է, որ ջրովի հողերի օգտագործման ասպարեզում դեռևս կան թերություններ։ Այսպես, 1980 թ. գործարկվեց Ջողազի ջրամբարը՝ Նոյեմբերյանի և Իջևանի շրջանների ոռոգման համակարգով, մինչդեռ այդ տարածությունները օգտագործվում են ոչ բավարար արդյունավետությամբ։ 1984 թ. զանազան պատճառներով այդ հողերի 30 տոկոսը չի ոռոգվել։

Ժողովրդական վերահսկողության շրջանային, առաջին հերթին Նոյեմբերյանի, Իջևանի, Սիսիանի, Գորիսի և այլ կոմիտեների պարտքն է՝ սահմանել ավելի գործուն հսկողություն ոռոգման համակարգի, մելիորացված հողերի օգտագործման նկատմամբ։ Կոմիտեները և խմբերը պետք է հատուկ ուշադրություն նվիրեն ոռոգման ջրի ռացիոնալ օգտագործմանը։

Մեր հանրապետության պայմաններում վճռական նշանակություն ունի հողի յուրաքանչյուր հեկտարի արդյունավետ օգտագործումը։ Ժողովրդական վերահսկողության մարմինների ստուգումները վկայում են, որ կան հանրային հողերի անօրինական օգտագործման փաստեր Մասիսի, Հոկտեմբերյանի, Բաղրամյանի և այլ շրջաններում։ Մասիսի շրջանում, օրինակ, նախկին մի երկաթուղային ընտանիքով ապօրինի օգտագործել է 19 հազար քմ հողատարածություն։ Հաճախակի են դարձել տնամերձ հողամասերի անօրինական ընդլայնման, դրա համար իրավունք չունեցող անձանց հողեր հատկացնելու դեպքերը։ Այդ հարցերը չպետք է վրիպեն գյուղական ժողովրդական վերահսկիչների սուր աչքից։

Համամիութենական խորհրդակցությունում ժողովրդական վերահսկիչների առջև դրվեցին մի շարք այլ բարդ խնդիրներ։ Արտադրության ավելացման, տեսականու ընդլայնման և ժողովրդական սպառման ապրանքների որակի բարձրացման վերաբերյալ կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կատարման հարցերը պետք է կարևոր տեղ գրավեն բոլոր կոմիտեների և խմբերի պրակտիկ գործունեության մեջ։ Ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակով կուսակցության առաջադրած խնդիրները պահանջում են արմատապես բարելավել հսկողության կազմակերպումը առևտրի, հասարակական սննդի և կենցաղային սպասարկման բնագավառներում։ Ժողովրդական վերահսկիչի լուրջ հսկողությունն են պահանջում նաև սոցիալական կյանքի այնպիսի բնագավառներ, ինչպես առողջապահությունը, կուլտուրան և կրթությունը։

Ժողովրդական վերահսկողության մարմինների գործունեության հիմնական ուղղություններից մեկը աշխատավորների առաջարկությունների, դիմումների և բողոքների քննարկման ժամանակ պաշտոնատար անձանց կողմից սովետական օրենքների պահանջների կատարման նկատմամբ հսկողության իրականացումն է։



Այսպիսիք են Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության մարմինների խնդիրները, որոնք բխում են ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտկոմի հետհամագումարյան պլենումների, Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի և նրան հաջորդած պլենումների որոշումներից։ Որպեսզի հաջողությամբ լուծվեն այդ խնդիրները, հարկավոր է էապես բարձրացնել կոմիտեների, խմբերի ու կետերի աշխատանքի մակարդակը, հաստատակամորեն կատարելագործել ժողովրդական վերահսկողության բոլոր օղակների գործունեության ոճն ու մեթոդները։

Ժողովրդական վերահսկողության մարմինների աշխատանքի արդյունավետությունը որոշակի չափով պայմանավորված է նրանով, թե աշխատավորական կոլեկտիվներում ինչպես են գործում խմբերն ու կետերը, իրենք՝ վերահսկիչները, թերությունները վերացնելու համար մղվող պայքարում ինչպիսի դիրք են բռնում՝ ակտիվ, թե պասսիվ։ Մեր շատ խմբեր դրսևորում են նախաձեռնություն և սկզբունքայնություն իրենց աշխատանքում, խելամտորեն են օգտվում օրենքով իրենց տրված իրավունքից։ Նրանք գործնական օգնություն են ցույց տալիս կուսկազմակերպություններին՝ կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների իրականացման գործում։ Այդպես են վարվում «Երևանշին», «Ալմաստ», «Հրազդանմեքենա», Լենինականի գուլպանասկեղենի արտադրամիավորումների, Կիրովականի պոլիմերային սոսինձների գիտահետազոտական ինստիտուտի, Փոքր Վեդիի գյուղտովետի, էջմիածնի Վ. Ի. Լենինի անվան սովխոզի ժողովրդական վերահսկողության խմբերը։

Սակայն դեռևս կան ժողովրդական վերահսկողության շատ խմբեր, որոնք չեն արդարացնում իրենց դերը, աշխատում են պասսիվորեն, ազդեցություն չեն գործում կոլեկտիվի գործերի վրա։ Նրանց աչքի առջև կատարվում են կարգապահության խախտումներ, խոտան աշխատանքի և բացասական այլ երևույթների տեղիք են տրվում։ Այստեղ մեղքն առաջին հերթին ընկնում է ժողովրդական վերահսկողության քաղաքային ու շրջանային կոմիտեների նախագահների վրա, որոնք չեն նպատակամղում և հսկում խմբերի գործունեությունը, անհրաժեշտ ազդեցություն չեն գործում նրանց ղեկավարների վրա։ Դրանում միաժամանակ կա և կուսկազմակերպության թերացումը։ Ով, եթե ոչ կուսբյուրոն, նրա քարտուղարը պետք է ուղղություն ցույց տան խմբերի աշխատանքին, օգնեն նրանց նախագահներին։

Կուսկազմակերպություններում գործում են ադմինիստրացիայի տնտեսական գործունեությունը վերահսկող հանձնաժողովներ։ Նրանց խնդիրները հաճախ համընկնում են ժողովրդական վերահսկողության խմբերի խնդիրներին։ Նպատակահարմար կլիներ, եթե կուսկազմակերպությունը կոորդինացներ վերահսկողության այդ երկու բջիջների աշխատանքը։

Ժողովրդական վերահսկողության համակարգում կարևոր տեղ են գրավում քաղաքային, շրջանային և արտադրական կոմիտեները։ ՀԿԿ Կենտկոմի ղեկավարությամբ, կուսակցության քաղկոմների և շրջկոմների հետ միասին, մենք վերջին տարիներին զգալի աշխատանք ենք կատարել այդ կոմիտեների ղեկավարության ամրապնդման, նրանց գործունեության կատարելագործման համար։ Եվ հարկ է նշել, որ շատ կոմիտեների գործունեության արդյունավետությունը զգալիորեն բարելավվել է։

Միևնույն ժամանակ առանձին կոմիտեների աշխատանքի մակարդակը չի համապատասխանում կատարման հսկողության ուժեղացման վերաբերյալ կուսակցության այսօրվա պահանջներին։ Մի շարք կոմիտեներ չեն կենտրոնացնում ուշադրությունը իրենց ռեգիոնի զարգացման հրատապ պրոբլեմների լուծման վրա, հաճախ ուժերն ուղղում են երկրորդական, մասնակի բնույթ կրող ստուգումներին։ Առանձին կոմիտեների ստուգումները լինում են ոչ խոր, չեն բացահայտում թերությունները և դրանց պատճառները և, հետևաբար, ազդեցություն չեն գործում ստուգված օբյեկտների գործերի վիճակի վրա։ Աշխատանքի այդպիսի ոճը չի նպաստում հսկողության ներգործունության բարձրացմանը։

Կոմիտեները պետք է ուժեղացնեն ժողովրդական վերահսկողության խըմ-

բերի հետ տարվող աշխատանքը, օգնեն խմբերի նախագահներին, ուղղություն տան նրանց գործունեությանը։ Ժողովրդական վերահսկողության քաղաքային և շրջանային կոմիտեների աշխատանքը պետք է գնահատվի ոչ միայն նրանով, թե ինչ են անում նրանք իրենց ուժերով, այլև առաջին հերթին նրանով, թե որքանով են գործունակ բոլոր խմբերը ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և հիմնարկություններում։

Կոմիտեներն ունեն արտահաստիքային մեծ ակտիվ։ Նրանց թիվը հասնում է ավելի քան 3.700 մարդու։ Դա, ըստ էության, նրանց ապարատն է, և կատարման ստուգման հետագա ուժեղացումը մեծապես պայմանավորված է այդ ապարատի ակտիվ աշխատանքով։

Հատուկ կարևորության խնդիր է ընդունված որոշումների կատարման հսկողությունը։ Մի շարք կոմիտեներ անբավարար ուշադրություն են նվիրում աշխատանքի այդ կարևոր տեղամասին։ Դա իջեցնում է հսկողության արդյունավետությունը, վարկաբեկում ժողովրդական վերահսկողության մարմիններին։ Մինչդեռ կոմիտեները պետք է ուժեղացնեն սեփական որոշումների կատարման ստուգման աշխատանքը, որը հսկողության արդյունավետության բարձրացման կարևոր միջոցներից մեկն է։

Լուրջ բաց է և այն, որ մի շարք կոմիտեներ թերությունները բացահայտելուց հետո դրանց համար մեղավոր անձանց հանդեպ դրսևորում են հանդուրժողականություն և լիբերալիզմ։

Կուսակցության դիրեկտիվների, սովետական օրենքների, կառավարության հետագա ընդլայնման անհրաժեշտությունը։ Այդ պահանջը լիովին վերաչափով պայմանավորված է նրանով, թե ժողովրդական վերահսկողության մարմինները ինչպես են փոխգործակցում վերահսկող մյուս հասարակական մարմինների հետ։ Եվ հարկ է առավելագույնս խրախուսել ժողովրդական վերահսկողության կոմիտեների և կուսակցական հանձնաժողովների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, օրինապահպան մարմինների համատեղ ստուգումների անցկացումը։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1985 թ.) պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը նշեց կուսակցական, սովետական, պետական և հասարակական կազմակերպությունների աշխատանքի հրապարակայնության հետագա ընդլայնման անհրաժեշտությունը Այդ պահանջը լիովին վերաբերում է նաև մեզ։ Կոմիտեները, խմբերը պետք է օգտագործեն մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, պատի թերթերը, ժողովրդական վերահսկողության վահանակները, ինֆորմացիոն թերթիկները՝ ժողովրդական վերահսկիչների կատարած աշխատանքի մասին արտադրական կոլեկտիվներին իրազեկ պահելու համար։ Անշուշտ, դա կարող է ունենալ դաստիարակչական և պրոֆիլակտիկ մեծ նշանակություն։

Ժողովրդական վերահսկիչ լինելը, ինչպես ասվում է «ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին» օրենքում, մեծ պատիվ և պատվավոր պարտականություն է։ Հետևաբար, յուրաքանչյուր վերահսկիչ իր ակտիվ գործունեությամբ պետք է ամենուրեք արդարացնի իրեն ցույց տրված վստահությունը, լինի խստապահանջ և սկզբունքային, պաշտպանի պետական և հասարակական շահերը, ցուցաբերի բարձր գիտակցականություն, կազմակերպվածություն և կարգապահություն։ Ժողովրդական վերահսկողության քաղաքային և շրջանային կոմիտեների պարտքն է իրենց ակտիվիստների մեջ զարգացնել հենց այդ հատկանիշները, նրանց ողջ ուժերը նպատակամղել կուսակցության և կառավարության որոշումների ու դիրեկտիվների կատարմանը։

Կուսակցությունը, ողջ երկիրը համակողմանիորեն նախապատրաստվում են արժանավայել գործերով դիմավորելու ՍՄԿԿ XXVII համագումարը։ Հանրապետության ժողովրդական վերահսկիչները, ՀԿԿ Կենտկոմի, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, ամեն ինչ կանեն վերահսկողության արդյունավետության բարձրացման վերաբերյալ կուսակցության պահանջներն անշեղորեն կատարելու համար։ Նրանք իրենց ակտիվ գործունեությամբ արժանի ավանդ կներդնեն հանրապետության առջև ծառացած տնտեսական և սոցիալական կարևորագույն խնդիրները լուծելու գործում։

---

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ ԸՍՏ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ

**Մ. ՎԱՍԻԼՅԱՆ**
տնտեսական գիտությունների թեկնածու
**Մ. ԱՋԱՐՅԱՆ**

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ մեխանիզմի կատարելագործման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման և առավել բարձր վերջնական արդյունքների հասնելու գործում կարևոր դեր ունի աշխատանքի վարձատրության կատարելագործումը։

Աշխատանքի վարձատրությունը՝ որպես նյութական բարիքների բաշխման միջոց, անմիջականորեն ներազդում է հասարակական արտադրության վրա, ուստի և աշխատավորների եկամուտների աճը, համապատասխանաբար նաև սպառման բարելավումը, սերտորեն փոխկապակցված է նրանց աշխատանքի արդյունքների հետ։

Հասուն սոցիալիզմի պայմաններում, որին բնորոշ են հասարակական արտադրության մասշտաբների ընդլայնումը, ազգային եկամտի մեծացումը, էկոնոմիկայի փոխադրումը զարգացման ինտենսիվ ուղու վրա, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, որակավորված աշխատանքի կիրառման կտրուկ աճը, կարևորվում են աշխատանքի վարձատրության և նյութական խթանման եղանակների կատարելագործման խնդիրը, առավել սերտ կապի ստեղծումը նյութական խթանների և տնտեսական գործունեության արդյունքների միջև։

Նշված պրոբլեմում գլխավորը վարձատրության և աշխատանքի արդյունքների փոխկապակցվածությունն է ինչպես միավորումների, այնպես էլ առանձին արտադրական ստորաբաժանումների մակարդակով։ Կոլեկտիվի և նրա առանձին անդամների աշխատանքի արդյունքների ու վարձատրության կապն իրականացվում է աշխատավարձի ֆոնդի, ինչպես նաև խրախուսման ֆոնդերի ձևավորման և բաշխման հիման վրա։ Աշխատավարձի ֆոնդի ձևավորումը պետք է կատարվի ձեռնարկության արտադրական գործունեության արդյունքների հաշվառմամբ, այն բանի հիման վրա, թե որքանով են ռացիոնալ օգտագործվում արտադրառեսուրսները, ինչպիսին է տվյալ ձեռնարկությունում արտադրության արդյունավետությունը։

Աշխատավարձի տնտհաշվարկային առումը՝ այն որպես տնտհաշվարկային խթանման գործիք կիրառելու սկզբունքները և մեթոդիկան դեռևս անբավարար են մշակված տնտեսագիտական գրականության մեջ։

Ավելին, հաճախ անտեսելով աշխատավարձի՝ որպես կարևորագույն տնտհաշվարկային կատեգորիաներից մեկի դերը, շատ տնտեսագետներ շեշտը դնում են հատկապես տնտեսական խթանման ֆոնդերի հետազոտության վրա։

Այսպես, տեսության մեջ և տնտեսավարման պրակտիկայում երկար ժամանակ գերիշխում էր այն տեսակետը, ըստ որի լարված պլանային առաջադրանքների ստանձնման ու արտադրության արդյունավետության բարձրացման գործում կոլեկտիվների ռեալ շահագրգռվածությունը կարող է ապահովվել տնտեսական խթանման ֆոնդերի կազմավորման և օգտագործման համակարգը կատարելագործելու հիման վրա։ Մինչդեռ իններորդ և տասներորդ հնգամյակներում տնտեսական խթանման ֆոնդերի գործողության մեջ ի հայտ եկան մի շարք թերություններ։ Դրանք հիմնականում դրսևորվում են նրանում, որ նշված ֆոնդերի կազմավորման նորմատիվները կտրված են հնգամյա պլանի մշակման պրոցեսից և անկայուն են։ Այդ հանգամանքը, բնականաբար, թուլացնում էր տվյալ ֆոնդերի խթանիչ ներգործությունը։ Ավելին, տնտեսական խթանման ֆոնդերի սահմանված չափերը ռեալ կերպով չեն ազդում արտադրական օղակների գործունեության վրա։ Այդ պատճառով արտադրամիավորումների և ձեռնարկությունների ղեկավարների մեծ մասը չի ձգտում լիովին երևան հանել արտադրության արդյունավետության բարձրացման ներքին ռեզերվները, որպեսզի դրանով իսկ ձեռք բերի նյութական խրախուսման ֆոնդի մի շոշափելի աճ, քանի որ այդ ֆոնդն ըստ աշխատանքի վարձատրության ընդհանուր ֆոնդի մի աննշան մասն է կազմում։ Մինչդեռ մատակարարող ձեռնարկությունների կողմից պայմանագրային պարտավորությունների հնարավոր խախտումը, արտադրական կարողությունների գործարկման ուշացումը սպառնում են ձախողել լարված պլանային առաջադրանքների կատարումը՝ այստեղից բխող բոլոր բացասական հետևանքներով հանդերձ։ Ավելին, լարված առաջադրանքների ստանձնումը կարող է հիմք ծառայել հաջորդ պլանային ժամանակաշրջանում այդպիսի ձեռնարկություններին ոչ ռեալ և բարձր պլաններ իջեցնելու համար։

Ներկայումս դժվար է առարկել այն տեսակետը, ըստ որի արտադրական կոլեկտիվների ռեալ շահագրգռվածությունն արտադրության արդյունավետության բարձրացման, ներարտադրական ռեզերվների հայտնաբերման և լարված պլանային առաջադրանքների ստանձնման գործում հնարավոր է միայն այդ օղակների տնտեսական գործունեության վերջնական արդյունքների հետ աշխատավարձի ֆոնդի երկարատև ու կայուն փոխկապակցման հիման վրա։ Դա բացատրվում է նրանով, որ աշխատավարձը նյութական բարիքների բաշխման գերակշռող ձևն է։

Երկրի ժողովրդական տնտեսության մեջ բանվոր-ծառայողների աշխատավարձի ֆոնդը, 1940 թ. համեմատությամբ, 1981 թ. ավելացել է 17,5 անգամ, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 25 անգամ։ Աշխատավարձի դերն ու նշանակությունը զգալիորեն բարձր է նաև բանվորների ու ծառայողների ընտանեկան բյուջեի կառուցվածքում։ Ներկայումս աշխատավարձին բաժին է ընկնում նրանց բոլոր եկամուտների ավելի քան 70 տոկոսը։

Մասնագետների գերակշռող մասը գտնում է, որ արտադրության արդյունավետության բարձրացման գործում աշխատողների նյութական շահագրգռվածությունը մեծացնելու նպատակով անհրաժեշտ է առաջին հերթին ուժեղացնել հիմնական վարձատրության խթանիչ դերը և անմիջական կապ հաստատել դրա ու տնտեսական գործունեության վերջնական արդյունքների միջև։ Տվյալ պրոբլեմի լուծումը կանխորոշվում է առաջին հերթին աշխատավարձի ֆոնդի պլանավորման և դրա փաստացի մեծության որոշման կարգի կատարելագործմամբ։

Ներկայումս սոցիալիստական երկրներում կիրառվում են արտադրության վերջնական արդյունքների հետ վարձատրության կապն ապահովող և դրա արդյունավետության բարձրացումը խթանող տարբեր մեթոդներ։ Մեր երկրում կիրառվում է աշխատավարձի պլանավորման նորմատիվային մեթոդը։ Դեռևս ութերորդ հնգամյակի տարիներին աշխատավարձի պլանավորման այս մեթոդը փորձնական կարգով օգտագործվել է արդյունաբերական առանձին ձեռնարկություններում։ Իններորդ և տասներորդ հնգամյակներում դրանց շրջանակն զգալիորեն ընդլայնվեց և ընդգրկեց երկրի արդյունաբերության մի շարք ճյուղեր (սարքաշինություն, քիմիական մեքենաշինություն, ծանր մեքենաշինություն և այլն), ինչպես նաև մի շարք հանրապետական արդյունաբերական մինիստրություններ։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 12-ի՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին որոշմամբ խնդիր դրվեց աշխատավարձի ֆոնդը կազմավորելիս ելակետ ընդունել արտադրության ծավալը (նորմատիվային զուտ արտադրանքը), արտադրանքի մեկ ռուբլու դիմաց աշխատավարձի երկարաժամկետ նորմատիվների կիրառման հիման վրա ուժեղացնել յուրաքանչյուր աշխատողի և ամբողջ կոլեկտիվի աշխատավարձի կախումը արտադրամիավորումների և ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականության աճից և աշխատանքի վերջնական արդյունքների բարելավումից։

Ընթացիկ հնգամյակի առաջին տարիներին կուտակված փորձը վկայում է, որ աշխատավարձի պլանավորման նորմատիվային մեթոդի հետևողական կիրառումը էականորեն բարձրացնում է արտադրական կոլեկտիվների նյութական շահագրգռվածությունը ներարտադրական ռեզերվների հայտնաբերման և օգտագործման ասպարեզում։

Աշխատավարձի պլանավորման նորմատիվային մեթոդի գործնական կիրառման շնորհիվ ի հայտ եկան նաև մի շարք խնդիրներ, որոնց լուծումն անհրաժեշտ է տնտեսական գործունեության վերջնական արդյունքների նըկատմամբ այդ մեթոդի խթանիչ դերի բարձրացման համար։ Դա առաջին հերթին վերաբերում է աշխատավարձի պլանավորման տվյալ մեթոդի կիրառման հիմնական սկզբունքներից մեկին՝ նորմատիվների կայունության պահպանմանը։ Բանն այն է, որ հենց նորմատիվների կայունության մեջ է դըրսևորվում նշված մեթոդի խթանիչ ներգործությունը։ Մինչդեռ այժմ պլանավորման այդ մեթոդը կիրառող բոլոր մինիստրություններում դեռևս չի հաջողվել ապահովել նորմատիվների կայունությունը։

Պլանային առաջադրանքների անկայունությունը նշանակում է, որ փաստորեն շարունակվում է ձեռք բերված մակարդակի հիման վրա նորմատիվների ամենամյա հաստատման սխալ պրակտիկան։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մի շարք ձեռնարկություններում հնգամյա պլաններից արտադրանքի փաստացի թողարկման շեղումները զգալի են, և դրանց չափերը, որպես կանոն, մեծանում են հնգամյակի վերջում։ Այդպիսի պայմաններում անհրաժեշտություն է առաջանում վերանայել նորմատիվները, քանի որ հակառակ դեպքում ձեռնարկությունների մի մասն անարդարացիորեն ստանում է աշխատավարձի մեծ ֆոնդեր, իսկ մյուս մասը՝ փոքր ֆոնդեր։ Հետևաբար, տեղի է ունենում վերադարձ դեպի «ըստ ձեռք բերված մակարդակի» պլանավորման մեթոդին։

Աշխատավարձի ֆոնդի նորմատիվային պլանավորման հետագա զարգացումն արգելակող պատճառները վերացնելու նպատակով անհրաժեշտ է բարձրացնել հնգամյա պլանների գիտական հիմնավորվածությունը։ Հնգամյա պլանի, որպես երկրի տնտեսական և սոցիալական զարգացման պլանավորման գլխավոր ձևի, դերի մեծացումը նշանակում է, որ լայն հնարավորություններ կան հաշվի առնելու այն բոլոր գործոնները, որոնք ազդում են արտադրության զարգացման ընթացքի վրա։ Աշխատավարձի ծախսի նորմանները պետք է սահմանվեն, հաշվի առնելով հնգամյակում պլանավորված բոլոր միջոցառումները և ելնեն տեխնիկապես հիմնավորված աշխատանքային ծախսումներից։ Այդ պահանջները կատարելու դեպքում արտադրության ծավալների փոփոխությունները, որոնք կատարվում են տարեկան պլանների ճըշգրտման ժամանակ, աննշան կլինեն։ Ուստի կվերանա նաև նորմանների ամենամյա վերանայման անհրաժեշտությունը։

Պլանների գիտական հիմնավորվածության աստիճանը կապված է նորմատիվների հաշվարկման կարգի և տարեկան պլանավորման ժամանակ դրանց օգտագործման մեթոդական հիմնավորվածության հետ։ Մեկ ռուբլուն ընկնող աշխատավարձի երկարատև նորմաների որոշման կարգի մասին մեթոդական ցուցումներով սահմանված են նորմաների հաշվարկման հիմնական սկզբունքները[1]։ Դրանք են՝ հնգամյա պլանային առաջադրանքների հետ նորմաների սերտ կապի ապահովումը, տեխնիկապես հիմնավորված պրոգրեսիվ նորմաների կիրառումը, աշխատանքի արտադրողականության այնպիսի ցուցանիշի օգտագործումը, որն առավելագույն չափով արտացոլի աշխատանքային ծախսումների փոփոխությունները, և վերջին՝ աշխատավարձի աճի նկատմամբ աշխատանքի արտադրողականության առավել արագ աճի ապահովումը։

Ինչպես տեսնում ենք, սահմանված սկզբունքները բավական համոզիչ են, սակայն դրանց լրիվ իրականացումը հաշվարկման մեթոդիկայով չի ապահովվում։ Այստեղ հարցը վերաբերում է արտադրության ծավալի և աշխատավարձի չափերի փոխկապակցման եղանակին։ Մեթոդական ցուցումներով դրանց միջև սահմանված է ուղիղ համեմատական կապ, այսինքն՝ մեկ ռուբլի արտադրանքին ընկնող աշխատավարձի նորմատիվը որոշվում է ելնելով արդյունաբերական-արտադրական անձնակազմի վարձատրության համար պլանավորված ծախսերից (առանց նյութական խրախուսման ֆոնդերից կատարվող վճարումների)։ Այդ նույն փոխկապակցությունը պահպանվում է նաև հնգամյակի ընթացքում պլանները ճշգրտելիս։ Միաժամանակ, աշխատավարձի աճի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականության առավել արագ աճի ապահովման նպատակով մեթոդական ցուցումներով նախատեսված են աշխատավարձի պլանային ֆոնդի վերահաշվարկման ճյուղային գործակիցներ։

Արտադրանքի ծավալի աճի վրա տարբեր ներգործություն են ունենում աշխատողների առանձին կատեգորիաների քանակն ու նրանց աշխատանքային ծախսումները։ Եթե արտադրանքի ծավալի աճը ուղիղ համեմատական է բանվորների թվաքանակին և նրանց աշխատանքային ծախսումներին, ապա այն հարաբերականորեն կայուն է ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների, սպասարկող անձնակազմի, օժանդակ բանվորների, պահակային ծառայության նկատմամբ։ Հետևաբար, ուղիղ համեմատական կապ պետք է սահմանել ոչ թե արդյունաբերական-արտադրական աշխատողների անձնակազմի աշխատավարձի ֆոնդի և արտադրանքի ծավալի, այլ վերջինիս ու աշխատողների այն կատեգորիաների աշխատավարձի ֆոնդի միջև, որոնցով անմիջականորեն պայմանավորված է արտադրության ծավալի աճը։

Այդ տեսակետը պաշտպանում են մի շարք անտեսագետներ, որոնք առաջարկում են նորմատիվների հաշվարկի համար ելակետ ընդունվող աշխատավարձի ֆոնդը բաժանել երկու մասի՝ պայմանական-կայուն և փոփոխական մասերի։ Առաջինը հիմք է ծառայում հնգամյա պլանում աշխատավարձի ֆոնդի կայուն մասի որոշման համար, իսկ երկրորդի հիման վրա հաշվարկվում են վարձատրության ուղղակի ծախսերի նորմատիվները արտադրանքի ծավալի միավորի նկատմամբ։

Իր հիմքում ունենալով սկզբունքորեն ճիշտ մոտեցում, վերոհիշյալ մեթոդիկան չի վերացնում նշված թերությունները։ Այսպես, պայմանականորեն հաստատուն աշխատավարձի ֆոնդի բաժինն արդյունաբերական-արտադրական անձնակազմի աշխատավարձի ֆոնդի մեջ կազմում է ընդամենը 30 տոկոս, պահպանվում են նաև նորմատիվների անկայունությունը, ձեռք բերված մակարդակի հիման վրա պլանավորման պրակտիկան, աշխատավարձի ֆոնդի աճի և արտադրանքի ծավալի միջև սահմանված հարաբերակցության խախտումը, վերջապես, դրա խթանիչ ներգործության թուլացումը։

Աշխատավարձի ֆոնդի կազմավորման նորմատիվների օգտագործումը պահանջում է յուրաքանչյուր արտադրամիավորման համար մշակել անհա-

[1] Совершенствование хозяйственного механизма. Сб. документов. М., «Правда» 1982, стр. 147.



տական նորմաներ՝ բաշխելով ըստ հնգամյակի տարիների։ Այսպիսով, աշխատանքի վարձատրության և դրա արդյունքների անմիջական կապը կարելի է ապահովել արտադրության ծավալի հավելաճի նկատմամբ աշխատավարձի ֆոնդի փոփոխուն մասի հավելաճի որոշման նորմատիվների օգտագործման միջոցով։ Այդ դեպքում հնարավորություն կընձեռվի օգտագործելու միատեսակ ճյուղային նորմատիվներ, ապահովելու արտադրանքի ծավալի ու աշխատավարձի ֆոնդի միջև անհրաժեշտ հարաբերակցություն, նորմաների կայունություն, հետևաբար, ուժեղացնելու հիմնական աշխատավարձի խթանիչ ազդեցությունը արտադրության արդյունավետության բարձրացման վրա։

Հայտնի է, որ աշխատողների հիմնական աշխատավարձը կազմավորվում է բանվորների վարձատրության տարիֆային համակարգի և ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների պաշտոնական ռոճիկների սխեմաների հիման վրա, որոնք սահմանվում են պետության կողմից։ Տարիֆային համակարգը վարձատրության այն տարրն է, որի հիման վրա որոշվում է աշխատավարձի մակարդակը՝ ըստ աշխատողների որակավորման, աշխատանքի բովանդակության և պայմանների։ Քանի որ գիտատեխնիկական առաջընթացին զուգընթաց փոփոխվում են աշխատանքի բովանդակությունն ու պայմանները, ապա անհրաժեշտ է անընդհատ կատարելագործել նաև աշխատանքի վարձատրության տարիֆային համակարգը։

Տարիֆային համակարգի կատարելագործումը, մեր կարծիքով, պետք է իրականացվի երկու ուղղությամբ. առաջին՝ միևնույն բարդությամբ ու ինտենսիվությամբ կատարվող աշխատանքի վարձատրության հավասարեցման և երկրորդ՝ աշխատանքի բարդության և ինտենսիվության տարբերությունների մեծացման համեմատ աշխատավարձի շերտավորման ուժեղացման միջոցով։

Մեր երկրում այդ երկու ուղղությամբ էլ զգալի աշխատանք է տարվել։ Նյութական և ոչ նյութական արտադրության ճյուղերում աշխատանքի վարձատրության նոր պայմանների ներդրման շնորհիվ կիրառվող տարիֆային ցանցերի քանակը կրճատվել է 10-ից մինչև 3։ Միաժամանակ, ինժեներատեխնիկական աշխատողների այնպիսի մասսայական պաշտոնների համար, ինչպիսիք են ինժեներները, տեխնիկները և վարպետները, սահմանված են միայն երեք տարբեր չափերի ռոճիկներ՝ արդյունաբերության տարբեր ճյուղերի համար։ Ներկայումս բանվորների աշխատանքի վարձատրությունը կատարվում է նախկինում օգտագործվող 400-ի փոխարեն ընդամենը 71 տարբեր դրույքների հիման վրա։

Աշխատանքի վերջնական արդյունքների բարելավման գործում տարիֆային համակարգի խթանիչ ֆունկցիան դրսևորվում է. նախ նրանում, որ այն նյութապես շահագրգռում է աշխատողներին՝ բարձրացնելու իրենց որակավորման աստիճանը։ Երկրորդ, եթե ըստ տարիֆների վարձատրությունը հիմնավորված է, ապա ուժեղանում է աշխատավարձի այն տարրերի ներգործությունը, որոնք անմիջականորեն կապված են աշխատանքի որակավորման և քանակական արդյունքների խթանման հետ։ Երրորդ, տարիֆների խթանիչ ֆունկցիան դրսևորվում է աշխատավարձի տարբեր հավելավճարներում, որոնք ըստ էության տարիֆային բնույթ են կրում։ Դրանք սահմանվում են համեմատաբար երկար ժամանակաշրջանի համար և փաստորեն հանդես են գալիս որպես տարիֆային դրույքների ու պաշտոնական ռոճիկների ավելի բարձր չափեր։

Տարիֆային համակարգի խթանիչ ֆունկցիայի գործողությունը հիմնված է աշխատանքի նորմավորման կատարելագործման վրա։ Այն ընդգրկում էր աշխատողների տարբեր կատեգորիաների աշխատանքի պրոգրեսիվ նորմաների ներդրումը, դրանք սահմանելու եղանակների ու մեթոդների կատարելագործումը, տեխնիկապես հիմնավորված նորմաների արմատավորումն ապահովող նյութական ու բարոյական խրախուսման տարբեր միջոցների կիրառումը, նորմաների ժամանակին վերանայումը և այլն։

Ներկայումս ժողովրդական տնտեսության մեջ գործում են մեծ թվով և յուրաքանչյուր տարի անընդհատ ավելացող աշխատանքային ծախսումների

նորմաներ։ Արդեն մշակված են միջճյուղային և ճյուղային նորմաների ու նորմատիվների ավելի քան երեք հազար ժողովածուներ։ Բավական է նշել, որ միայն հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրամիավորումներում 1982 թ. գործում էին մոտ 225 հազար աշխատանքային նորմաներ, որոնցից մեկ տարվա ընթացքում վերանայվել են 38 հազարը, կամ նորմաների ընդհանուր թվաքանակի 17 տոկոսը։

Զգալիորեն փոփոխվել է նաև աշխատանքի նորմաների բնույթը։ Այսպես, եթե 1975 թ. «Հայէլեկտրաապարատ» արտադրամիավորումում գործում էին 22.126 նորմաներ, որոնցից միայն 28,1 տոկոսն էր տեխնիկապես հիմնավորված, ապա 1982 թ. նորմաների ընդհանուր թիվը կրճատվեց և հասավ 11.180, իսկ տեխնիկապես հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը բարձրացավ մինչև 50,4 տոկոսի։ «Հայքիմմեքենա» արտադրամիավորումում տեխնիկապես հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը 1975 թ. 23,5 տոկոսից՝ 1982 թ. հասել է 64,7 տոկոսի։ Նման պատկեր է դիտվում նաև հանրապետության մյուս արտադրամիավորումներում։

Ելնելով այսօրվա պահանջներից, դա չի կարելի բավարար համարել։ Արտադրության ժամանակակից տեխնիկական բարձր մակարդակն օբյեկտիվորեն թելադրում է օգտագործել միայն տեխնիկապես հիմնավորված նորմաներ։ Այդ խնդրի կենսագործման ուղին առաջին հերթին հրաժարվելն է փորձնավիճակագրական նորմաների կիրառումից, որոնց տեսակարար կշիռը ՀՍՍՀ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ կազմում է 23,5 տոկոս։ Հենց դրանով է բացատրվում արտադրամիավորումներում ու ձեռնարկություններում նկատվող արտադրանքի նորմաների գերակատարման բարձր աստիճանը։ Այսպես, 1982 թ. հանրապետության էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրամիավորումներում արտադրանքի նորմաների կատարման միջին տոկոսը գործավարձով աշխատող բանվորների մոտ կազմել է 117,1-ից մինչև 125 (ըստ որում, նորմաները թերակատարողների թիվը չնչին մաս է կազմում՝ 0,4—2,1 տոկոս)։ Մինչև 105 տոկոս գերակատարողները կազմում են 11,2 տոկոս, 105-ից մինչև 120 տոկոս գերակատարողները՝ 47,2, իսկ 120 տոկոսից բարձր գերակատարողները՝ 46,8 տոկոս։ Հետևաբար, բանվորների կեսը արտադրանքի թողարկման նորմաները գերակատարում է ավելի քան 120 տոկոսով, որը վկայում է սահմանված նորմաների գիտական հիմնավորվածության բացակայության մասին։ Դա հաստատվում է նաև այն հանգամանքով, որ արտադրանքի թողարկման նորմաների կատարման բարձր մակարդակը հաճախ զուգակցվում է աշխատանքի արտադրողականության պլանի թերակատարմամբ կամ չնչին գերակատարմամբ։ Օրինակ, «Հայէլեկտրաշարժիչ» և «Հայքիմմեքենա» արտադրամիավորումները, որոնց արտադրանքի թողարկման նորմաների կատարման միջին մակարդակը կազմել էր, համապատասխանաբար՝ 124,5 և 125 տոկոս, աշխատանքի արտադրողականության պլանը կատարվել էր՝ 99,7 և 100,6 տոկոսով։

Ելքը արտադրական կարողությունների համակողմանի հաշվառման և արտադրության ու աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի արմատավորման միջոցով աշխատանքի նորմավորման որակի և դրա գիտական ու տեխնիկական հիմնավորվածության մակարդակի բարձրացումն է, որը կապահովի նորմաների գերակատարման համապատասխանությունը աշխատանքի արտադրողականության մակարդակին։

Աշխատողների հիմնական վարձատրության խթանիչ դերի բարձրացման գործում ներկայումս կարևորվում է աշխատանքի վարձատրության համակարգի այնպիսի էական էլեմենտի գործնական կիրառումը, ինչպիսին է տարիֆային դրույքներին և պաշտոնական ռոճիկներին հավելավճարներ կատարելու եղանակը։ Հավելավճարների համակարգի կիրառումը խթանում են կատարվող աշխատանքի ծավալի և աշխատանքի արտադրողականության աճը, առավելագույն վերջնական արդյունքների ստացումը։

Մեր երկրում բանվոր-ծառայողների տարիֆային դրույքների և պաշտոնական ռոճիկների նկատմամբ աշխատավարձի հավելավճարների օգտա-



գործման զգալի փորձ է կուտակված։ Այդ համակարգի կիրառման եղանակները հայտնի են «Շչոկինյան տնտեսափորձ», «Տնտեսական կապալ ըստ Զլոբինի մեթոդի», «Ոչ-կարգագրային համակարգ», «Վարձատրություն վերջնական արտադրանքի համար», «Տարեկան և հնգամյա անհատական պլաններ» նախաձեռնություններով։

Անհրաժեշտ է նկատել, որ աշխատավարձի հավելավճարների համակարգն ունի երկակի բնույթ. այն մի կողմից հանդես է գալիս որպես տարիֆային համակարգի մի մաս, այսինքն՝ հիմնական աշխատավարձի կազմավորման տարր, իսկ մյուս կողմից՝ տարիֆային համակարգից տարբերվում է իր ճկունությամբ և ըստ իր օգտագործման եղանակի հանդես է գալիս որպես լրացուցիչ վարձատրություն, այսինքն՝ որպես արտադրության արդյունավետության բարձրացման նյութական խթան։ Վարձատրության հավելավճարների համակարգի օգտագործումը, ուժեղացնելով աշխատավարձի կապը աշխատանքային ծախսումների հետ, միաժամանակ այն որոշակի կախվածության մեջ է դնում նաև արտադրության վերջնական արդյունքներից։

Արտադրության վերջնական բարձր արդյունքների ձեռքբերման ասպարեզում վարձատրության խթանիչ դերի բարձրացման համար ներկայումս մեծ նշանակություն է ստանում նաև աշխատանքի կազմակերպման և խթանման կոլեկտիվ ձևերի զարգացումը։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1979 թ. հուլիսի 12-ի՝ տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին որոշմամբ սահմանվեց, որ աշխատանքի կազմակերպման և վարձատրության բրիգադային ձևը պետք է դառնա հիմնականը։ Նոր եղանակի արմատավորումը մեծապես ազդում է աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքի ռացիոնալ կազմակերպման, աշխատաժամանակի կորուստների նվազեցման, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների խնայողաբար օգտագործման վրա։ Ավելին, բարձրանում է աշխատողների նյութական շահագրգռվածությունն ու պատասխանատվությունը աշխատանքի վերջնական բարձր արդյունքների հասնելու համար։

Աշխատանքի վարձատրության բրիգադային ձևն իրականացվում է միասնական կարգագրով, կոմպլեքսայնորեն։

Արտադրական բրիգադները սովորաբար բաժանվում են մասնագիտացված և բրիգադային ձևերի։ Առաջինները կազմվում են միևնույն մասնագիտության բանվորներից՝ կոմպլեքսային բնույթի աշխատանքներ կատարելու համար, ընդգրկելով արտադրության ամբողջ ցիկլը։ Այն դեպքում, երբ ողջ ցիկլը չի տեղավորվում մի հերթափոխի շրջանակներում, ստեղծվում են կոմպլեքսային բրիգադներ, որոնք ընդգրկում են բոլոր հերթափոխների բանվորներին

Կոմպլեքսային բրիգադներին բնորոշ են աշխատանքի բարձր արդյունավետությունը, աշխատողների պատասխանատվության մեծացումը աշխատանքի որակի նկատմամբ։ Այստեղ պարզեցված է աշխատանքի պլանավորման և վարձատրության համակարգը, որի համար ելակետ է վերջնական կոնկրետ արդյունքը, ի վերջո, նախադրյալներ են ստեղծվում հարակից մասնագիտությունների յուրացման համար, որը հնարավորություն է ընձեռում ռացիոնալ օգտագործելու կոլեկտիվի ընդհանուր աշխատաժամանակը։

Մեր հանրապետության արդյունաբերության մեջ արտադրական բրիգադներում ընդգրկված է բանվորների ընդհանուր թվաքանակի 56,4 տոկոսը։ Ընդ որում բրիգադների ընդհանուր թվի 37,3 տոկոսը կոմպլեքսային են, իսկ 62,7 տոկոսը՝ մասնագիտացված։ Տնտհաշվարկային սկզբունքով աշխատող բրիգադների տեսակարար կշիռը զգալիորեն ցածր է։ Այդուհանդերձ, առանձին արդյունաբերական ճյուղերում դրանց տեսակարար կշիռը համեմատաբար բարձր է, օրինակ, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ այն կազմում է 26,1, իսկ քիմիական մեքենաշինության մեջ՝ 41,2 տոկոս։ Ընդ որում հանրապետության արդյունաբերության մեջ գործող բրիգադների ընդհանուր թվաքանակի միայն 64 տոկոսն է կիրառում միասնական կարգագրով վար-

ձատրության ձևը, իսկ դրանց $^{2}/_{3}$-ը վարձատրվում է ըստ վերջնական արդյունքների։

Աշխատանքի կազմակերպման և վարձատրության բրիգադային ձևի կիրառման փորձի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն ունի մի շարք թերություններ։ Եթե ամբողջությամբ վերցրած էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ արտադրական բրիգադներում ընդգրկված են ճյուղի բոլոր բանվորների 55,6 տոկոսը, ապա այդ ցուցանիշը խիստ տատանվում է առանձին միավորումներում. օրինակ, «Անդրկովկասկաբել» արտադրամիավորումում այն կազմում է 25,6, իսկ «Հայէլեկտրասարքավորում» միավորումում՝ 67,2 տոկոս։

Աշխատանքի կազմակերպման և վարձատրության բրիգադային ձևը համեմատաբար արդյունավետ է կիրառվում «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում, որտեղ բանվորների 98,4 տոկոսն ընդգրկված է 496 արտադրական բրիգադներում։ Այստեղ վարձատրությունն իրականացվում է միասնական կարգագրով և ըստ վերջնական արդյունքի։ Սակայն «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում ևս վերջնական արդյունքների ստացման գործում աշխատողների անհատական և կոլեկտիվ շահագրգռվածության կապը թույլ է։

Արտադրամիավորումների մի մասում պատշաճ ուշադրություն չի դարձվում այն նախապատրաստական աշխատանքներին, որոնք անհրաժեշտ են արտադրական բրիգադների ռացիոնալ կազմակերպման և արդյունավետ գործունեության համար։ Այդ պատճառով արտադրական բրիգադների կազմակերպումը հաճախ ձևական բնույթ է կրում։

Բրիգադային մեթոդի կիրառումը պահանջում է նաև ըստ ամենայնի կատարելագործել դրանց գործունեության պլանավորման և նյութական խրախուսման համակարգը։ Մինչդեռ գործնականում այդ խնդիրն անուշադրության է մատնվում։ Արտադրական բրիգադների գերակշռող մասը փոքր է աշխատողների թվաքանակով։ Այսպես, հանրապետության արդյունաբերության մեջ գործող բրիգադների ընդհանուր թվաքանակում մինչև 5 աշխատողից բաղկացած բրիգադները կազմում են 21,1 տոկոս, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ՝ 17,1, հաստոցաշինության մեջ՝ 41,6 տոկոս։

Աշխատավարձի ֆոնդի պլանավորման կատարելագործումը, վարձատրության խթանիչ դերի հետագա բարձրացումը և աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևի լայն կիրառումը կնպաստեն արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր խնդրի լուծմանը։

---

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ՕՂԱԿԸ

**Ս. ԱՄԻՐՅԱՆ**

Կ ՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ առաջնահերթ խնդիրներից մեկը սոցիալիստական հասարակարգի կառուցման բոլոր փուլերում եղել և մնում է գաղափարախոսական աշխատանքի ու սոցիալիստական շինարարության պրակտիկայի սերտ միասնության ապահովումը։ Այս կարևոր գործոնին չափազանց մեծ նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը։ «Ամբողջ պրոպագանդան,— ուսուցանում էր պրոլետարիատի մեծ առաջնորդը,— պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա։ Դա մեր ամենագլխավոր խնդիրն է...» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 487)։

Ժամանակակից պայմաններում այդ խնդրի նշանակությունն ավելի է կարևորվում։ Դա պայմանավորված է սովետական երկրի սոցիալ-տնտեսական զարգացման ներկա աստիճանով։ Զարգացած սոցիալիզմը նոր, ավելի բարդ ու պատասխանատու խնդիրներ է առաջադրում գաղափարախոսական հիմնարկություններին, որոնց լուծման բանալին այսօր, ինչպես և միշտ, տալիս է կուսակցությունը։ Էկոնոմիկան անկարելի է որակապես նոր մակարդակի բարձրացնել առանց ստեղծելու դրա համար անհրաժեշտ սոցիալական և գաղափարախոսական նախադրյալներ։ Հավասարապես անկարելի է լուծել սոցիալիստական գիտակցության զարգացման հասունացած պրոբլեմները առանց հենվելու տնտեսական ու սոցիալական քաղաքականության ամուր հիմքի վրա։ Այս դրույթը ուղենիշային նշանակություն ունի գաղափարախոսական ճակատի բոլոր հիմնարկությունների, այդ թվում նաև կուլտուր-լուսավորական հաստատությունների համար։

Հանրահայտ է, որ գաղափարախոսական աշխատանքում կուսակցական կազմակերպությունները մշտապես հենվում են կուլտուրայի օջախների՝ ակումբների, կուլտուրայի տների, գրադարանների, թանգարանների վրա, նրանց գործունեությունը նպատակամղում աշխատավորների կոմունիստական դաստիարակության կարևորագույն խնդրի կոմպլեքսային լուծմանը։

Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ հետամուտ լինելով այդ գլխավոր նպատակին՝ կուլտուր-լուսավորական հիմնարկությունները միջնորդավորված կերպով իրենց մասնակցությունն են բերում նաև արտադրական խնդիրների լուծմանը։ Հասկանալի է՝ կուլտուրայի օջախների սոցիալական դերը դրանով չի սահմանափակվում, ավելի ստույգ, այն չպետք է հասկանալ միայն այդ շրջանակներում։ Իրականում դրանց գործունեության շառավիղները շատ ավելի լայն են, ընդգրկում են նաև այնպիսի խնդիրներ, որոնք, վերաբերելով նոր մարդու դաստիարակության ոլորտներին, անմիջականորեն առնչվում են սոցիալիստական շինարարության պրակտիկ խնդիրների լուծմանը։ Այդպիսիներից են, օրինակ, սոցիալիստական մրցության ծավալմանը, հրապարակայնությանը, ընթացքին, արդյունքներին, գիտատեխնիկական առաջընթացին, առաջավոր փորձի տարածմանը և նման բազմաթիվ այլ հարցերի նվիրված աշխատանքները։

Հանրապետության կուլտուր-լուսավորական հիմնարկությունների զգալի մասը, հիրավի, դարձել է կուսակցական կազմակերպությունների, սովետական և տնտեսա-

կան մարմինների հուսալի ու կայուն հենարանը ժողովրդատնտեսական խնդիրների հաջող իրականացման գործում: Կուլտուրայի օջախների գործունեության առավել սերտ տնտեսական-արտադրական առնչություններն ակնբախորեն դրսևորվում են, մանավանդ, մեր ժամանակներում: Եվ դա հասկանալի է: Հասուն սոցիալիզմի շրջանին հատուկ սոցիալիստական շինարարության վիթխարի տեմպերը չեն կարող իրենց շրջանակների մեջ չառնել նաև գաղափարախոսական հիմնարկությունները, որոնց թվում և կուլտուրայի օջախները: Իսկ դրանք այժմ ներկայանում են ընդարձակ մի ցանցով՝ զգալիորեն ամրապնդված նյութատեխնիկական բազայով: Հանրապետությունում այժմ գործում են ավելի քան 1.200 ակումբներ, 1.343 գրադարաններ և շուրջ 50 պետական թանգարաններ:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, կոմունիստական շինարարության հարաճուն տեմպերին զուգընթաց, կոմունիստական կուսակցությունն ուժեղացնում էր նաև ուշադրությունը կուլտուր-լուսավորական հիմնարկությունների նկատմամբ: Ամենատարբեր մակարդակներով կուլտուր-լուսավորական հարցերի կուսակցական քննարկումների ժամանակ, որպես կանոն, կուլտուրայի օջախներին առաջադրվել են նաև աշխատավորների, մանավանդ երիտասարդության աշխատանքային դաստիարակության, գաղափարական գործունեությունը տնտեսական շինարարության հետ սերտորեն զուգորդելու կոնկրետ խնդիրներ:

Աշխատանքային դաստիարակության, արտադրության հետ կուլտուր-լուսավորական աշխատանքի կապի հետագա ամրապնդման մասին հանգամանալից խոսվել է հատկապես ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1975 թվականի ապրիլի 18-ի որոշման մեջ, որն ամբողջովին նվիրված էր կուլտուր-լուսավորական հիմնարկների կուսակցական ղեկավարման հարցերին*: Որպես առաջնահերթ խնդիր ՀԿԿ քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կազմակերպություններին, Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությանը և ՀԱՄԽ-ին հանձնարարվել է լայնորեն օգտագործել ակումբների, գրադարանների ու թանգարանների հնարավորությունները աշխատանքային դաստիարակության ոլորտում, հասնել այն բանին, որ կուլտուր-լուսավորական հիմնարկները իրենց գործունեությամբ նպաստեն սոցիալիստական մրցության հրապարակայնությանը, քաղաքական և կուլտուր-մասսայական աշխատանքների ծավալման միջոցով տարածեն արտադրության առաջավորների, սոցիալիստական աշխատանքի հերոսների, աշխատանքի վետերանների փորձը, կիրառեն գաղափարական աշխատանքի բազմազան ձևեր աշխատավորներին, հատկապես երիտասարդությանը, սոցիալիստական հայրենիքի հանդեպ բարձր պատասխանատվության ու պարտքի, սոցիալիստական օրինականության, աշխատանքային կարգապահությունը խախտողների և կոմունիստական բարոյականության այլ շեղումների նկատմամբ անհաշտ պայքարի ոգով դաստիարակելու համար:

Քննարկելով ՀԿԿ Կենտկոմի որոշումները՝ կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները, տեղի պայմաններից և պահանջներից ելնելով, ընդունել են համապատասխան որոշումներ, մշակել կոնկրետ միջոցառումներ, որոնց կենսագործումն ապահովել է կուլտուրայի օջախների գործուն մասնակցությունը ժողովրդատնտեսական պլանների հաջող կատարմանը: Ընդ որում, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, որքան ռեալ, գիտականորեն հիմնավորված են լինում մշակված աշխատանքային պլանները, որքան մոտիկից են կուսակցական կազմակերպությունները զբաղվում կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեությամբ, ապահովում որոշումների կատարման հսկողությունը, այնքան ավելի նշանակալից են լինում հաջողությունները:

Հանրապետության կուսակցական կազմակերպության մի շարք քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կազմակերպությունների գործունեությանը բնորոշ է կուլտուր-լուսավորական հիմնարկների ղեկավարման հենց այսպիսի ոճը: Կուլտուր-լուսավորական աշխատանքը նրանք համարում են պետական կարևորության գործ, էական ազդակ, որը նպաստում է արտադրական բարձր ցուցանիշների ապահովմանը, մարդկանց բազմակողմանի զարգացմանն ու դաստիարակությանը, արտադրական ձեռնարկություններում և տնտեսություններում բարոյական բարվոք մթնոլորտի ստեղծմանը:

* *ՄԼԻ Հայկական մասնաճյուղի կուսակցական արխիվ, ֆ. 1, ց. 111, գ. 86, թթ. 90—97։*



Կուսակցական և սովետական փաստաթղթերում, ՀԱՄԽ-ի նախագահության, Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրության կոլեգիայի որոշումներում բազմիցս նշվել է մարդկանց աշխատանքային դաստիարակության գործում Երևան, Լենինական, Կիրովական, Աբովյան քաղաքների, Ախուրյանի, Արտաշատի, Թալինի, Ղափանի և այլ շրջանների կուսկազմակերպությունների ու կուլտուրայի օջախների արդյունավետ աշխատանքը:

Արտադրական հարցերի լուծման գործում ձեռնարկությունների ադմինիստրացիային, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին իրենց ցույց տված ակտիվ օգնությամբ աչքի են ընկել մանավանդ բանվորական ակումբները:

Արդյունավետ աշխատանք է տանում բանվորների շրջանում, օրինակ, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կուլտուրայի պալատը: Այստեղ գործող կոմունիստական աշխատանքի 25 դպրոցներում սովորողների համար կուլտուրայի պալատը կազմակերպել էր «Կինոակումբ», որտեղ ցուցադրվել են արտադրության հետ առնչվող վավերագրական, ինչպես նաև գեղարվեստական ֆիլմեր: Կուլտուրայի պալատն անց է կացրել «Գիտե՞ս, արդյոք, էկոնոմիկան» թեմայով վիկտորինաներ, «Ձեռնարկության էկոնոմիկան և անհատի շահագրգռությունը» թեմատիկ կոնֆերանսներ, հարց ու պատասխանի երեկոներ: Կոմունիստական աշխատանքի դպրոցների համար կուլտուրայի պալատի գրադարանն ընտրում է անհրաժեշտ գրականություն, կազմում հանձնարարական ցուցակներ, հետևում սովորողների անհատական ընթերցանությանը, կազմակերպում «Բանվորական րոպեին՝ խիստ հաշվառում», «Խնայողությունը կոմունիստական հատկանիշ է» թեմաներով գրականության տեսություններ: Կուլտուրայի օջախի լավ աշխատանքը մեծապես պայմանավորված է «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կուսակցական կոմիտեի գործնական ղեկավարությամբ և օգնությամբ:

Հանրապետության գործարանների, ֆաբրիկաների, շինարարական և արդյունաբերական այլ կազմակերպությունների կուսակցական կոմիտեները բանվորական ակումբների ուշադրությունը բևեռում են արտադրական կոլեկտիվներում սոցիալիստական մրցության ծավալման, արտադրության առաջավորների, նորարարների, մրցության հաղթողների և աշխատանքային կոլեկտիվների փորձը, գիտատեխնիկական նվաճումները տարածելու, բանվորներին ու ծառայողներին աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու վրա:

Երևանի ալյումինի գործարանի կուլտուրայի պալատը ջանում է կուլտուր-մասսայական աշխատանքի յուրահատուկ միջոցներով ամեն կերպ աջակցել ձեռնարկության կուսակցական ու հասարակական կազմակերպությունների գործունեությանը, մրցության ծավալմանը: Այդ նպատակով այստեղ պարբերաբար կազմակերպվել են առաջավոր փորձի փոխանակման, սոցպարտավորությունների կատարման մասին զեկույց-երեկոներ, հանդիպումներ արտադրության վետերանների, շեֆ-դաստիարակների, գիտության ու տեխնիկայի ասպարեզի ճանաչված գործիչների հետ, հանգստի, թեմատիկ երեկոներ և այլ միջոցառումներ:

Գործարանի կուսակցական կոմիտեն իր հերթին վերահսկում է կուլտուրայի պալատի գործունեությունը, լսում պալատի կուսկազմակերպության, վարչության հաշվետվություններն ու ինֆորմացիաները, քննարկում և հաստատում ընթացիկ ու հեռանկարային աշխատանքային պլանները: Այս ամենն աշխատավորների դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցման լավ օրինակ կարող է լինել: Այսպես, օրինակ, հեռանկարային պլաններից մեկի արտադրական-տեխնիկական պրոպագանդայի բաժնում նախատեսված ամենատարբեր ձեռնարկումների թվում կային արտադրության առաջավորների փորձի փոխանակման, աշխատանքային փառքի, ըստ մասնագիտությունների բանվորական երեկոներ, բանվորական գերդաստանների և աշխատանքի վետերանների մեծարումներ, «Մենք աշխատանքով ենք փառաբանում հայրենիքը», «Ապագան ծնվում է այսօր» և թեմատիկ այլ միջոցառումներ:

«Առավել չափով օգնել արտադրությանը»— այս նշանաբանով է աշխատում հանրապետության բանվորական ակումբների մեծ մասը, դրանց հետ և Երևանի երկա-

թաղայիններին կուլտուրայի պալատը: Հետաքրքրական են անցնում կուլտուրայի պալատի՝ երկաթուղայինների արտադրական հարցերին նվիրված թեմատիկ երեկոները: Ահա դրանցից մի քանիսը՝ «Հնգամյակը ինձ, ես՝ հնգամյակին», «Տարվա առաջավորները», «Վաղն աշխատենք ավելի լավ, քան այսօր», «Փառք արտադրության առաջավորներին», «Ամենագլխավորը՝ գնացքների երթևեկության անվտանգությունն է»... Կուլտուրայի պալատը գաղափարական միջոցներով արտադրությանն օգնելու աշխատանքի մեծ փորձ ունի: Դեռևս 1973 թվականին, մասնակցելով «Կուլտուրայի պալատը՝ արտադրությանը» նշանաբանով անցկացվող համամիութենական ստուգատեսին, ակումբը հաղթող է ճանաչվել և ստացել առաջին կարգի դիպլոմ:

Արտադրության, սոցիալիստական մրցության ընթացքի, արտադրության առաջավորների աշխատանքի փորձի, գիտատեխնիկական առաջընթացի լայն պրոպագանդման հարցերը մշտապես գտնվում են նաև Լենինականի երկաթուղայինների՝ Ե. Սևյանի անվան կուլտուրայի պալատի տեսադաշտում: Բոլոր կարևոր միջոցառումների նախապատրաստման ու անցկացման ժամանակ կուլտուրայի պալատին անմիջական ղեկավարություն և կոնկրետ օգնություն է ցույց տվել երկաթուղային հանգույցի կուսկազմակերպությունը: Պատահական չէ, որ ՀԿԿ Լենինականի քաղաքային կազմակերպության կոնֆերանսներում, քաղկոմի պլենումներում, որպես դրական օրինակ, հաճախ է նշվում երկաթուղայինների կուլտուրայի պալատի անունը:

Հանրապետության բազմաթիվ կուլտուրայի օջախների թվում Լենինականի կուլտուր-լուսավորական հիմնարկները լայն գործունեություն ծավալեցին մանավանդ ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստման և անցկացման, ինչպես նաև հետհամագումարյան օրերին, երբ մասսայականացվում էին համագումարի որոշումները: Համագումարի նյութերի պրոպագանդումը մշտապես զուգակցվում է արտադրական կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների հետ, գաղափարական աշխատանքի բոլոր լծակներն օգտագործվում են մարդկանց աշխատանքային դաստիարակության նպատակով: Խրախուսելի աշխատանք է կատարում այս ուղղությամբ Լենինականի № 1 կուլտուրայի տունը: Նրա վարչությունը սերտորեն համագործակցում է միկրոշրջանի տարածքում գտնվող արտադրական ձեռնարկությունների, դպրոցների և այլ կոլեկտիվների հետ:

Աշխատանքային դաստիարակության նպատակով հետաքրքրական միջոցառումներ են կազմակերպել Ղափանի պղնձահանքային կոմբինատի կուսկոմիտեն և կուլտուրայի պալատի վարչությունը: Նրանց ջանքերով «Օրվա հերոսը բանվորն է» նշանաբանով միջոցառումներ են կազմակերպվել կուլտուրայի պալատում: Հանդիսավոր ու տոնական մթնոլորտում տեղի ունեցող այդպիսի երեկոներին անպայման մասնակցում են կուսկոմիտեի անդամները, հաճախ հանդես գալիս զեկուցումներով:

Ագարակի՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատում կազմակերպվող միջոցառումներին նույնպես ագիտատորներից, քաղինֆորմատորներից, պրոպագանդիստներից բացի հանդես են գալիս կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ղեկավար աշխատողներն ու արտադրության հրամանատարները: Այսպես, աշխատանքի վետերանների մեծարման երեկոյի մասնակիցների առջև «Հանքաշխարհի մարդիկ» զեկուցումով հանդես է եկել պղնձամոլիբդենային կոմբինատի դիրեկտոր, տեխնիկական գիտությունների թեկնածու Բ. Մկրտչյանը, իսկ «Աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակը լեռնահանքային ձեռնարկություններում» զրույցով՝ կոմբինատի բաց հանքի պետ Հ. Պողոսյանը:

Կուլտուրայի պալատի վարչության ուշադրության կենտրոնում լեռնագործների հանգստի, կուլտուրական սպասարկման հարցերի հետ մեկտեղ մշտապես հույժ կարևորվում է կուսակցության ու կառավարության որոշումների, առաջավոր փորձի, գիտության և տեխնիկայի նվաճումների պրոպագանդան: Պալատը սերտ կապեր է պահպանում Զանգեզուրի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի, Միության համանման ձեռնարկությունների կուլտուրայի օջախների հետ: Կազմակերպվում են փոխայցելություններ, փորձի փոխանակումներ:

Հանրապետությունում գործում են 36 շրջանային և 352 գյուղական կուլտուրայի տներ, 576 գյուղական ակումբներ: Մասսայական 1.343 գրադարաններից 977-ը գտնվում են գյուղական վայրերում: Կուսկազմակերպությունների ջանքերով գյուղական ակումբները, կուլտուրայի տներն ու գրադարաններն իրենց աշխատանքի ծանրության կենտրոնն ավելի ու ավելի են տեղափոխում անմիջականորեն դաշտերը, ֆերմաները, գյուղատնտեսական բրիգադները: Լայնորեն կիրառվում են աշխատանքի փորձված ձևերը, կյանքի ուղեգիր են ստանում նորերը:

Կենսագործելով ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1975 թ. ապրիլի 18-ի որոշումը, որում կոնկրետ հանձնարարականներ էին տրված նաև Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությանը, նրա կոլեգիան ու բաժինները ուժեղացրին կուլտուր-լուսավորական հիմնարկների ղեկավարությունը: Բերքահավաքի պատասխանատու օրերին մինիստրության ժողովրդական ստեղծագործության տան, մեթոդկաբինետի հատուկ բրիգադները, ինչպես նաև մինիստրության կուլտուր-լուսավորական հիմնարկների բաժնի աշխատողները լինում են շրջաններում, տեղում ծանոթանում կուլտուր-լուսավորական աշխատանքի դրվածքին, հարկ եղած դեպքում օգնում ժողովրդական դեպուտատների շրջգործկոմների կուլտուրայի բաժիններին կազմակերպական աշխատանքներում: Կատարված ուսումնասիրությունների արդյունքները հաճախ քննարկվել են մինիստրության կոլեգիայի նիստերում: Այդպիսի խմբեր եղան Գորիսի, Սիսիանի, Ղափանի, Ապարանի շրջաններում. նրանք կազմակերպեցին կուլտուր-լուսավորական հիմնարկների, գեղարվեստական ինքնագործունեության խմբերի ստեղծագործական մրցությունը՝ գյուղի աշխատավորների լավագույն սպասարկման համար: Իսկ Թումանյանի և Նոյեմբերյանի շրջաններում անցկացվեց ակումբային աշխատողների խորհրդակցություն, որի օրակարգում դրված էին գյուղատնտեսական արտադրությանը կուլտուր-լուսավորական աշխատանքի միջոցով օժանդակելու հարցերը: Եվ ապա այդ երկու շրջանների կուլտուր-լուսավորական հիմնարկների՝ բերքահավաքի ընթացքում կատարած աշխատանքների արդյունքները քննարկվեցին Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրության կոլեգիայում: Բացահայտված թերությունների վերացման նպատակով միջոցառումները օգնեցին աշխատավորների սպասարկման բարելավմանը ո՛չ միայն այդ երկու շրջաններում, այլև ընդհանրապես:

Հանրապետության կուլտուր-լուսավորական հիմնարկների միջև այդ տարիներին լայն թափ առած սոցիալիստական մրցությունում իրենց հաջողություններով հաճախ են աչքի ընկել Ախուրյանի, Աշտարակի, Հոկտեմբերյանի, Ծամշադինի և այլ շրջանների ակումբներն ու գրադարանները: Գերազանց աշխատանքի կուլտուրայի օջախներ դարձան Թալինի, Էջմիածնի, Ստեփանավանի շրջանային կուլտուրայի տները, Շամշադինի շրջանի Չինարիի, Սիսիանի շրջանի Բարձրավանի, Ախուրյանի շրջանի Ազատանի, Արտաշատի շրջանի Այգեզարդի գյուղական կուլտուրայի տները, Թալինի շրջանի Դավթաշենի, Մեղրիի շրջանի Շվանիձորի, Ազիզբեկովի շրջանի Գնդեվազի ակումբները:

Գյուղական ակումբներում և կուլտուրայի տներում, հաճախ նաև գրադարաններում, դիտողական ագիտացիայի, կուլտուր-մասսայական աշխատանքների ամենատարբեր միջոցներով արտացոլվում է սոցիալիստական մրցության, անասնապահական ֆերմաների, դաշտային աշխատանքների և բերքահավաքի ընթացքը: Այդ նպատակով տեղի են ունենում հանդիպումներ գյուղատնտեսական արտադրության առաջավորների հետ, ամփոփվում և տարածվում է նրանց աշխատանքային փորձը, կազմակերպվում են մրցող բրիգադների, կոլտնտեսությունների ու սովխոզների երեկոներ, լավագույն աշխատողների մեծարումներ, պարբերաբար լույս են ընծայվում ինֆորմացիոն լրատուներ:

Ակումբային և գրադարանային համակարգի գործունեության արդյունավետությունը բարձրացնելու նպատակով շատ շրջաններում կուսակցական կոմիտեների խորհրդով մրցություն է ծավալվում նաև հենց իրենց՝ կուլտուր-լուսավորական հիմնարկների միջև: Այդ առումով ուշագրավ է Արտաշատի շրջանի կուլտուրայի օջախների փորձը: Ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժինը պարբերաբար մրցանակներ էր սահմանում լավագույն թեմատիկ երեկոյի, բովանդակալից միջոցառման համար: Հետաքրքրական են անցել ավանդաբար կազմակերպվող «Մուրճ ու մանգաղ» նշանաբանով կուլտուրայի շաբաթները, գյուղական ակումբներում, կուլտուրայի պալատներում, գրադարաններում տեղի ունեցող արտա-

դրության առաջավորների մեծարումները, հանդիպումները, գեղարվեստական ինքնագործունեության համերգները, հողին և հողի աշխատավորներին նվիրված փառատոները: Շրջանի Բուրաստան, Մխչյան, Ն. Դվին, Ծաղկունք և մի շարք այլ գյուղերում պատրաստվել են շրջիկ պատի թերթեր, որոնցում պատմվում էր սոցիալիստական պարտավորությունների կատարման, աշխատանքի առաջավորների մասին:

Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության աճեղ բարձրացումը, կյանքի, տնտեսական խնդիրների հետ դրա կապի ամրապնդումը բնորոշ է նաև Թալինի շրջանային կուսակցական կազմակերպությանը, որի փորձը դեռ 70-ական թվականներից լայն ճանաչում գտավ հանրապետությունում: Աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության ասպարեզում՝ Թալինի կուսակցական կազմակերպության աշխատանքի դրական փորձը 1980 թվականին հավանության արժանացավ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում: Ընդունված որոշման մեջ նշված է, որ շրջանում ավելի լավ են սկսել օգտագործել քաղաքական ուսուցման և տնտեսական կրթության համակարգերի, դասախոսական պրոպագանդայի, քաղաքական-մասսայական աշխատանքի և կուլտուր-լուսավորական հիմնարկների հնարավորությունները, շեշտվում է նաև շատ ակումբների, կուլտուրայի տների, գրադարանների ակտիվ գործունեությունը: Բյուրոն նշում է, որ Թալինի շրջանային կուսակցական կազմակերպության գաղափարադաստիարակչական աշխատանքը մեծ չափով օգնել է շրջանի աշխատավորներին՝ հաջողությամբ լուծելու տնտեսական զարգացման խնդիրները:

Հանրահայտ է, որ կուլտուր-լուսավորական հիմնարկների կիրառած աշխատանքային դաստիարակության միջոցները խիստ տարբեր են. արդեն փորձված, ավանդական դարձածների հետ հաջողությամբ զուգակցվում են և նորերը: Այսպես, Հրազդանի շրջանի գյուղական վայրերում սովորական կուլտուրայի տների բազայի վրա 80-ական թվականների սկզբներին ստեղծվեցին յուրօրինակ ակումբներ, որոնց տեղական բնակիչները «Հացատուն», «Պանրատուն», «Կաթնատուն» անունն են տվել, նայած թե այս կամ այն մթերատեսակից հատկապես որի արտադրությամբ է հայտնի տվյալ գյուղը: Աշխատանքից հետո մարդիկ հավաքվում են այդտեղ մի բաժակ թեյի կամ սուրճի շուրջը, զրուցում, երաժշտություն ունկնդրում, լսում դասախոսություններ, մասնակցում ամենատարբեր միջոցառումների: Նման օջախներ դրանից ավելի վաղ ստեղծվել էին Աբովյանի շրջանի գյուղերում և կրում էին «Հանրօջախ» անունը: Ինչպես ցույց է տալիս կյանքը, դրանք ձգողական ուժ ունեն հատկապես երիտասարդության համար, և կուսկազմակերպությունները ճիշտ են վարվում՝ դրանց գործունեությունը մշտապես պահելով իրենց տեսադաշտում:

Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ լուրջ բնագծեր են նվաճել Ախուրյանի շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկները: Հայտնի է, որ մեր գաղափարախոսական ու դաստիարակչական ողջ գործունեության արդյունավետությունը չափվում է աշխատավորների արտադրական ու հասարակական-քաղաքական ակտիվությամբ: Անդրադառնալով այդ հարցին՝ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը շեշտել է, որ մասսաների վրա մեր պրոպագանդայի, գաղափարական ներգործության բոլոր միջոցների ազդեցության չափանիշը պետք է լինի աշխատանքի արդյունավետության և որակի, կազմակերպվածության ու կարգապահության, հնգամյա պլանի կատարման գործում ամեն մի աշխատողի, աշխատանքային ամեն մի կոլեկտիվի ռեալ ավանդի բարձրացումը:

Ախուրյանի աշխատավորների, այդ թվում նաև կուլտուր-լուսավորական աշխատողների հայրենանվեր գործերի շնորհիվ շրջանն այսօր զգալի նվաճումների է հասել գյուղատնտեսական արտադրության, մարդկանց աշխատանքային դաստիարակության ասպարեզում: Կարևոր տեղաշարժեր են կատարվել սոցիալ-տնտեսական, մշակութային բնագավառներում: Երիտասարդներից շատերը, որ նախկինում խույս էին տալիս անասնապահության մեջ աշխատելուց, այժմ սիրով են գնում ֆերմա: Տասնմեկերորդ հնգամյակի անցած չորս տարիների ընթացքում 150 կոմերիտականներ են աշխատանքի անցել ֆերմաներում, իսկ 1983—1984 թթ. 300-ից ավելի երիտասարդ մասնագետներ և որակյալ բանվորներ են աշխատանքի տեղավորվել շրջանում: Այստեղ կուսակցական կազմակերպություններն ամեն կերպ ձգտում են ապահովել տնտեսական, կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի



ների միասնությունը, որը, ինչպես ցույց է տալիս կյանքը, հանրային արտադրության ցանկացած բնագավառում արդյունավետության հասնելու հիմնական պայմանն է:

Սոցիալիստական շինարարության պրակտիկայում կուլտուրայի օջախների դերի բարձրացման, հանրապետության կուլտուր-լուսավորական հիմնարկների ընձեռած հնարավորությունների լիարժեք օգտագործման առումով ծրագրային նշանակություն ունի «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: Այդտեղ նշված է, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները հասել են գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի որոշակի բարելավման, գիտական մակարդակի և գործունեության բարձրացման, կյանքի և սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման հետ դրա կապի ամրապնդման: Որոշման մեջ միաժամանակ նշված է, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները դեռևս լիովին չեն հաղթահարել գաղափարախոսական աշխատանքի խզումը պրակտիկ խնդիրներից, սոցիալ-տնտեսական իրական պրոցեսներից և առաջադրված է կարևորագույն խնդիր. «Ամրապնդել դաստիարակչական աշխատանքի նյութական բազան, 1985 թվականին ավարտել շրջաններում և քաղաքներում կուլտուր-մարզական համալիրների ստեղծումը»: Հանրապետության 16 գյուղական վայրերում և 5 քաղաքներում կազմակերպվել ու արդեն գործում են կուլտուր-մարզական համալիրներ: Սակայն, ինչպես իրավացիորեն նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1985 թ. հունվարյան պլենումում, կուլտուր-լուսավորական աշխատանքներում դեռևս շարունակում են չափից շատ տարվել քանակական ցուցանիշներով, կիրառում են աշխատանքի հնացած ձևեր ու մեթոդներ:

Գաղափարախոսական, մասսայական-քաղաքական գործունեության բոլոր ոլորտների աշխատողների համար ուղենիշային են ընկեր Մ. Ս. Գորբաչովի խոսքերը, որ նա ասաց «Զարգացած սոցիալիզմի կատարելագործումը և կուսակցության գաղափարախոսական աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների լույսի ներքո» համամիութենական գիտագործնական կոնֆերանսում. «Այսօր անհրաժեշտ է գաղափարախոսական գործունեության երակազարկը վերստին բաղդատել նրա արդյունավետության բարձր չափանիշների հետ, երկրի ընդհանուր աշխատանքային ռիթմի հետ»:

# ԱՐԱՐՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

**Համամիութենական սոցիալիստական մրցությունում, ի թիվս հանրապետության առաջատար հիմնարկ-ձեռնարկությունների ու տնտեսությունների, հաղթող ճանաչվեց նաև Թալինի շրջանի Արագածի այգեգործական սովխոզի կոլեկտիվը: Բարձր բերքատվության և մթերատվության համար 1984 թվականի նրանց հաջող պայքարը պսակվեց մրցության բարձրագույն պարգևով՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Սկսած 1973 թվականից, տնտեսությունն արդեն երրորդ անգամ է արժանանում այդ պարգևին:**

Սովխոզի կոլեկտիվի համար 1985 թվականը նշանակալից տարի է: Լրանում է տնտեսության հիմնադրման երեք տասնամյակը: Քիչ է ասել՝ հիմնադրման... Ընդամենը երեք տասնամյակ առաջ Երևանից Լենինական տանող երկաթուղու ձախակողմյան ընդարձակ այս տարածությունն ամայի էր ու անշունչ: Մարդն ի՞նչ էր կորցրել ղռերում, որտեղ աճում էին միայն փուշն ու տատասկը: Հիմա այս նույն տարածքում աչք են շոյում խաղողի փարթամ այգիներն ու ծառաստանները, բարեբեր դաշտերը: Այսօրվա հզոր տեխնիկայի առկայության պայմաններում իսկ դժվար է պատկերացնել, թե ինչպե՞ս են ղռերը նահանջում (բնության չար կատակով այդպիսի քարաստաններ Թալինի շրջանում դեռևս շատ կան): Բայց 1950-ական թվականներին, երբ սկսվեց նորաստեղծ սովխոզին հատկացված հողերի յուրացումը, մարդիկ ավելի շատ ապավինում էին իրենց բազկի ուժին, սրտի ջերմությանն ու կորովին: Եվ այսպես՝ մետր առ մետր, հեկտար առ հեկտար: Հիմա տնտեսության միայն խաղողի ու պտղատու այգիներն զբաղեցնում են ավելի քան 920 հեկտար, որոնցում հաստատուն գրանցում են ստացել Արարատյան դաշտի խաղողի ամենաբազմազան սորտերը, խնձորենին, սալորենին, տանձենին: Մինչդեռ հնաբնակները վկայում են, որ այդ հողերում գազար ու բողկ աճեցնելու միտքն իսկ հանդուգն է թվացել:

Թալինի նորակառույց ջրանցքը շատ սրբագրումներ մտցրեց խամ ու խոպան հողերի ճակատագրում, բայց ջուրը՝ ջուր, նաև հող էր պետք, մշակելի հող: Իսկ այստեղ հսկայական տարածություններ պատված էին միայն ժայռաբեկորներով, որոնց տակ իրենց դարավոր քներն էին հաստատել օձերը:

...Ու եկան խանդավառ մարդկանց առաջին խմբերը, եկան հանրապետության տարբեր վայրերից, եկան մեկ հաստատ վճռականությամբ՝ շունչ ու կենդանություն պարգևել մեռյալ հողերին:

Առաջին իսկ օրերից այդ էնտուզիաստների հետ է եղել տնտեսության կազմակերպիչ Սարգիս Խանոյանը: Այն ժամանակ նա ընդամենը 34 տարեկան էր, բայց կյանքի փորձով արդեն հասուն մի այր:

Տոհմիկ հողագործի զավակ է, որի ծնողները, սակայն, դառն ճակատագրի բերումով տեսել էին գաղթի, աստանդական կյանքի ամենածանր դառնությունները: Իսկ երբ խաղաղ ու ապահով անկյուն էին գտել Արագածի լանջերին ծվարած փոքրիկ ոստանում, մտել էին գյուղի սոցիալիստական առօրյան կերտող մարդկանց շարքերը, արարել նոր կյանքի, վերածնված հայրենի երկրի համար: Հողի, հողագործի աշխատանքի նկատմամբ սերը ծնողներից փոխանցվեց զավակներին, որոնք մանկության տարիներից դարձան նրանց օգնականները:

Պայթեց պատերազմը, բոլոր պատերազմներից ամենադաժանն ու սարսափելին և սուսերգի 20-ամյա պատանին իր նման հարյուր հազարների հետ գնաց պաշտպանելու հողը հայրենի: Մաճին սովոր նրա ձեռքերը սովորեցին գործի դնել նաև հրանոթը: 1942-ին արդեն գործող բանակում էր: Հենց Մալգոբեկում, իր համար առաջին մեծ ճակատամարտից առաջ, նա գինվորագրվեց կոմունիստական կուսակցությանը: Մալգոբեկից մինչև Նովոռոսիյսկ ընկած ճանապարհին, որ Խանոյանն անցավ Թամանյան դիվիզիայի մարտիկների շարքերում, տեսավ թշնամու կրնկից խոցված ու տնքացող հայրենի հողը, տեսավ որբացած դաշտեր ու այգիներ, ու հողը սիրող նրա սիրտը մղկտաց ցավից... Ծանր վիրավորվեց Նովոռոսիյսկի մոտ ու ծանրացած հոգով հրաժեշտ տվեց իր ընկերներին, որոնք դեռ երկա՜ր-երկար ճանապարհ պիտի կտրեին մինչև թշնամու որջը:

Բայց կռիվը Սարգիս Խանոյանի համար ավարտված չէր: Թիկունքում նրան սպասվում էին ոչ պակաս դժվարին պայքարի օրեր: Ռազմաճակատին հաց էր հարկավոր, պարեն էր հարկավոր: Եվ վիրավոր ձեռքով նա հողի, քարի հետ կռիվ էր տալիս:

Պատերազմն ավարտվեց: Խանոյանն աշխատանքին զուգընթաց շարունակեց ուսումը, ավարտեց նաև մանկավարժական ինստիտուտը, բայց իր համար այլ էր հողի հմայքը: Եվ երբ նրան առաջարկեցին դիրեկտորի պաշտոնը ղռերի վրա հիմնադրված սովխոզում, նա անվարան տվեց իր համաձայնությունը: Պետք էր ստեղծել գործին նվիրված, գործը հասկացող մարդկանցից կազմակերպված ամուր կոլեկտիվ, որը ուժ և կորով ունենար՝ հաղթահարելու դժվարությունները, խանդավառվելու ապագայի հեռանկարով, ստեղծելու առաջնակարգ գյուղատնտեսական արտադրություն: Այդ դժվարին ճակատամարտում ևս հաղթանակը լիովին ապահովվեց: Վկայությունը սոցիալիստական աշխատանքի հերոսի ոսկե աստղն է, որով հայրենիքը հատուցել է Սարգիս Խանոյանի վաստակը: Նա եղել է ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր, Հայաստանի կոմկուսի ութ համագումարների պատգամավոր, բազմիցս ընտրվել է տեղական սովետների դեպուտատ, ժողովրդական վերահսկողության հանրապետական կոմիտեի անդամ է: Այդ բոլոր պատիվները նա անկեղծորեն վերագրում է այն մարդկանց, որոնք առաջին իսկ օրից ուս-ուսի տված զորավիգ են եղել նորաստեղծ տնտեսությանը, տոկացել են դժվարությունների առաջ, վայելել առաջին հաջողությունների, նաև բարձունքներ նվաճելու բերկրանքը: Նրանցից 25-ը ևս արժանացել է ՍՍՀՄ շքանշանների ու մեդալների:

Պատերազմի ու աշխատանքի վետերան Սարգիս Նազարեթյանը կոլեկտիվին անդամագրվել է տնտեսության կազմակերպման հենց առաջին օրերից: Եվ առաջինն էր, որ տնտեսությունում սահմանեց ռեկորդներ. խաղողի այգիների հեկտարից ստացավ 130, պտղատու այգիներից՝ 160 ցենտներ բերք: Հիմա դրանք նորմա են դարձել շատ այգեգործների համար, սակայն վետերանն առաջ է անցնում: Նա սիրով իր փորձը հաղորդում է երիտասարդ հերթափոխին, օգնում մյուսներին՝ յուրացնելու այգեգործի դժվարին մասնագիտության գաղտնիքները: Աշխատանքային ամուր կարգապահության, ագրոտեխնիկայի անթերի կիրառման շնորհիվ տարիների ընթացքում կայուն բարձր ցուցանիշների են հասել կոմունիստներ Լենիկ Հարթենյանը, Ռազմիկ Սահակյանը, Մերուժան Մադոյանը, Գագիկ Սահակյանը:

Բանավանի երկու միջնակարգ դպրոցներից ամեն տարի տնտեսությունում աշխատանքի են ներգրավվում մի քանի տասնյակ պատանիներ ու աղջիկներ և արտադրության վետերանների օգնությամբ կարճ ժամանակամիջոցում յուրացնում այգեգործի, դաշտավարի, մեխանիզատորի, նաև անասնապահի մասնագիտությունը, համալրում կոլեկտիվի շարքերը: Ահա շատերից մեկը՝ Գագիկ Գաբրիելյանը: Խանդավառ երիտասարդ է ու հմուտ այգեգործ: Արդեն աշխատում է եկող հնգամյակի հաշվին: Սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը մեծ վստահության է արժանացրել նրան՝ ընդունել ՍՄԿԿ շարքերը՝ որպես անդամության թեկնածու:

Երբ ամեն մեկն իր տեղում է, շահագրգիռ վերաբերմունք է ցուցաբերում ընդհանուր գործի նկատմամբ, ապա հաջողությունն ապահովված է: Դրանում արագածցիները մեկ անգամ չէ, որ համոզվել են: Այդպես էր և 1984 թվականին՝ հնգամյակի վճռական տարում: Թեև կլիմայական պայմաններն այնքան էլ նպաստավոր չէին, տնտեսությունը խաղողի վաճառքի պլանը գերակատարեց 820, իսկ պտղինը՝ 530 տոննայով: Ի դեպ, պտղատու այգիների հեկտարի բերքատվությամբ արագածցիները Թալինի շրջանի միջին ցուցանիշը գերազանցեցին կրկնակի չափով: Կոլեկտիվի ջանքերն ըստ արժանվույն գնահատվեցին. նրան շնորհվեց համամիութենական սոցիալիստական մրցության բարձրագույն պարգևը՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը

Նախագահը մի էքսկուրս է կատարում դեպի անցյալը: Հաշվապահական մատյաններ հարկավոր չեն, թվերն անգիր գիտե: Իններորդ հնգամյակում, օրինակ, սովխոզը պետությանն է վաճառել 10 հազար տոննա խաղող, հաջորդ հնգամյակում այդ ցուցանիշը հասցվել է 12 հազար, իսկ ընթացիկ հնգամյակի չորս տարիներին՝ մոտ 16 հազար տոննայի: Այդպիսի վերընթաց ուղիով է ներկայանում նաև պտղաբուծությունը. իննե-

րորդ հնգամյակում՝ 8.000 տոննա, տասներորդում՝ 8.400, վերջին չորս տարում՝ 8.903 տոննա: Եվ դա հեկտարների լիարժեքության, բերքատվության հետևողական բարձրացման շնորհիվ:

— Այսօրվա տվյալներով իսկ մեր տնտեսության այգեգործները հիրավի ռեկորդակիրներ են,— ասում է դիրեկտորը,— բայց դա մեզ չի գոհացնում: Մեր հողն ավելի զորեղ է, մենք պետք է կարողանանք նրանից ավելին ստանալ: Դա միայն իմ կարծիքը չէ: Այսօր կուսակցության պարենային ծրագիրը մեր առջև նոր խնդիրներ է դնում, և մենք պետք է դրանք պատվով լուծենք:

Ու դիրեկտորը ակամայից հիշում է այն տարիները, երբ այդ ղոերում առաջին քայլերն էին արվում այգեգործության զարգացման ճանապարհին: Հանրապետության լեռնային տարբեր շրջաններից եկած առաջին վերաբնակիչները, որոնցից էլ կազմվել էր տնտեսության կոլեկտիվը, ծառատունկի այբուբենն իսկ չգիտեին: Հիմա սովխոզը նախալեռնային գոտու օրինակելի այգեգործական տնտեսություններից է, որի փորձը ընդօրինակում են ուրիշները: Փորձն ու հմտությունը ձեռք են բերվել հողի հետ ամենօրյա պայքարում:

Այո՛, բնությունը արագածցիների նկատմամբ շռայլ չի եղել, բայց մարդկանց տքնաջան աշխատանքը, տարիների փորձով իմաստնացած միտքը ստիպել են բնությանը՝ շնորհներ պարգևել: Եվ այդ գործում նրանց հուսալի օգնականն է նաև գյուղատնտեսական տեխնիկան: Տնտեսությունը, որն իր գործունեությունն սկսել է երկու տրակտորով միայն, հիմա հավաքակայանում ունի 25 տրակտոր, 20 ավտոմեքենա: Հիմնականում մեքենայացված են այգեխարի, փխրեցման, պարարտացման, բուժման բոլոր աշխատանքները: Մեխանիզացիան հաստատուն մուտք է գործել նաև անասնապահական ֆերմա, թե՛ կթի, թե՛ կերակրման և մյուս աշխատանքներում անասնապահները լիովին ապավինում են արդիական մեքենասարքավորումներին:

Ի դեպ, այգեգործական տնտեսությանը պակաս եկամուտ չի բերում անասնապահությունը: Դա ևս դարձել է խիստ արդյունավետ ճյուղ: Չէ՞ որ սովխոզի մարդիկ նաև լավ դաշտավարներ են ու կարողանում են ցանքաշրջանառության ճիշտ կազմակերպմամբ բարձրացնել կերային կուլտուրաների բերքատվությունը: Իսկ որտեղ կերի առատություն, այնտեղ և՛ շատ կաթ, և՛ շատ միս: Բավական է ասել, որ ընթացիկ հնգամյակի անցած ժամանակաշրջանում մեկ կովի տարեկան միջին կաթնատվությունը կազմել է 2.730 **կգ**, նախորդ հնգամյակի միջին տարեկանի համեմատությամբ 200 **կգ**-ով ավելի: Իսկ կթվորուհիներ Հայաստան Եփրիկյանը և Վիկտորյա Կարապետյանը վաղուց անցել են 3 հազարի բնագիծը և հիմա պայքարում են յուրաքանչյուր կովից 3.500 **կգ** կաթ ստանալու համար: Անցած տարի պետությանը վաճառված տավարի միջին կենդանի քաշը հասել է 400 կգ-ի, ըզգալիորեն ավելի, քան 1981 թվականին:

Ասենք, որ հնգամյակը բոլոր ցուցանիշներով տնտեսությունը կատարել է չորս տարում: Պետությանը պլանից ավելի վաճառվել են մեծ քանակությամբ խաղող ու պտուղ, անասնապահական մթերքներ:

Արտադրության աճի շնորհիվ ավելացել են դրամական եկամուտները, տնտեսությունը բոլոր տարիները փակել է օգուտով: Միայն ընթացիկ հնգամյակի չորս տարիներին օգուտները կազմել են երեք միլիոն 51 հազար ռուբլի, նախատեսվածից 1,6 միլիոնով ավելի: Լավ աշխատանքը և բարեկեցիկ կյանքը, ինչպես ասում են, ուղիղ համեմատական են: Հենց միայն անցած տարվա օգուտների հաշվին արտադրության մարդկանց պարգև-հավելավճար կտրվի 460 հազար ռուբլու չափով, և տնտեսության աշխատողների միջին ամսական աշխատավարձը կկազմի 280 ռուբլի:

Հաջողությամբ է կատարվում գյուղի սոցիալական զարգացման ծրագիրը: Շահույթների հաշվին վերջին տարիներին կառուցվել են տասնյակ առանձնատներ, երկու միջնակարգ դպրոց՝ 1.700 աշակերտի համար, մշակույթի տուն՝ 400 տեղանոց դահլիճով, երաժշտական դպրոց, մանկապարտեզ, ճաշարան, բաղնիք: Բանվոր-ծառայողներն ակտիվորեն զարգացնում են նաև իրենց օժանդակ տնտեսությունները, ունեն տնամերձ այգիներ: Գրեթե չկա մի ընտանիք, որ անասուններ չպահի: Եվ այդ գործում նրանց մեծ աջակցություն է ցույց տալիս սովխոզի դիրեկցիան, որը նրանց տրամադրում է ինչպես մատղաշներ, այնպես էլ կեր, ինչպես ասում են, բոլոր մարզերում հաջողությունն ակներև է, և դա պայմանավորված է այն ակտիվ գործունեությամբ, որ ծավալում է սովխոզի ղեկավարությունը, սկզբնական կուսկազմակերպության հետ միասին՝ աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու, նրանց հասարակական-քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու նպատակով: Վերջին մեկ տարում կուսկազմակերպությունը քննարկել է հողի ռացիոնալ օգտագործման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, հումքի կորուստների կրճատման և բազմաթիվ այլ հարցեր, ձեռնարկել գործնական միջոցներ, որոնք մեծապես նպաստել են արտադրության արդյունավետության բարձրացմանը, տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարմանը:

— Ներկայումս,— ասում է Սարգիս Խանոյանը,— մենք վերանայում ենք մեր բոլոր բնագծերը: Մտադիր ենք հիմնովին վերակառուցել այգիները, դրանք ինտենսիվացնել այն հաշվով, որ խաղողի տարեկան միջին արտադրությունը հասցնենք 5.000, պտղինը՝ 3.000—3.500 տոննայի: Նախատեսում ենք խաղողագործությունը հիմնականում զարգացնել բարձր բերքատու և ցրտադիմացկուն սորտերի ներդրմամբ, իսկ դա եղանակային անակնկալներով լի մեր սարահարթի համար վճռական նշանակություն կունենա: Այդ ամենը մեզ համար ռեալ խնդիր է, եթե, իհարկե, հետևողական միջոցառումներ իրականացնենք ինչպես այգիների ինտենսիվացման, այնպես էլ հողերի լայն մելիորացման նպատակով: Երաշխավորված բերքի իրական հիմքը հողերի մելիորացիան է, ոռոգումը, ոռոգման ջրի արդյունավետ օգտագործումը: ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. հոկտեմբերյան պլենումը այդպիսի խնդիրներ դրեց մեր առջև:

Այո՛, վերջին 2—3 տարիներին այդ ասպարեզում քիչ աշխատանք չի կատարվել տնտեսությունում. մելիորացվել են 300 հեկտար հողեր: Սակայն անելիքներն էլ քիչ չեն: Առաջիկա երկու տարում նախատեսված է յուրացնել ևս 100 հեկտար նոր հողատարածություններ: Իսկ դրա համար հարկ կլինի ընդլայնել մելիորացման ճակատը: Գործնական միջոցներ կձեռնարկվեն մելիորացված հողերում բերքատվությունը բարձրացնելու, օրգանական և հանքային պարարտանյութերը ռացիոնալ օգտագործելու, ոռոգման ջրի օգտագործման նոր առաջավոր մեթոդներ կիրառելու համար:

— Մտադիր ենք զարգացնել նաև կաթնապրանքային ճյուղը,— ասում է տնտեսության դիրեկտորը,— նախատեսվում է մեկ փուրաժային կովի կաթնատվությունը այժմյան 2.700-ի փոխարեն հասցնել 3.500 կիլոգրամի, մթերման հանձնվող խոշոր եղջերավոր անասունի կենդանի քաշը՝ 450—470 կիլոգրամի: Զգալի միջոցներ կհատկացվեն գյուղի սոցիալական զարգացմանը: Արդեն եկող հնգամյակի առաջին տարիներին ավանում կկառուցվեն կենցաղի նոր տուն, բանվոր-ծառայողների համար՝ 20—25 բնակելի շենքեր, կանցկացվի բնական գազ, կասֆալտապատվեն փողոցները:

Տնտեսության մարդիկ, սակայն, ունեն նաև իրենց հոգսերը, որոնք մտորելու տեղիք են տալիս: Նրանց այսօր անհանգստացնում են արտադրության հետ առնչվող մի շարք պրոբլեմներ: Օրինակ, խաղողի տարեկան արտադրությունը 5.000 տոննայի և պտղինը՝ 3.000—3.500 տոննայի հասցնելը նրանց համար դեռ սահման է և դրան, անշուշտ, կհասնեն: Բայց այդ քանակի մթերքը ի՞նչ ճանապարհով պետք է իրացվի: Դա արդեն լուրջ պրոբլեմ է, որի լուծման մասին այժմվանից պետք է մտածել: Եթե խաղողի մթերման գործում դժվարություններ չեն լինի, Արտենիի գինու վերամշակման գործարանը հեռու չէ տնտեսությունից, ապա պտղի իրացման վիճակն այլ է: Ասենք, որ այսօր էլ այդ գործում գլխացավանքը շատ է: Տնտեսությունը ձմեռային երկարատև պահպանության տակ կարող է դնել միայն 200 տոննա պտուղ: Հապա մնացա՞ծը:

Այս առիթով դիրեկտորն իր մտահոգությունն է արտահայտում.

— Խնձորի բերքահավաքը մեզանում համընկնում է այն շրջանին, երբ առավել լայն պահանջարկ են վայելում խաղողը, դեղձը, բոստանային կուլտուրաները: Եվ մթերող կազմակերպությունները խուսափում են դժվարությամբ աճեցրած բերքը տնօրինել: Վիճակը որոշ չափով կբարելավվի, երբ մեզ մոտ կառուցենք հազար տոննանոց պահեստարան, որն արդեն նախագծվել է, բայց դա ևս հարցի վերջնական լուծում չէ: Այս խնդիրն արդեն պետք է մտահոգի ագրոարդյունաբերական կոմպլեքսի համապատասխան մարմիններին: Մեր մոտակա ծրագրերի մեջ են նաև կերախոհանոցի, հորթանոցի կառուցումը, ավտոպարկի արդիականացումը: Ցավոք, այստեղ ևս երբեմն դժվարությունների առաջ ենք կանգնում ինչպես աշխատանքի կազմակերպման, այնպես էլ շինանյութերի հայթայթման առումով: Ինչպես տեսնում եք, անելիքները քիչ չեն, և հոգսերն էլ պակաս չեն: Սակայն մեր տնտեսության մարդիկ, որ տիրապետում են անապատը այգեստանի վերածելու գաղտնիքին, դժվարություններից չեն վախենում: Մեզ մոտ եկեք ևս մեկ հնգամյակ հետո և կտեսնեք, թե էլ ինչի է ընդունակ արագածցին: Միայն թե խաղաղություն լինի աշխարհում, միայն թե սև ամպերը չկուտակվեն երկնքում...

Մենք հավատում ենք այն խոսքին, որն ասում է Սարգիս Խանոյանը՝ աշխատանքում թրծված, հողին նվիրված մարդը, որի ղեկավարությամբ քարաստաններից ծնունդ են առել սովետական առաջնակարգ մի տնտեսություն, բարեշեն, ծառ ու ծաղկի մեջ թաղված գեղեցիկ մի ավան:

**Ֆ. ԱՀԱՐՈՆՅԱՆ**
**Ն. ՄԵԼԻՔՅԱՆ**

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԶՈՐ ԱՂԲՅՈՒՐԸ

**Ի. ԾԱՄԵՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
ՌՍՖՍՀ գիտության վաստակավոր գործիչ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ, եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդները, ողջ պրոգրեսիվ մարդկությունը ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակի 40-ամյակը նշում են որպես մեծ տոն։*

*«Սովետական Միության համար այդ պատերազմը ազատագրական էր, արդարացի,— նշվում է «1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։— Խորտակիչ պարտության մատնելով թշնամուն, սովետական ժողովուրդը և նրա զինված ուժերը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ պաշտպանեցին սոցիալիստական հայրենիքի ազատությունն ու անկախությունը, պաշտպանեցին Հոկտեմբերի գործը։ Նրանք վճռական ավանդ ներդրեցին ֆաշիստական Գերմանիայի և նրա դաշնակիցների դեմ հաղթանակ նվաճելու, ֆաշիստական ստրկությունից Եվրոպայի ժողովուրդներին ազատագրելու, համաշխարհային քաղաքակրթությունը փրկելու գործում, պատվով կատարեցին իրենց հայրենասիրական և ինտերնացիոնալ պարտքը։ Դա նրանց մեծագույն ծառայությունն է մարդկությանը»։*

*Այդ մեծ հաղթանակի գլխավոր աղբյուրներից մեկը եղավ հարյուրից ավելի սովետական սոցիալիստական ազգերի և ազգությունների անքակտելի, եղբայրական բարեկամությունը։*

*ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ հաստատվել է մեր երկրում սոցիալիզմի կառուցման ընթացքում և ամրապնդվել դրա հաղթանակի շնորհիվ։ Ինչպես նշվել է ՀամԿ(բ)Կ XVIII համագումարի որոշումներում, սոցիալիզմի հաղթանակը կյանքի է կոչել հասարակության այնպիսի հզոր շարժիչ ուժեր, ինչպիսիք են բարոյաքաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը և սովետական հայրենասիրությունը։*

*Սովետական երկրի ժողովուրդների բարեկամությունը սովետական բազմազգ պետության և նրա զինված ուժերի ամրության ու հզորության անսպառ աղբյուրն է։*

*Մեր կոմունիստական կուսակցության ու նրա առաջնորդ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ստեղծված ՍՍՀ Միությունը պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների՝ միասնական սոցիալիստական ֆեդերատիվ պետության մեջ սովերեն սովետական հանրապետությունների իրավահավասար, կամավոր և ազատ միավորման կենդանի մարմնավորումն է։ Պատմության մեջ առաջին անգամ պետության և նրա զինված ուժերի բազմազգայնությունը թուլության աղբյուրից դարձել է նրանց ուժի ու հզորության աղբյուր։*



*Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը լավ գիտակցում էին, որ կապիտալիստական շրջապատման պայմաններում մեր երկրին մշտապես սպառնում է միջազգային իմպերիալիզմը։ Այդ սպառնալիքը հատկապես ուժեղացավ այն բանից հետո, երբ Գերմանիայում ֆաշիստները իշխանության գլուխ անցան։ Կուսակցությունը և սովետական պետությունը բազմազան միջոցներ ձեռնարկեցին երկրի պաշտպանունակությունն ուժեղացնելու նպատակով։ Այդ միջոցներն իրականացվում էին պաշտպանական արդյունաբերության զարգացման, սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի ուժեղացման և կատարելագործման, դիվանագիտական համապատասխան քայլեր ձեռնարկելու և այլ ասպարեզներում։ 1939 թվականի օգոստոսին ՍՍՀՄ սահմանադրության 133-րդ հոդվածին համապատասխան ընդունվեց նոր օրենք «Ընդհանուր զինվորական պարտականության մասին»։*

*Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին ՍՍՀՄ ժողովուրդների ընտանիքը համալրվեց նոր մարզերով ու հանրապետություններով։ 1939 թվականի սեպտեմբերին Արևմտյան Ուկրաինան վերամիավորվեց Ուկրաինական ՍՍՀ-ի և Արևմտյան Բելոռուսիան՝ Բելոռուսական ՍՍՀ-ի հետ։ 1940 թվականի ամռանը Ռումինիան Սովետական Միությանը վերադարձրեց Բեսարաբիան (որը 1918 թվականին զավթել էր բոյարական Ռումինիան)։ Մոլդավական ժողովրդի վերամիավորման շնորհիվ 1940 թվականի օգոստոսին կազմավորվեց Մոլդավական ՍՍՀ-ն։ 1940 թվականի ամռանը Լատվիայի, Լիտվայի և Էստոնիայի ժողովուրդները տապալեցին բուրժուական կառավարությունները և իրենց մոտ հաստատեցին սովետական իշխանություն։ 1940 թվականի օգոստոսին ՍՍՀՄ Գերագույն սովետը բավարարեց նրանց խնդրանքը, Մերձբալթիկայի սովետական հանրապետություններն ընդունելով ՍՍՀ Միության կազմի մեջ։ Այդ ամենի շնորհիվ մեր պետության սահմանները ընդլայնվեցին դեպի Արևմուտք, որը մեծ նշանակություն ունեցավ Սովետական Միության պաշտպանունակության ամրապնդման համար։*

*Միջազգային իրադրության արտակարգ սրման, ՍՍՀՄ-ը մեկուսացնելու և ֆաշիստական Գերմանիայի ագրեսիան մեր երկրի դեմ ուղղելու նպատակ հետապնդող ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի վարած քաղաքականության իրադրության մեջ սովետական կառավարությունը օգոստոսին Գերմանիայի հետ կնքեց չհարձակվելու պայմանագիր։ Դրա շնորհիվ խաղաղ ժամանակաշրջանը մեր երկրի համար երկարաձգվեց մեկուկես տարով, որի ընթացքում ՍՍՀ Միությունը եռանդուն սկսեց նախապատրաստվել ակտիվ պաշտպանության։*

*Նախապես վիթխարի ուժեր կենտրոնացնելով ՍՍՀՄ սահմանների մոտ, 1941 թվականի հունիսի 22-ին գերմանաֆաշիստական զավթիչները ուխտադրժորեն հարձակվեցին մեր երկրի վրա։ Օգտվելով հարձակման հանկարծակիության և գործադրված ռազմական տեխնիկայի քանակական գերակշռության ընձեռած ժամանակավոր առավելությունից, ֆաշիստական հրոսակախմբերը, չնայած սովետական բանակի հերոսական դիմադրությանը, զավթեցին մեր տարածքի զգալի մասը։*

*Հիտլերյան Գերմանիան այն ժամանակ ուներ ռազմատնտեսական վիթխարի պոտենցիալ։ Նրա տրամադրության տակ էին զավթած եվրոպական երկրների տնտեսական, ռազմատեխնիկական և մարդկային ռեսուրսները։ Ֆաշիստական Գերմանիայի հետ միասին հանդես եկան ֆաշիստական Իտալիան, Հունգարիան, Ռումինիան և Ֆինլանդիան, ուր այն ժամանակ իշխում էին հետադիմական վարչակարգեր։*

*Հարձակվելով Սովետական Միության վրա, ֆաշիստական Գերմանիան նպատակադրվել էր ոչնչացնել սոցիալիստական կարգը մեր երկրում, ֆիզիկապես բնաջնջել բնակչության մեծ մասին, իսկ մնացածներին դարձնել իր ստրուկները։ Այդ մարդակեր նպատակները արձանագրված են ոչ միայն Հիտլերի «Մայն քամպֆ» («Իմ պայքարը») գրքում, այլև Գերմանիայի ֆաշիստական կառավարության և զինվորական հրամանատարության փաստաթղթերում։ Դրանք բխում էին ֆաշիզմի գաղափարախոսությունից, որը հիմնված*

է ռասիզմի ու նացիոնալիզմի ամենահետադիմական, մարդատյաց գաղափարների վրա։

Գերմանաֆաշիստական զավթիչները «կայծակնային պատերազմի» իրենց պլաններում հույսը դնում էին սովետական կարգի կարծեցյալ անկայունության վրա, ՍՍՀՄ ժողովուրդների միջև իբր գոյություն ունեցող հակասությունների վրա։ Նրանք դատում էին բուրժուական բազմազգ պետությունների փորձից՝ ենթադրելով, թե սովետական բազմազգ պետությունը ֆաշիստական հորդաների առաջին իսկ հարվածների տակ բաժան-բաժան կլինի։ Բայց նրանց պլանները ձախողվեցին պատերազմի առաջին իսկ օրերից։ Սովետական Միության բոլոր ժողովուրդները, կոմունիստական կուսակցության կոչով, մեկ մարդու պես ոտքի ելան պաշտպանելու իրենց սոցիալիստական հայրենիքը։

Պատերազմի ծանր տարիներին է՛լ ավելի ամրապնդվեց ու կոփվեց մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը։ Սովետական երկրի ռազմաճակատն ու թիկունքը դարձան մեկ միասնական մարտական ճամբար։

Այդ ծանր ժամանակներում առանձնապես վառ դրսևորվեց մեր երկրի ժողովուրդների բարեկամության և սովետական կենարար հայրենասիրության մեծ ուժը։

Բազմազգ կարմիր բանակի ռազմիկները հերոսության չտեսնված հրաշքներ էին ցուցաբերում ռազմաճակատում՝ սովետական հողի յուրաքանչյուր թիզը պաշտպանելով ֆաշիստական զավթիչներից։ 1941 թվականի աշնան ծանր օրերին, երբ թշնամին մոտեցել էր Մոսկվային, մեր երկրի բոլոր ազգությունների ներկայացուցիչները, ռուսների հետ միասին, կրծքով պաշտպանեցին մեր հայրենիքի մայրաքաղաքը։ Այստեղ հռչակվեց Պանֆիլովի գվարդիական դիվիզիան, որը կազմավորվել էր Ղազախստանում։ 28 լեգենդար գվարդիական-պանֆիլովականների թվում, որոնք իրենց կրծքով փակեցին դեպի Մոսկվա սլացող թշնամական տանկերի զորասյան ուղին, կային ռուսներ, ղազախներ, բելոռուսներ, կիրգիզներ։

Իր անունը հավերժ փառքով պսակեց գվարդիական զինվոր, կոմերիտական Ալեքսանդր Մատրոսովը, որը կրծքով փակելով թշնամու հրակնատը, հնարավորություն ստեղծեց իր ստորաբաժանման հաջող հարձակման համար։ Ռուս ռազմիկ Մատրոսովի անմահ սխրանքը կրկնեցին զանազան ազգությունների երկու հարյուրից ավելի ռազմիկներ՝ ուկրաինացիներ Պրոկոլչուկը, Գուտչենկոն, Շևչենկոն, ղազախ Բայմագամբետովը, ուզբեկ Էրջիտովը, կիրգիզ Թուլեբերդիևը, հայազգի Հունան Ավետիսյանը, էստոնացի Լաարը, ուդմուրտ Կուլիկովը և շատ ուրիշներ։

Բելոռուս հերոս, օդաչու կապիտան Գաստելլոյի անօրինակ սխրանքը կրկնեցին ռուս օդաչուներ Լեոնիդ Իվանովը, Սկովորոդինը, Չերկաշինը, Միխայլովը, Սլուժենկինը, Տարասովը, ուկրաինացի Շևչուկը, ղազախ Աբուդիբովը, հրեա Իրժեկը և ուրիշներ։

Սովետական Միության բոլոր ժողովուրդները կարող են պարծենալ Հայրենական մեծ պատերազմի իրենց փառապանծ հերոսների անուններով։ Սովետական Միության հերոսի բարձր կոչման արժանացած ավելի քան 11 հազար մարտիկների, հրամանատարների, քաղաշխատողների թվում կան 8.160 ռուս, 2.069 ուկրաինացի, 309 բելոռուս, 161 թաթար, 108 հրեա, 99 հայ, 96 ղազախ, 90 վրացի, 69 ուզբեկ, 61 մորդվա, 44 չուվաշ, 43 ադրբեջանցի, 39 բաշկիր, 32 օսետին, 18 մարիացի, 18 թուրքմեն, 15 լիտվացի, 14 տաջիկ, 13 լատիշ, 12 կիրգիզ, 10 կոմի, 10 ուդմուրտ, 9 էստոնացի և այլ ազգությունների ներկայացուցիչներ։

Հայրենական մեծ պատերազմում կարմիր բանակի կազմում գործում էին ազգային զորամիավորումներ՝ լատիշական և լիտվական հրաձգային դիվիզիաներ, էստոնական կորպուսը, ղազախ ժողովրդի գվարդիական երեք դիվիզիա, բաշկիրական դիվիզիան, ադրբեջանական, հայկական և վրացական դիվիզիաներ։

Հայկական 89-րդ եռակի շքանշանակիր դիվիզիան Թամանյան թերակըղու ազատագրության համար կոչվել է Թամանյան։ Գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում իրենց մարտական սխրագործություններով աչքի ընկան նաև ազգային մյուս զորամիավորումները։



ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները սերտ համագործակցությամբ ու փոխօգնությամբ կռում էին հաղթանակը թշնամու նկատմամբ։ Ժողովուրդների մարտական համագործակցությունը դաստիարակում և աճեցնում էր Հայրենական մեծ պատերազմի իսկական հերոսների։ Հերոսությունը կարմիր բանակում դարձել էր մասսայական երևույթ։

Պատերազմի առաջին, առավել ծանր ժամանակաշրջանում, երբ թշնամին, օգտագործելով ժամանակավոր առավելությունները, զավթում էր մեր տարածքը, սովետական ռազմիկները անօրինակ հերոսությամբ պաշտպանում էին հարազատ քաղաքներն ու գյուղերը։ Ամբողջ աշխարհը ապշած ու հիացած էր Օդեսայի, Սևաստոպոլի, Լենինգրադի ու Ստալինգրադի հերոսական պաշտպանությամբ։ Օդեսայի պաշտպանությունը շարունակվեց 1941 թվականի օգոստոսի 5-ից մինչև հոկտեմբերի 16-ը։ Չորս դիվիզիաներ և ծովայինների ու ժողովըրդական աշխարհազորի ոչ մեծ ջոկատներ 73 օր շարունակ քաղաքը պաշտպանում էին թշնամու 18 դիվիզիաներից։ Օդեսայի մատույցներում թշնամին կորցրեց 250 հազարից ավելի միայն սպանված զինվոր ու սպա։ Կարմիր բանակը քաղաքը թողեց Գերագույն գլխավոր հրամանատարության հրամանով։

Սևաստոպոլի պաշտպանությունը տևեց 250 օր։ Քաղաքի դեմ ծավալված հարձակողական մարտերին մասնակցում էր հակառակորդի ավելի քան 400 տանկ և 900 ինքնաթիռ։ Ամեն օր քաղաքի վրա տեղում էր 2,5-ից մինչև 6 հազար ռումբ։ Այդ ժամանակամիջոցում թշնամին քաղաքի մատույցներում կորցրեց մոտ 300 հազար սպանված և վիրավոր զինվոր ու սպա։

Ավելի քան 900 օր տևեց Լենինգրադի հերոսական պաշտպանությունը. քաղաքի բնակչությունը բլոկադայի, պարենամթերքի պակասի արտակարգ ծանր պայմաններում անօրինակ քաջություն, արիություն ու հերոսություն ցուցաբերեց քաղաքի պաշտպանության, սպառազինության ու հանդերձանքի արտադրության գործում։ Լենինգրադցիների ստեղծած ժողովրդական աշխարհազորի բանակը մեծ օգնություն էր ցույց տալիս կարմիր բանակի կանոնավոր զորամասերին՝ քաղաքի պաշտպանության գործում։ Չնայած հսկայական զըրկանքներին, օդից կատարվող անընդմեջ ռմբակոծություններին ու հրետակոծությանը, Լենինգրադի հերոսական պաշտպանները քաղաքը թշնամուն չհանձնեցին։ Նրանց ակտիվ օգնություն էին ցույց տալիս մեր ամբողջ երկիրը, Սովետական Միության բոլոր ժողովուրդները։

Հայրենական մեծ պատերազմի տարեգրության մեջ ոսկե տառերով է գրված Ստալինգրադի հերոսական պաշտպանությունը։ Ճակատամարտը Ստալինգրադի համար տևեց 200 օր։ Թշնամուն հաջողվել էր 1942 թվականի սեպտեմբերին հսկայական կորուստների գնով ներխուժել քաղաքի արվարձանները։ 143 օր շարունակ կատաղի մատեր էին տեղի ունենում Ստալինգրադի փողոցներում։ Մարտերին մասնակցում էին հակառակորդի 11 ընտիր դիվիզիա, 500 տանկ, 1.400 հրանոթ և մինչև 1.000 ինքնաթիռ։ Քաղաքի պաշտպանության խնդիրը դրված էր մարտերում կոփված 62-րդ բանակի վրա։ Գեներալ Ռոդիմցևի գվարդիական դիվիզիան ամեն օր ետ էր մղում հակառակորդի 12-ից մինչև 15 գրոհ։ Մարտեր էին մղվում յուրաքանչյուր փողոցի, յուրաքանչյուր թաղամասի ու տան համար։ Ստալինգրադի համար մղված մարտերում սովետական ռազմիկները ցույց տվեցին քաջության, տոկունության ու հերոսության հիանալի օրինակներ։ Ռուսների հետ ուս-ուսի քաղաքի յուրաքանչյուր թաղամաս և տուն պաշտպանում էին մեր երկրի գրեթե բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները։

Ստալինգրադի հերոսական պաշտպանությունը հնարավորություն ընձեռեց ռեզերվներ մոտեցնելու և կարմիր բանակի հզոր ուժեր կենտրոնացնելու վճռական հակահարձակման համար։ 1942 թվականի նոյեմբերի 19—20-ին իրականացվեց թշնամու զորքերի 330 հազարանոց խմբավորման լրիվ շրջա-

պատումը։ Մինչև 1943 թվականի փետրվարի 2-ը հակառակորդը լրիվ ջախջախվեց, նրա զորքերի մնացորդներն անձնատուր եղան։ Գերի վերցվեց թշնամու 91 հազար զինվոր և 2.500 սպա (այդ թվում 24 գեներալ), մարտադաշտում հավաքվեց ու թաղվեց 147.200 սպանված գերմանացի (մինչ այդ գերմանացիներն իրենք թաղել էին մի քանի տասնյակ հազար սպանված)։

Ստալինգրադի մոտ կրած պարտությունից հետո գերմանաֆաշիստական բանակը այլևս չկարողացավ ուշքի գալ։ Պատերազմի ընթացքի մեջ տեղի ունեցավ արմատական բեկում։ Կարմիր բանակը հարձակման անցավ բոլոր ռազմաճակատներում՝ սովետական հողը մաքրելով ֆաշիստական աղտեղությունից։

Ռազմաճակատում կարմիր բանակի մարտիկների ցուցաբերած արիությանը, տոկունությանն ու մասսայական հերոսությանը սովետական մարդիկ աշխատանքային հերոսական սխրագործություններով էին արձագանքում թիկունքում՝ արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում, գիտության ու տեխնիկայի, մշակույթի բնագավառներում... Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սովետական մտավորականության անձնվեր աշխատանքի շնորհիվ մեր թիկունքը անասելի ծանր ու ավերիչ պատերազմի պայմաններում օրեցօր մեծացնում էր օգնությունը ռազմաճակատին՝ նրան մատակարարելով հաղթանակի համար անհրաժեշտ ամեն բան։

Առանձնապես մեծ են բազմազգ բանվոր դասակարգի ծառայությունները, որը պատերազմի օրերին հաղթահարեց վիթխարի դժվարություններ, ցուցաբերեց անձնազոհության և աշխատանքային հերոսության հրաշքներ, օրեցօր ավելացնելով արդյունաբերական արտադրանքի, ամենից առաջ ռազմաճակատի համար մարտական տեխնիկայի թողարկումը։

Պատերազմի սկզբին իրականացվեց գործարանների ու ֆաբրիկաների՝ իր մասշտաբներով ու տեմպերով աննախադեպ էվակուացիա օկուպացման սպառնալիքի տակ գտնվող արևմտյան շրջաններից դեպի խոր թիկունք՝ Արևելք։ Ամենակարճ ժամկետներում, նոր վայրերում, անչափ ծանր պայմաններում կառուցվում էին գործարանային ու բնակելի շենքեր, կազմակերպվում էր ռազմաճակատի համար անհրաժեշտ ռազմական հանդերձանքի արտադրությունը։

Սովետական հայրենասիրության և աշխատանքային հերոսության սքանչելի օրինակներ ցույց տվեց նաև մեր բազմազգ կոլտնտեսային գյուղացիությունը։ Պատերազմի ամենածանր շրջանում անգամ սոցիալիստական գյուղատնտեսությունը բանակին ու երկրին մատակարարում էր անհրաժեշտ պարեն, իսկ արդյունաբերությանը՝ հումք։

Սովետական ժողովրդի հաղթանակի գործում խոշոր ներդրում եղավ սովետական բազմազգ մտավորականության հերոսական աշխատանքը։ Սովետական գիտնականները, կոնստրուկտորները, ինժեներներն ու տեխնիկները իրենց ողջ գիտելիքները, ստեղծագործական միտքն ու փորձը նվիրաբերում էին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի արտադրության մեծացման, ավելի ու ավելի մեծ քանակությամբ բարձրորակ մարտական տեխնիկայի թողարկման գործին։ Թշնամու նկատմամբ հաղթանակը կոփելու գործում սովետական գիտնականներն իրենց ստեղծագործական ոգեշունչ աշխատանքով օգնում էին կարմիր բանակին՝ ռազմաճակատում, բանվորներին և գյուղացիներին՝ թիկունքում։

Պատերազմի ամենածանր օրերին սովետական ռազմիկները չէին կորցնում հավատը հաղթանակի նկատմամբ։ Անհաջողությունները, նահանջները չընկճեցին նրանց եռանդը, հաղթանակի հասնելու անդուսպ ձգտումը։ Կարմիր բանակի և սովետական ամբողջ բազմազգ ժողովրդի բարոյական բարձր ոգին պահպանվում էր իրենց գործի, մղած պատերազմի արդարացիության նկատմամբ ունեցած խոր համոզվածությամբ։ Այդ համոզմունքն իր արտահայտությունը գտավ կոմունիստական կուսակցության հռչակած՝ «Մեր գործն արդար է, հաղթանակը մերը կլինի» նշանաբանում։

Սովետական մարդիկ թիկունքում և ռազմաճակատում ապրում էին միասնական մտքով ու ցանկությամբ՝ որքան կարելի է արագ ջախջախել թշնամուն և նվաճել հաղթանակ։



Միանգամայն հատկանշական են սովետական ժողովուրդների՝ սոցիալիստական հայրենիքի նկատմամբ անսահման սիրով ու նվիրվածությամբ տոգորված բազմաթիվ նամակ-պատվիրանները ռազմաճակատի իրենց համերկրացի մարտիկներին։ Այդ նամակներում մեր ժողովուրդները բոլոր ազգությունների ռազմիկներին կոչ էին անում անձնազոհ հերոսական պայքար մղել թշնամու դեմ՝ հանուն սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախության։ Այսպես, ուզբեկ ժողովուրդը ուզբեկ ռազմիկներին հղած նամակում գրում էր. «Քո ժողովուրդը Սովետական Միության զավակն է։ Ռուսը, ուկրաինացին, բելոռուսը, ադրբեջանցին, վրացին, հայը, տաջիկը, թուրքմենը, ղազախն ու կիրգիզը քեզ հետ համատեղ քսանհինգ տարի շարունակ օր ու գիշեր կառուցել են մեր մեծ տունը, մեր երկիրը, մեր մշակույթը... իսկ հիմա քո ավագ եղբոր՝ ռուսի տունը, քո եղբայրներ բելոռուսի և ուկրաինացու տունն է ներխուժել գերմանացի բասմաչը։ Նա իր հետ բերում է դարչնագույն ժանտախտ, կախաղան ու մտրակ, սով ու մահ։ Բայց ռուսի տունը նաև քո տունն է... Քանզի Սովետական Միությունը մի համերաշխ ընտանիք է, որտեղ թեև յուրաքանչյուրն ապրում է իր տանը, բայց բակն ու տնտեսությունը միասնական են ու անբաժանելի... Ժողովուրդների միասնությունը մեզ հաղթանակ բերեց անցյալում, ժողովուրդների միասնությունը մեր ներկայիս հզորության հենարանն է, ժողովուրդների միասնությունը վաղվա հաղթանակի ստույգ բանալին է» (Наказ народов. М., Воениздат. 1943, стр. 12—13)։

Պատերազմի ելքի համար, իրենց ռազմիկների վարքի համար, նրանց մարտական ու բարոյաքաղաքական հատկանիշների համար քաղաքական ու բարոյական պատասխանատվության խոր զգացումով են տոգորված ժողովուրդների այդ նամակները։ Համակված լինելով ինտերնացիոնալիզմի ոգով, դրանք ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության վառ արտահայտությունն են։ Քաղաքական բարձր գիտակցականությունը, պատերազմի նպատակների ըմբռնումը և դրանց արդարացիության նկատմամբ ունեցած համոզմունքը բնորոշ են բոլոր այդ նամակներին։ Այսպես, հայ ժողովուրդը հայազգի ռազմիկներին հղած նամակում հատկապես շեշտում էր ժողովուրդների բարեկամության՝ որպես սովետական պետության ուժի և թշնամու նկատմամբ նրա հաղթանակի աղբյուրի, ամրապնդման անհրաժեշտությունը։

Ֆաշիստական զավթիչների նկատմամբ տարած հաղթանակի գործում անգնահատելի մեծ ավանդ ներդրեց մասսայական պարտիզանական շարժումը օկուպանտների թիկունքում։ Թշնամու դեմ մղվում էր այնպիսի անձնազոհ ու հերոսական պայքար, որպիսին պատմությունը չի իմացել։ Այդ պայքարի հոգին ու կազմակերպիչը կոմունիստական կուսակցությունն էր, թշնամու օկուպացրած բոլոր շրջաններում գործող նրա ընդհատակյա կազմակերպությունները։ Թշնամու խոր թիկունքում, Բելոռուսիայում և Ուկրաինայում, Բրյանսկի անտառներում և Հյուսիսային Կովկասում, Ղրիմում և Մերձբալթիկայում՝ ամենուրեք օկուպանտների դեմ հերոսական պայքար էին մղում հազարավոր պարտիզանական ջոկատներ, որոնցից շատերը միացել և դարձել էին խոշոր միավորումներ։ Բելոռուսիայում և Ուկրաինայում թշնամուց ազատագրվել էին ամբողջ շրջաններ, որոնք ստացել էին «Պարտիզանական երկրամաս» անունը։ Պարտիզանական շարժումն ամբողջ աշխարհին ցուցադրեց սովետական մարդկանց անսահման սերը իրենց սոցիալիստական հայրենիքի նկատմամբ, նրանց անգերազանցելի բարոյական բարձր հատկանիշները։

Բացառիկ մեծ է ռուս ժողովրդի ծառայությունը, որի ուսերին էր ընկել պատերազմի հիմնական ծանրությունը։ Մեր սովետական երկրի բոլոր ժողովուրդներն իրենց առավելագույն ավանդը ներդրեցին ֆաշիստական զավթիչների դեմ հաղթանակն արագացնելու գործում։ Եվ այդ հաղթանակը ձեռք

բերվեց։ Այդ հրեշավոր անողոք պատերազմի գլխավոր կազմակերպիչները, ֆաշիստական ռայխի պարագլուխները, պատերազմի հանցագործները կրեցին իրենց արժանի պատիժը։

Ամբողջ աշխարհի ժողովուրդները ուրախությամբ և հույսով էին ընդունում կարմիր բանակի հաջողությունների մասին ամեն մի լուրը։ Այդ հաջողությունները ոգևորում էին գերմանաֆաշիստական զորքերի կողմից օկուպացված երկրների ազատասեր ժողովուրդներին՝ զավթիչների դեմ նրանց մղած պայքարում։

ՍՍՀՄ-ի տարածքում կազմավորվեցին եղբայրական ժողովուրդների՝ լեհերի ու չեխոսլովակների զորամիավորումներ, որոնք կարմիր բանակի հետ միասին հերոսաբար մարտնչում էին Լեհաստանի և Չեխոսլովակիայի ազատագրման համար։ Ֆաշիստական օկուպանտների դեմ անձնազոհ պայքար էին մղում Հարավսլավիայի պարտիզանական բանակներն ու ջոկատները, Բուլղարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Հունգարիայի հայրենասերները, դիմադրության շարժման և հակաֆաշիստական ընդհատակի մասնակիցները։

Սովետական պետությունը, նրա զինված ուժերը, կատարելով իրենց դաշնակցային պարտավորությունները, պատերազմի մեջ մտան իմպերիալիստական Ճապոնիայի դեմ, ջախջախեցին նրա ցամաքային գլխավոր ուժերը՝ Կվանտունյան բանակը, որը օկուպացրել էր Մանջուրիան և Կորեան, ազատագրեցին Սախալինի հարավային մասը, Կուրիլյան կղզիները և Հյուսիսային Կորեան։ Ճապոնիան ստիպված եղավ անձնատուր լինել։ Ճապոնիայի պարտությամբ ավարտվեց երկրորդ համաշխարհային պատերազմը։

Սովետական Միության պատմական մեծ հաղթանակը միաժամանակ նաև սովետական ժողովրդի բարոյաքաղաքական հաղթանակն էր, ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության հաղթանակը գազանային նացիոնալիզմի ու ռասիզմի գաղափարախոսության նկատմամբ։

Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով, Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության տարած հաղթանակի շնորհիվ սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շրջանակներից։ Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում հաղթանակեց ժողովրդական դեմոկրատիայի կարգը, կազմավորվեցին սոցիալիստական տիպի պետություններ։ Այդպիսով սոցիալիզմը վերածվեց համաշխարհային սիստեմի։

Մեր երկրի աշխատավորները աշխատանքային մեծագույն արիություն ու հերոսություն ցուցաբերեցին նաև հետպատերազմյան տարիներին՝ ամենակարճ ժամկետներում վերականգնելով երկրի ժողովրդական տնտեսությունը։

Պատերազմը, մեր ունեցած հսկայական կորուստները մի քանի տարով կասեցրին երկրի զարգացումը։ Սակայն Հայրենական մեծ պատերազմը չխարխլեց, չթուլացրեց սոցիալիստական հասարակական և պետական կարգի ամրակուռ հիմքերը, կոմունիզմի իդեալներն իրականացնելու սովետական մարդկանց աննկուն կամքը, նրանց սերն ու նվիրվածությունը իրենց սոցիալիստական հայրենիքին, նրանց սովետական հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը։

Ֆաշիստական օկուպանտների լծի տակ ընկած սովետական հանրապետությունների ու մարզերի ժողովրդական տնտեսության արագ վերականգնման գործում վիթխարի դեր կատարեց ՌՍՖՍՀ-ի, Անդրկովկասի, Միջին Ասիայի ու Ղազախական հանրապետությունների ժողովուրդների անշահախնդիր, համակողմանի օգնությունը։

Չորրորդ հնգամյա պլանի (1946—1950 թթ.) կատարման շնորհիվ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունը ոչ միայն հասավ նախապատերազմյան մակարդակին, այլև զգալիորեն գերազանցեց այն։ Մերձբալթիկայի, Աջափնյա Մոլդավիայի երիտասարդ սովետական հանրապետություններում ու մարզերում, Ուկրաինայի և Բելոռուսիայի արևմտյան մարզերում ավարտվեց գյուղատնտեսության կոլեկտիվացումը և դրանով իսկ հաջողությամբ լուծվեցին անցման ժամանակաշրջանի խնդիրները։



Հետագա տարիներին սովետական բոլոր հանրապետությունները, մեր երկրի բոլոր ազգերն ու ազգությունները ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ, եղբայրական բարեկամական համագործակցությամբ ու փոխօգնությամբ կառուցեցին զարգացած սոցիալիստական հասարակարգ։

ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ մեծ հաղթանակի օրից։ Սովետական բազմազգ ժողովուրդը, մեր փառապանծ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հիանալի հաջողությունների է հասել խաղաղ ստեղծարար աշխատանքում։ Մեզանում կառուցվեց զարգացած սոցիալիստական հասարակարգ։ 1977 թվականին ընդունվեց ՍՍՀՄ նոր սահմանադրությունը, որը իրավաբանորեն վավերագրեց սովետական երկրի թևակոխումը զարգացած սոցիալիզմի փուլը։ Մեր սովետական պետությունը դարձել է համաժողովրդական։ Կազմավորվել է պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը, որը բոլոր սովետական մարդկանց սոցիալ-դասակարգային և ինտերնացիոնալ հանրություն է։ «ՍՍՀՄ-ը մարմնավորում է սովետական ժողովրդի պետական միասնությունը, բոլոր ազգերին և ազգություններին համախմբում կոմունիզմի համատեղ կառուցման նպատակով»,— վավերագրված է ՍՍՀՄ սահմանադրության մեջ։

Սովետական ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի 40-ամյակը և ՍՄԿԿ XXVII համագումարի դիմավորումը նշանավորում է աշխատանքային նոր նվաճումներով։

ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը ամփոփել են համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքները ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1984 թվականի պետական պլանի հաջող կատարման համար։ Այդ մրցության՝ փոխանցիկ Կարմիր դրոշներով պարգևատրված հաղթողների թվում է նաև Հայկական ՍՍՀ-ն։ Մեր հանրապետության աշխատավորական կոլեկտիվները ակտիվորեն համամիութենական սոցիալիստական մրցության մեջ են մտել նաև տնտեսական ու սոցիալական զարգացման եզրափակիչ՝ 1985 թվականի պլանի և ամբողջ տասնմեկերորդ հնգամյա պլանի հաջող կատարման համար։ Նրանք պարտավորություն են ստանձնել ժամկետից շուտ կատարել այդ պլանները արդյունաբերական արտադրության ծավալի և արտադրատեսակների մեծ մասի թողարկման բնագավառում, արտադրանքի ծավալի աճը հիմնականում ապահովել աշխատանքի արտադրողականության աճի հաշվին։ Այդ պարտավորություններում կոնկրետ ցուցանիշներ են նշված՝ արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի հիմնական ճյուղերի, ժողովրդի բարեկեցության, առողջապահության, գիտության, կրթության և մշակույթի զարգացման բնագավառներում։

Բոլոր հանրապետությունների աշխատավորները հսկայական խանդավառությամբ ու ստեղծագործական ակտիվությամբ են մասնակցում համամիութենական սոցիալիստական այդ մրցությանը։ Ստանձնած պարտավորությունների հաջող կատարման, մեր սոցիալիստական հայրենիքի հետագա համակողմանի առաջընթացի գործում կարևորագույն դեր է խաղում կուսակցության գաղափարախոսական աշխատանքը։ Դրա նշանակությունը հատկապես աճել է արդի փուլում, երբ կուսակցության գլխավոր ստրատեգիական խնդիրն է դարձել զարգացած սոցիալիզմի համակողմանի կատարելագործումը։

«Գաղափարախոսական աշխատանքը ավելի ու ավելի է մղվում առաջին պլան, աճում են նրա դերն ու նշանակությունը»,— մատնանշվում է ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշման մեջ։ Այդ իսկ պատճառով մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն, նրա քաղբյուրոն հսկայական ուշադրություն են նվիրում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան և հետագա պլենումների որոշումների կենսագործմանը կուսակցական բոլոր կազմակերպությունների կողմից։ 1984 թվականի հոկտեմբերին ՍՄԿԿ Կենտկոմը որոշում ընդունեց «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման

ընթացքի մասին»: Այնտեղ տրված է հանրապետության կուսակցական կազմակերպության գործունեության խոր ու համակողմանի վերլուծությունը, նշված են որոշակի հաջողություններ նրա գաղափարախոսական, քաղմասսայական աշխատանքներում, բացահայտված են այդ գործում եղած թերություններն ու բացթողումները և դրանց հաղթահարման ուղիները: 1985 թվականի հունվարին կայացած Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի պլենումը նվիրված էր ՍՄԿԿ Կենտկոմի վերոհիշյալ որոշման իրագործման հարցերին: ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ և պլենումի մասնակիցների ելույթներում հանգամանորեն քննարկվեցին եղած թերությունները, բացասական երևույթների հաղթահարման և հանրապետության կուսակցական կազմակերպության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացման հարցերը: Պլենումում նշվեց, որ գլխավոր խնդիրներից մեկն է կյանքի բոլոր ոլորտներում ժողովուրդների բարեկամության վեհ սկզբունքների հաստատումը, աշխատավորներին, հատկապես երիտասարդությանը սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը:

ՍՄԿԿ-ի գլխավոր ստրատեգիական խնդիրը՝ զարգացած սոցիալիզմի կատարելագործումը նշանակում է նաև ազգամիջյան հարաբերությունների կատարելագործում: Ինչպես բազմիցս նշել է մեր կուսակցությունը, զարգացած սոցիալիզմին հասնելը չի նշանակում, որ մեր հասարակության մեջ արդեն ոչ մի բացասական երևույթ չկա: Դրանք կան նաև ազգային հարաբերությունների ոլորտում:

Մենք օրինական հպարտությամբ ենք խոսում ազգային հարցի լուծման մեր հաջողությունների մասին, բայց և միաժամանակ հասկանում ենք, որ դա ամենևին չի նշանակում, թե մեզ արդեն հաջողվել է վերջ տալ մարդկանց հոգեբանության մեջ անցյալի մնացուկներին, տեղայնության կամ ազգային սահմանափակության դրսևորումներին: Անխոնջ, սիստեմատիկ պայքարը նացիոնալիզմի և շովինիզմի բոլոր մնացուկների ու դրսևորումների դեմ, սովետական մարդկանց դաստիարակումը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով՝ մեր երկրի ժողովուրդների բարեկամության, սոցիալիզմի եղբայրական երկրների ժողովուրդների հետ սովետական ժողովրդի բարեկամության ամրապնդման վճռական պայմանն է: Իսկ այդ բարեկամության ամրապնդումը սովետական պետության, սոցիալիստական համագործակցության երկրների հզորության ամրապնդման կարևորագույն գործոններից մեկն է: Ընդ որում պետք է նկատի ունենալ, որ ՍՍՀՄ-ի ու նրա դաշնակիցների դեմ իմպերիալիստների ծավալած գաղափարախոսական և հոգեբանական պատերազմում կարևոր տեղ է տրվում նացիոնալիզմի և շովինիզմի պրոպագանդմանը:

Ժամանակակից ամբողջ քաղաքակրթությանը, մոլորակի վրա եղած կենդանի ամեն ինչին կործանում սպառնացող միջուկային պատերազմ նախապատրաստող մոլի իմպերիալիստների ճանապարհին կանգնած է խաղաղության կողմնակիցների՝ բոլոր երկրներում աճող մասսայական հակապատերազմական շարժումը: Բոլոր երկրների աշխատավորներն ավելի ու ավելի են համոզվում, որ Սովետական Միությունը խաղաղության, սոցիալական պրոգրեսի և ժողովուրդների բարեկամության հզոր պատվարն է:

---

# ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻՆ ՆՎԻՐՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՈՒԺԸ

**Լ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր**

ԱՆՆԿԱՍԵԼԻ Է ԺԱՄԱՆԱԿԻ ՎԱԶՔԸ: Քառասուն տարիներ են անցել Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից: Քառասո՜ւն տարի: Բայց չի մարել ընթերցողների հետաքրքրությունը պատերազմին նվիրված գրականության նկատմամբ: Եվ չի՜ մարի: Չէ՞ որ այդ աշխարհամարտի վերաբերյալ գրված գրքերը վկայություններ են կյանքի ու մահվան, սխրանքների, վեհ մարդկայնության և դրամատիկական ճակատագրերի մասին: Նման չնվազող հետաքրքրությունն արտահայտությունն է սովետական ժողովրդի հոգեկան ազնիվ խառնվածքի, հայրենասիրության, ժողովուրդ, որի սրտում հավերժորեն ու հաստատուն պահպանվել և սերնդե-սերունդ փոխանցվել է մեծ փորձությունների, նմանը չունեցող պայքարի ու հաղթանակների անկրկնելի տարիների հիշատակը:

Վիթխարի է Հայրենական մեծ պատերազմին նվիրված արձակի դաստիարակչական նշանակությունը: Պատերազմական արձակի մեջ քիչ չեն գեղարվեստական խոսքի վարպետները: Անցյալ տարի, ՍՍՀՄ գրողների միության հիսնամյակի առընչությամբ սովետական գրողների մի մեծ խումբ, որոնց թվում և ոչ քիչ պատերազմական թեմաներով գրողներ՝ Յու. Բոնդարև, Գ. Բակլանով, Վ. Բիկով, Մ. Սարգսյան և շատ ուրիշներ, սովետական գրականության զարգացման գործին մատուցած ծառայությունների համար արժանացան հայրենիքի բարձր պարգևներին: Սովետական մի շարք ականավոր գրողների հետ մեկտեղ արձակագիր Սերո Խանզադյանը՝ առաջինը հայ գրականության ներկայացուցիչներից, արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի պատվավոր կոչման: Ս. Խանզադյանի, Վ. Պետրոսյանի, Ս. Կապուտիկյանի, Գ. Էմինի, Մ. Սարգսյանի պարգևները գնահատականն են սովետական բազմազգ կուլտուրայի գոյավորման ու զարգացման գործում ողջ սովետահայ գրականության մատուցած ծառայությունների:

Սովետական գրականության մեջ Հայրենական մեծ պատերազմին նվիրված արձակի ու պոեզիայի գրաված պատվավոր տեղը միանգամայն օրինաչափ է: Մեր ժողովուրդների կյանքի ու պատմության մեջ պատերազմը մի ամբողջ ժամանակաշրջան էր, այն սովետական մարդու հոգևոր տոկունության, սոցիալիստական հասարակության ամրության մեծ քննությունը եղավ: «Սովետական ժողովրդի հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչը,— ասված է «1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— լենինյան կոմունիստական կուսակցությունն էր: Իր բազմակողմանի գործունեությամբ նա ապահովեց քաղաքական, պետական ու ռազմական ղեկավարման, բանակի ու ժողովրդի, ճակատի ու թիկունքի կուռ միասնությունը: Նրա կոչով ամբողջ երկիրը ոտքի ելավ ի մահ կռվելու ֆաշիզմի դեմ»:

Անցած տասնամյակներում սովետական բազմազգ գրականությունը վիթխարի աշխատանք է տարել պատերազմը և մարդը պատերազմում խնդրի գեղարվեստական հետազոտման և իմաստավորման գործում: Ռազմական թեմայի նկատմամբ նման տևական, չնվազող ուշադրությունը ամենից առաջ բխում է ֆաշիզմի դեմ մղված ազատագրական մեծ պայքարի բուն ժողովրդական էությունից, սովետական ժողովրդի և գրականության գաղափարական, աշխարհայացքային միասնությունից:

Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրվանից սովետական գրականու-

թյունն ամբողջովին սկսեց ծառայել ռազմաճակատին, սովետական ժողովրդի՝ ֆաշիզմի դեմ մղած պայքարի մեծ գործին: Բարձր էին հնչում սովետական գրողների պոեզիան և արձակը, հրապարակախոսական կրակոտ խոսքը: Դրանք քաջությամբ էին տոգորում ժողովրդին, համակում թշնամու նկատմամբ ատելության զգացումով, կոչ անում դիմագրավել, ջախջախիչ հարված հասցնել նրան: Չի կարելի այսօր չհիշել պատերազմի ժամանակների այնպիսի նշանակալի գործեր, ինչպես՝ Մ. Շոլոխովի **Ատելության գիտությունը, Նրանք մարտնչել են հայրենիքի համար,** Ա. Տոլստոյի **Ռուսական բնավորություն,** Լ. Լեոնովի **Ներխուժում,** Վ. Գրոսմանի **Ժողովուրդն անմահ է,** Ա. Բեկի **Վոլոկոլամսկի խճուղին,** Բ. Գորբատովի **Անընկճելիները** և այլն:

Հայ գրողներից հիշարժան, մնայուն գործեր են ստեղծել Դ. Դեմիրճյանը, Ն. Զարյանը, Ստ. Զորյանը, Մ. Արազին, Հ. Քոչարը: Հատկապես առանձնանում էր Հ. Քոչարի ստեղծագործությունը: Իր ակնարկներում ու պատմվածքներում նա ներկայացրել է ռուս, ուկրաինացի, հայ և այլ ժողովուրդների հերոս զավակներին: Հրապարակախոսի հատու գրիչը ձեռքն առավ Ավետիք Իսահակյանը: 1941 թվականի օգոստոսի 8-ին արդեն «Սովետական Հայաստանը» հրապարակեց վարպետի **Ֆաշիզմը պետք է կործանվի** ցասումնալի խոսքը:

Գրականության ու ժողովրդի աննախընթաց միասնության այդ տարիներին սովետական գրողները ցույց տվին գրչի ու զենքի անվրեպ ու հատու գործածության հիանալի օրինակներ:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում, ինչպես ողջ սովետական բազմազգ գրականության մեջ, նույնպես և հայ գեղարվեստական արձակում Հայրենականի մեծ պատերազմի թեման դառնում է առաջնայիններից մեկը: 1946 թվականին լույս են տեսնում Քր. Թափալցյանի **Պատերազմ** քառահատոր վեպի առաջին գիրքը և Հմ. Սիրասի **Հայր և որդի** վեպը: 1949 թվականին **Մեր գնդի մարդիկ** վեպով հանդես է գալիս Ս. Խանզադյանը: Պատերազմական արձակի համար բեղմնավոր էին հատկապես հիսնական թվականները, երբ մեկը մյուսի հետևից հրապարակվեցին Հմ. Սիրասի **Արարատ,** Բ. Վերդյանի **Քեզ համար, Լենինգրադ,** Հ. Քոչարի **Մեծ տան զավակները,** Մ. Ծաթիրյանի **Զինվորները** և Գ. Սևունցի **Գերիները** վեպերը:

50-ական թվականների պատերազմական արձակում գերակշիռ տեղ են գրավում լայն ընդգրկման, մեծածավալ կտավները: Եվ պատահական չէ այդ: Նոր ավարտված պատմական վիթխարի աշխարհամարտը պահանջում էր նույնպիսի էպիկական գեղարվեստական իմաստավորում: Այն տարիներին պատերազմին նվիրված հայկական արձակի բնորոշ հատկանիշը դրա ընդհանուր ոգեշունչ տոնն է, պրոբլեմատիկայի հրապարակախոսական սրությունը, իսկ պաթոսը՝ վսեմ հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը: Սևեռուն ուշադրություն է նվիրվել մասսայական հերոսականության արտացոլմանը, զինվորի բնավորության գեղարվեստական ընկալմանը: Սակայն 50-ական թվականների արձակը զերծ չէ թերություններից: Նկատելի են իրադարձությունների նկարագրությունների, կերպարների որոշ կանխամտածվածություն և սխեմատիզմ:

«Այժմ, երբ այդքան տարիներ են անցել» վերնագրով հրապարակված հարցազրույցում այն հարցին, թե ի՞նչն էր գլխավորը իր ռազմական փորձում, Գ. Բակլանովը պատասխանել է. «Պատերազմը ես տեսել եմ ներքևից, խրամատից, որտեղից այն տեսել է ժողովրդի մեծամասնությունը— զինվորները, սերժանտները, կրտսեր սպաները... Այնտեղ ես զգացի, թե ինչ է նշանակում պատերազմը մարդու և մարդկության համար: Ուստի և ես չէի կարողանա պատերազմը նկարագրել որպես ստրատեգիական օպերացիա, որպես սլաքներ՝ քարտեզի վրա. ես գիտեմ ումից և ինչպես են կազմվում այդ սլաքները» («Вопросы литературы», 1983, № 1, стр. 189):

Հիմնականում այս ելակետից են պատերազմը նկարագրել Մ. Սարգսյանը, Բ. Հովսեփյանը, Խ. Գյուլնազարյանը. նրանք ձգտել են իրադարձությունների գեղարվեստական փաստագրությամբ ճշմարտացի արտացոլել ռազմաճակատային բուն իրականությունը, դրա բազմաբարդ առօրյան: Նախորդ ժամանակաշրջանի 50-ական թվականների գեղարվեստական արձակին բնորոշ վեհ ռոմանտիկ ակունքը 60—70-ական թվականների հերոսական-քնարական ժանրերի ստեղծագործություն-



ներում փոխարինվում է անձնական ելակետով: Գրողների ուշադրությունն ամբողջովին կենտրոնանում է մարդու ներաշխարհի արտացոլման վրա: Նրանք դիմում են զգացմունքների ու մտքերի ելևէջների, հոգեբանական ճշգրիտ մանրամասների, անձի ներսական վարքագծի արտահայտման:

Կար ժամանակ, երբ քննադատության ոլորտում լրջորեն վիճաբանում էին «խրամատային ճշմարտության» մասին: Այն համարվում էր ոչ լիարժեք, «հատվածային», որն ի վիճակի չէ ներկայացնելու վիթխարածավալ իսկությունը մեծ պատերազմի մասին: Որոշ քննադատներ, ըստ էության, չէին ընդունում այն ժանրերի ստեղծագործությունները, որոնցում չկային իրադարձությունների ընդգրկուն հորիզոններ, խոշոր ճակատամարտերի նկարագրություններ, և պատումը կենտրոնանում էր սոսկ պատերազմի, «ներքևից» տեսածի արտացոլման վրա: Սակայն շուտով լիովին ապացուցվեց նման հարցադրման սխալականությունը: Այժմ քննադատության և գրականագիտության մեջ չկա «խրամատային» կամ «շտաբային» ճշմարտություն: Բոլոր կատեգորիաները հագեցված են մեկ գլխավոր, պատերազմում գրողի ապրած-զգացածի խորությամբ և ինքնատիպությամբ չափվող գեղարվեստական ճշմարտությամբ:

Այդ տարիների ստեղծագործությունները՝ Բ. Հովսեփյանի **Սերմնացանները չվերադարձան** վեպը, Մ. Սարգսյանի **Կյանքը կրակի տակ** և **Սերժանտ Կարոն** վիպակները, նրա **Ճակատագրով դատապարտվածները** վեպը և մի շարք լավ պատմվածքներ, Խ. Գյուլնազարյանի **Ինչ-որ տեղ վերջանում էր հորիզոնը** վեպը և դրան նախորդած **Փշալարերից այն կողմ** վիպակը, Ս. Խանզադյանի **Երեք տարի 291 օր** ռազմաճակատային օրագրերի գիրքը և այլ ստեղծագործություններ արտացոլել են գրողների ռազմական փորձը, նրանց անձնական ճակատագիրը, հանդիսացել հայկական պատերազմական արձակի նշանակալի նվաճումը:

Հերոսական-քնարական ժանրերի ստեղծման ու զարգացման գործում վիթխարի դեր է խաղացել շոլոխովյան գեղարվեստագեղագիտական ավանդույթը, պատերազմի շոլոխովյան ըմբռնումը: Հայրենական մեծ պատերազմին նվիրված իր ստեղծագործություններում, այդ թվում և **Նրանք մարտնչել են հայրենիքի համար** վեպում Շոլոխովը չի վերակերտում խոշորագույն գործողությունների ընթացքը՝ դրանց մասնակիցների ողջ կազմով: Նա պատմում է տեղական նշանակություն ունեցող մարտերի, շարքային զինվորների մասին, սակայն ստեղծում է զինվորական կյանքի հանրագիտարան՝ մարդկային կեցության փիլիսոփայությամբ հագեցած: Իր այս կողմով իսկ շոլոխովյան էպիկական պատումը խթանեց հերոսական-քնարական ժանրերի զարգացումը, նպաստեց քնարական-փիլիսոփայական սկզբունքի հաստատմանը, դրանցում արտացոլվող կյանքի փաստագրական հավաստիությանը:

Պատերազմը, կռվող մարդու կերպարը գեղարվեստական հետազոտության մշտական նյութ են: Պատերազմական արձակում կարևոր տեղ են գրավում արդիականության կենսական խնդիրները, հասարակության առաջ մարդու պարտքի, իր հերոսների ճակատագրի համար հասարակության պատասխանատվության հարցերը:

Որո՞նք են 70—80-ական թվականների պատերազմական արձակի բնորոշ միտումները: Խոսելով այդ մասին՝ ՍՍՀՄ գրողների միության վարչության՝ ռազմագեղարվեստական գրականության հանձնաժողովի նախագահ Վ. Կարպովը նշել է երեք հիմնական միտում: Առաջին. խառնվածքի հոգեբանական բարդացումը և հերոսների սխրանքների հիմնավորումն ու խոր վերլուծությունը (Վ. Բիկով, Գ. Բակլանով, Վ. Աստաֆև, Վ. Ռասպուտին, Գ. Նոսով): Երկրորդ. քաղաքական վեպի ժանրին դասվող գրքեր (Ա. Չակովսկու և ուրիշների): Եվ, վերջապես, երրորդը՝ «որն իր մեջ զուգակցում է հիշյալ երկուսի առանձնահատկությունները՝ և՛ սոցիալ-հասարակական լայնամասշտաբ ընդգրկումը, և՛ հերոսների բնավորության խոր հոգեբանական մշակումը»: Այս ուղղությանն են դասվում Յու. Բոնդարևի, Մ. Ալեքսեևի, Ա. Անանևի, Օ. Գոնչարի, Մ. Ստելմախի, Դ. Գրանինի, Յ. Ավիժյուսի, Պ. Կուսբերգի, Ի. Շամյակինի ստեղծագործությունները («Лит. газета», 1985, հունվարի 30):

Կարևոր ուղղություն պետք է համարել պատերազմին նվիրված փաստագրական գրականությունը, որի փայլուն օրինակներից են Ա. Կրոնի **Հեռավոր նավարկության կապիտանը,** Դ. Գուսարովի **Գթասրտությունից անդին** և այլն:

Հումանիզմի հզոր լիցք ունի Դ. Գրանինի **Դեռ նշմարվում է հետքը** վիպակը:

բնավորությունների նոր, առավել խոր գեղարվեստական ընկալման արգասիք է այն: Վիպակի հերոս լեյտենանտ Սերգեյ Վոլկովը «ինքնադրսևորվում» է իր նամակներում: Վոլկովի համագնդեցի, նույնպես լեյտենանտ, լենինգրադցի Անտոն Մաքսիմովիչ Դուդարևը տասնամյակներ անց դիպվածով կարդում է Վոլկովի՝ վրացուհի Ժաննա Նիժարաձեին հասցեագրած ռազմաճակատային նամակները: Թեև ուշացումով, երեք տասնամյակ անց, Ժաննա Նիժարաձեն հասկացել էր, որ ամեն մի մարդու երջանկությունը ինքնանվիրումն է մարդկանց բարօրությանը, իր ուժերը դրան ծառայեցնելը: Ժաննա Նիժարաձեի, ինչպես և Անտոն Մաքսիմովիչի համար ակներև է դառնում, որ կյանքի օրենքը կարող է լինել միայն ազնվության սկզբունքը, որ ողջ լավագույնը կյանքում ստեղծվում է ոգու անընկճելի ուժով:

Եվս մի հանդիպում Հայրենական մեծ պատերազմի հերոսի հետ: Այս արդեն Վ. Կարպովի **Զորավարը** փաստագրական վեպի հերոս գեներալ Ի. Ե. Պետրովն է: Պետրովը ղեկավարում էր Օդեսայի և Սևաստոպոլի պաշտպանությունը, որոնց հետագայում շնորհվեց հերոս-քաղաքի կոչում: 73 օր՝ 1941 թվականի օգոստոսի 5-ից մինչև հոկտեմբերի 16-ը, Օդեսան դիմացավ՝ ամբողջ երկրից կտրված հակառակորդի ուժերով և ծովով: Քաղաքի պաշտպանները ցուցադրում էին տոկունության, քաջության, զանգվածային հերոսության օրինակներ: Նրանք անում էին ամեն ինչ՝ իրենց զինվորական պարտքը կատարելու համար:

Հայրենական մեծ պատերազմի պատմության վառ էջերից մեկը՝ Սևաստոպոլյան հերոսապատումը, մի անգամ ևս դրսևորեց գեներալ Ի. Ե. Պետրովի զորավարական մեծ տաղանդը, ցուցադրեց հոգևոր մեծագույն ուժը սևաստոպոլցիների՝ շարքայինների, սպաների, գեներալների, ծովակալների, այն բոլորի, ովքեր պաշտպանում էին այդ լեգենդար **քաղաքը:**

Գեղարվեստավավերագրական ստեղծագործությունների հետ մեկտեղ գրականության ոլորտում զգալի տեղ էր գրավում և, այսպես կոչված, պատերազմին նվիրված ավանդական արձակը:

Ի. Ստադնյուկի **Պատերազմ** վեպի երեք գրքերը վաղուց արդեն գրավել են ընթերցողների լայն շրջանակ, հաստատուն կերպով մտել Հայրենական մեծ պատերազմի մասին ստեղծված գրականության ֆոնդը: Եվ ահա ընթերցողի սեղանին է գրողի նոր գիրքը՝ **Մոսկվա—41-ը:** Ստադնյուկն այստեղ պատումը շարունակում է, նկարագրում Մոսկվայի համար մղված մարտերը: Կրկին հանդիպում ենք վաղուց ծանոթ սիրելի հերոսների: Ոճով ու կառուցվածքով ավանդականին դասվող այս վեպում մարմնավորված է մարտնչող մարդու և ժողովրդի ճակատագրերի անքակտելիությունը: Մոսկվայի համար մղված ճակամարտը վեպում նկարագրվում է որպես մի հերոսապատում, ուր խտացված է սովետական ժողովրդի բարոյական ու ֆիզիկական վիթխարի ուժը, որը կարողացավ ո՛չ միայն դիմագրավել ֆաշիստական ռազմական մեքենայի հրեշավոր ուժին, այլև խորտակել այն:

ՈՒԹՍՈՒՆԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ նոր ստեղծագործություններով հարստացավ և հայկական պատերազմական արձակը: Դրանք են՝ Հ. Հովհաննիսյանի, Մ. Սարգսյանի ռազմաճակատային կյանքի գեղարվեստական խրոնիկան, Բ. Հովսեփյանի վավերագրական գործերը, պատերազմի ժամանակվա թիկունքի մասին գրված հոգեբանական, բարոյականեցաղային մի շարք վիպակներ ու պատմվածքներ: Գրող-ռազմաճակատայինների գրվածքներն առաջվա պես ինքնակենսագրական են: Պատերազմի թեմային դիմելը նրանց համար այսօր վերադարձ է դեպի իրենց՝ պատերազմով այրված պատանեկության լեգենդար տարիները: Ուստի և, չնայած Հրաչյա Հովհաննիսյանի **Պատերազմի դեմքը** վիպակը գրված է պատերազմի ավարտից համարյա քառասուն տարի անց, այն արտացոլում է ջահել զինվորի աչքով տեսածը, անփորձ, բայց խորազգաց սրտով զգացածը: Առինքնող է շարադրանքի անբռնազբոս եղանակը: Թվում է, թե հերոս-պատմողը հերթականությամբ նկարագրում է այն ամենը, ինչ եղել է: Նա խոսում է այնպես, ինչպես իր անձնական կյանքի, պատերազմում տեսածների մասին հավանաբար բազմիցս պատմել է իր բարեկամներին, ընկերներին:

Եվ, այնուամենայնիվ, **Պատերազմի դեմքը** իրադարձությունների մասնակցի վկայություն չէ սոսկ: Հ. Հովհաննիսյանն իր ստեղծագործությունը համարում է հուշագրական վիպակ: Եվ, չնայած նա ներկայացնում է «իր շուրջը» տեղի ունեցող պատերազմը, այն, ինչ տեսնում է մի զինվորը խրամատից, ստեղծագործության մտահորիզոնը սահմանափակ չէ: Մասնակի ճակատագրերի հանկարծական փոփոխությունների արտացոլման հետ մեկտեղ վիպակում ցույց են տրված պատերազմի ընդհանուր օրինաչափությունները, կռվող զինվորների ու սպաների վեհ սխրանքների, հերոսության ու մարդասիրության ակունքները:

Գրողին մշտապես գրավել են մարդիկ, նրանց բնավորությունները, վարքագիծը պատերազմում, հոգեբանությունը, բարոյական կերպարը: Մեծ սիրով է նա հիշում շատ սպաների, քաղաշխատողների, զինվորների, որոնց հետ նրան վիճակվել է ապրել տագնապալի, ծանր օրեր: Ընդ որում պատերազմի շարքային մասնակիցը ոչնչով չի առանձնացնում իրեն իր նման միլիոնավոր հասակակիցներից: Նա չի կամեցել իրեն ներկայացնել ավելի լավ, քան ինքը կար, հետին թվով չի «սրբագրել» իր կերպարը: Ինքնաքննութագրումները, խոստովանությունները անկեղծ են, ճշմարիտ:

Հովհաննիսյանը ձգտում է իր գրքում ցույց տալ թե՛ մարդկային ողբերգությունը, թե՛ սխրանքը պատերազմում— պատերազմի դեմքը: Պատերազմը դարձել է գրողների ռազմաճակատային սերնդի բարոյական հիշողությունը, նրանց սեփական ցավը: Գրողի նպատակն է եղել պարտք չմնալ նահատակների վերջին բաղձանքին: «Այս գիրքն իմ կյանքի գիրքն է,— գրում է նա,— բայց այն նորից նվիրված է նրանց հիշատակին, ովքեր չվերադարձան պատերազմի անծայր ու սև դաշտերից»: Հ. Հովհաննիսյանի վիպակը ծանրակշիռ ավանդ է Հայրենական մեծ պատերազմին նվիրված հայ արձակում:

Այդ հրաբորբ տարիներին հավերժ երիտասարդ մնացած սերնդակիցների մասին իր սքանչելի է հյուսել պատերազմի մասնակից գրող Մ. Սարգսյանը: Մեկ տարի առաջ լույս է տեսել նրա ծրագրած եռագրության առաջին գիրքը՝ **Աշխարհը պատերազմից առաջ:** Մարտիկ գրողը շուտով ընթերցողին կներկայացնի երկրորդը՝ **Չմակարդվող արյուն** վերնագրով:

Իր զինվորական անցյալին կրկին անդրադարձել է Բ. Հովսեփյանը՝ **Երբ ես այս աշխարհը եկա** վավերագրական պատմվածքում: Գրողի հուշերում կան **Սերմնացանները չվերադարձան** վեպից ընթերցողին ծանոթ շատ ազգանուններ, որոնց նա սիրով է հիշում: Էջ առ էջ նկարագրվում են ծանոթ դրվագներ՝ կապված հակառակորդի՝ առաջին խփված ինքնաթիռի հետ, Պերեկոպի մոտ դպրոցի պատանի շրջանավարտներից կազմված վաշտի ողբերգական ոչնչացման մասին, վաշտ, որը ղեկավարում էր ավագ լեյտենանտ դարձած երբեմնի ուսուցիչը՝ ռազմական գործին լրիվ անիրազեկ մի մարդ:

Այս ստեղծագործությունների հրապարակումը ցույց է տալիս, որ պատերազմական թեմայով գրողներին հուզում, դադար չի տալիս այն: Սակայն առավել կարևոր է այդ սերնդի գրողների առջև հառնած անցյալի, իրենց զինվորական կենսագրության նորովի ըմբռնումը:

Հայրենական մեծ պատերազմի թեմային դիմել են և ավելի երիտասարդ սերնդի գրողներ՝ Զ. Խալափյանը, Հովհ. Մելքոնյանը, Մ. Մնացականյանը և ուրիշներ: Գրողների այս սերունդը պատերազմական արձակում ավելի շատ շեշտում է խոհական և հոգեբանական կողմը: Եվ, այնուամենայնիվ, ձգտումը ամբողջական ընդհանրացումների, պատերազմի «մեխանիկայի» և սխրանքի ուսումնասիրությունից անցումը դեպի գոյության մեխանիկային՝ պատերազմական նյութի հիման վրա, միանգամայն օրինաչափ երևույթ է: Այս սերնդի գրողների կողմից պատերազմական մոտիվների մշակման յուրահատկությունը նաև այն է, որ ավելի ու ավելի առաջին պլան է քաշվում շեշտված հակապատերազմական թեման:

Զորայր Խալափյանի **Ջերմանց մխիթարություն** վիպակի հիմնական գաղափարը խորապես հումանիստական է և համահնչուն Վ. Աստաֆևի **Հովիվն ու հովվուհին** հովվերգությանը: Գրաքննադատ Վ. Դմիտրիևը այսպես է բնութագրում Վ. Աստաֆևի վեպում մարմնավորված գեղարվեստական հայտնագործության լեյտմոտիվը. «Պատերազմը կործանեց ո՛չ միայն նրանց, ովքեր սպանվեցին, այլև նրանց, ովքեր կենդանի մնացին, նույնիսկ չվիրավորվեցին. նրանցից ևս այն խլեց թանկագինը, անփոխարինելին, անդառնալիորեն զրկեց կենսալիությունից: Այս խորաթափանց

հայտնագործությունն ավելի ակնբախ է դարձնում ողբերգության չափերը, հաղթանակի արժեքը և հաղթանակած ժողովրդի ուժը»:

Կենդանի մնաց և Խալաթյանի վիպակի հերոսուհին՝ Գայանե Ջանջուտովան, որ հետևելով հոր և եղբոր օրինակին, մեկնեց ռազմաճակատ: «Երկու տարի անց,— կարդում ենք վիպակում,— Գայանեի մասին գրեցին թերթերում, լուսանկարը տպագրեցին: Նա հերոսական պայքար էր մղում թշնամու թիկունքում, օգնում պարտիզաններին: Եթե լուսանկարը չլիներ, չէին էլ իմանա, որ Հովակիմի աղջիկն է: Լուսանկարը կտրեցին, դրին շրջանակի մեջ և կախեցին ակումբում»:

Անցնելով հրի ու ջրի միջով՝ Գայանե Ջանջուտովան վերադառնում է հարազատ քաղաքը: Հերոսուհուն դիմավորում են մեծ հանդիսավորությամբ: Ըստ սովորական տրամաբանության, աղջկա կյանքն արդեն պիտի ընթանար ինչպես հարկն է: Սակայն այլ են գեղարվեստական տրամաբանության օրենքները: Ֆաշիստական գերության մեջ Գայանեի կրած տառապանքներն ու նվաստացումները, ավա՜ղ, չեն մնացել անցյալում, չեն անցել անհետ: Դրանք էլ պատճառ են դառնում նրա ողբերգական մահվան...

Հայկական պատերազմական արձակում թեմատիկ ու ոճաստեղծային առումով երևույթ է Հովհ. Մելքոնյանի **1946 թվականը** վիպակը: Այն բուն պատերազմի մասին չէ, այլ դրա ծանր հետևանքների, այն կորուստների, որոնք չեն կարող լրացվել կամ կլրացվեն միայն հաջորդ սերունդների միջոցով: Հաշմանդամ զինվորի՝ Մխիթար Սողոմոնյանի, կերպարը գրողն օգտագործել է կյանքի, պատերազմի ու խաղաղության բարդ փիլիսոփայությունը, հումանիզմի փիլիսոփայությունը մարմնավորելու համար: **1946 թվականը** վիպակը տեղափոխում է մեզ Հովհ. Մելքոնյանի պատումի պայմանական-այլաբանական ոլորտը, ուր կերպարներն արդեն մեզ լավ ծանոթ են գրողի նախկին գործերից: Ձնայած այս հերոսը պատերազմից վերադարձած հաշմված, անճանաչելիության աստիճան խեղանդամված զինվորն է, բայց նա զերծ է անելանելիության զգացումից: Հակառակը, բարությունը, սերը, հերոսին անցյալ ու ներկա աշխարհին առնչող եղբայրական, ընկերական կապերը վիթխարի կենսահաստատ ուժ ունեն: Այն համոզում է, որ ծանր փորձություններ կրած, բարոյապես մաքուր և ամբողջական մնացած ժողովուրդը մեծ ապագա ունի: Հերոսի կողքին հառնում են ջահելները, որոնց հոգու մեջ թափանցել են ո՛չ միայն պատերազմի պատճառած տառապանքները, այլև այն ողջ լավը, որ կարողացել են պահպանել նրանց հայրերը, ավագ եղբայրները:

Հրատարակվել են նաև Մեծ հայրենականին նվիրված մի շարք գեղարվեստավավերագրական գործեր: Այսպես. օրինակ, Հայրենական պատերազմի ականավոր մարշալ Հովհաննես Բաղրամյանին է նվիրված Վ. Զաքարյանի **Զորավարը, մարդը, քաղաքացին** վավերագրական վիպակը, որը խարսխված է փաստագրական նյութերի, նրա հետ ունեցած սրտագին հանդիպումների անջինջ տպավորությունների վրա: Նույն հեղինակի գրչին են պատկանում երկու վիպակ ևս. **Նվեր Սաֆարյան**՝ նվիրված Թամանյան դիվիզիայի փառապանծ հրամանատարին և **Անմահությունը**՝ լեգենդար գնդապետ Սիմոն Զաքիյանի մասին:

Հայկական պատերազմական արձակի պատկերն ամբողջական չէր լինի, եթե մենք չանդրադառնայինք պատերազմի ժամանակվա թիկունքին նվիրված գործերին: Զ. Խալափյանի **Երիցուկի թերթիկները** վեպում, Ռ. Հովսեփյանի **Միչ**, Հովհ. Մելքոնյանի **Հեծանիվ** վիպակներում, Մ. Մնացականյանի **Դեկտեմբեր, Հունիս, Փետրվար** պատմվածքների շարքում տաղանդավոր կերպով արտացոլված է թիկունքի տղամարդկանց, կանանց ու երեխաների ծանր կյանքը, թիկունք, որտեղ, Մ. Սարգսյանի պատկերավոր արտահայտությամբ, «Ռազմաճակատի գիծն ուղղակի անցնում էր մարդկանց սրտերի միջով»: Վերջին տարիներս այդ գրականությունը հարստացել է Հ. Մաթևոսյանի **Այն ժամանակ, ձմռանը, Բաց երկնքի հին լեռները**, Մ. Մնացականյանի **Լուսաքողարկում**, Ռ. Հովսեփյանի **Որդան կարմիր** և մի շարք այլ ստեղծագործություններով:

Հայրենական մեծ պատերազմին նվիրված գրականության նկատմամբ ընթերցողների մեծ հետաքրքրությունը բավարարելու նպատակով «Սովետական գրող» հրատարակչությունն ամեն տարի թարգմանաբար լույս է ընծայում ռուս, ինչպես և եղբայրական մյուս հանրապետությունների գրողների՝ պատերազմական արձակի լավագույն գործերը: Միայն անցած հինգ տարում հրատարակվել են Ա. Չակովսկու **Հաղթանակ** հերոսապատումի երեք գրքերը, Ա. Ադամովիչի **Խատինյան պատմվածքը**, Գ. Բակլանովի **1941-ի հուլիսը, Ընկերները**, Յ. Ավիժյուսի **Կորսված տունը**, Ա. Կալինինի **Պատերազմի արձագանքը, Վերադարձ չկա**, Ա. Լիխանովի **Իմ գեներալը**, Ա. Ալեքսինի, Ա. Իվանովի, Վ. Ծամյակինի, Վ. Զակրուտկինի, Յու. Նագիբինի ստեղծագործությունները, երեխաների համար՝ Վ. Վորոբյովի **Հերոս եղիր, տղա՛ս**, Լ. Կոսմոդեմյանսկայայի **Պատմվածք Զոյայի և Շուրայի մասին** գործերը, շատ այլ գրողների վեպեր, վիպակներ, պատմվածքներ: 1980—1985 թթ. հայերեն թարգմանված պատերազմական արձակը կազմել է մոտ կես միլիոն տպաքանակ:

Երբեմն հարց է ծագում. իսկ ինչպես է վերաբերվում պատերազմական արձակին ժամանակակից երիտասարդությունը: Գրավո՞ւմ է արդյոք նրան: Գրող Ա. Ադամովը «Կոմսոմոլսկայա պրավդա» լրագրի այն հարցին, թե երիտասարդությունն ամբողջովին ընդունո՞ւմ է արդյոք այն ամենը, ինչ ասվում ու գրվում է պատերազմի մասին, պատասխանել է. «Կարծում եմ, այստեղ շատ բան պայմանավորված է նրանով, թե պատերազմական ժամանակից հետո ինչպիսի՛ մակարդակով է մարդկանց հասնում պատերազմական գրականությունը»:

Այո՛, այդպես է: Այստեղ ամեն ինչ կամ շատ բան վճռում է գրականության գաղափարագեղարվեստական մակարդակը: Ահա բացառիկ մի օրինակ՝ Լև Տոլստոյի **Պատերազմ և խաղաղությունը**: Դժվար թե որևէ մեկի մտքում հարց ծագի՝ գրական այդ անմահ ստեղծագործությունը հետաքրքրո՞ւմ է ժամանակակից պատանիներին ու աղջիկներին, թե՞ ոչ: Այն կարդացել են և կկարդան միշտ: Առանց **Պատերազմ և խաղաղության** հերոսների դժվար է պատկերացնել ներկա և ապագա սերունդների հոգևոր կյանքը:

Հայրենական մեծ պատերազմի պատմական, փիլիսոփայական, բարոյական, գեղարվեստական բովանդակությունն անսպառելի է, իսկ պատերազմի մարդը հանդիսանում է կրողը բարոյական զգաստության, այնպիսի հատկանիշների, որոնք հատկապես անհրաժեշտ են մեզ այսօր, ժամանակակից կյանքում:

Որքան էլ ժամանակը հեռացնում է մեզ պատերազմից, մեր գրականության համար այն շարունակում է մնալ մարդկային բնության իմացության կարևոր չափանիշը: Դրա մեջ բերվում են ժամանակակից աշխարհի սոցիալ-բարոյական, փիլիսոփայական-գեղագիտական երևույթները: Անցած ողբերգական ժամանակաշրջանի՝ պատերազմի թեմայում մարմնավորված դառը փորձը անմոռաց դաս է գալիք սերունդների համար: Պատերազմի մասին գրված գրքերը մեզ տանում են վաղուց անցած մի աշխարհ, որը, սակայն, միշտ մեզ հետ է, սովետական մարդկանց բոլոր սերունդների հետ: Բնականաբար, այդ աշխարհն ամեն մի գրող տեսել ու պատկերել է յուրովի:

Սովետական պատերազմական արձակի հաջողություններն անմիջականորեն կապված են այն վիթխարի աշխատանքի հետ, որն անդուլ կատարում է մեր կուսակցությունը գրականության և կուլտուրայի ղեկավարման ասպարեզում: ՍՄԿԿ համագումարների որոշումներում, վերջին տարիների կուսակցական փաստաթղթերում, ՍՍՀՄ գրողների միության վարչության հոբելյանական պլենումում դրսևորված է խորապես ստուգված կուսակցական տեսակետը պատմական անցյալի վերաբերյալ, շարադրված են մեր գրողների, արվեստի գործիչների խնդիրները Հայրենական մեծ պատերազմի բոցեղեն իրադարձությունների արտացոլման մարզում: Պայքարելով հանուն գրականության ու կուլտուրայի բարձր գաղափարայնության՝ կուսակցությունը միաժամանակ մշտապես շեշտում է, որ մեզ համար այս մարզում ոչ մի զիջում չի կարող լինել: Այս պահանջը լիովին վերաբերում է և պատերազմական արձակին: Մեծ հայրենականին նվիրված լավագույն ստեղծագործություններում մենք տեսնում ենք, թե ինչպես են կենսագործվում կուսակցության պահանջները, ինչպիսի կենդանի, անմիջական արձագանք է գտնում այն գեղարվեստական խոսքի սովետական վարպետների գործերում: Պատերազմում տարած մեր պատմական հաղթանակը այդ ստեղծագործություններում բնութագրված է որպես կոմունիստական կուսակցության ղեկավարած սովետական ժողովրդի հավերժական սխրանք, որպես սոցիալական նոր կարգի լենինյան վեհ գաղափարների հաղթանակ:

---

# ԱՆԿԱՐԵԼԻ Է ՄԹԱԳՆԵԼ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

**Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
*Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*
**ԱՆԴ. ՄԻՀՐԱՆՅԱՆ**
*Փիլիսոփայական գիտությունների թեկնածու*

ՀԱԶԱՐԱՄՅԱԿՆԵՐԻ ԻՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ընթացքում հայ ժողովուրդն անցել է դաժան պայքարի ու ծանր փորձությունների բովով: Իր քաջարիության ու տոկունության, իր բարձր մշակույթի շնորհիվ նա դիմակայել է օտարերկրյա զավթիչների բազմաթիվ արշավանքներին, արևելյան բռնապետություններին: Դարեր շարունակ Հայաստանը հեծել է շահական Պարսկաստանի և սուլթանական Թուրքիայի լծի տակ:

1828 թվականին Արևելյան Հայաստանի վրա ծագեց ազատագրության արշալույսը: Ռուսաստանի հովանու ներքո հայ ժողովրդի առջև բացվեցին զարգացման ու առաջադիմության նոր հորիզոններ:

Ռուսաստանի՝ որպես մեծ տերության դերի ու միջազգային կյանքում նրա նշանակության աճի հետ հայ ժողովրդի իրատեսորեն մտածող ներկայացուցիչները իրավացիորեն իրենց ժողովրդի ֆիզիկական ու հոգևոր ազատագրությունը տեսնում էին հենց Ռուսաստանի հետ դաշինքի մեջ: Օսմանյան կայսրության նկատմամբ ռուսական զենքի յուրաքանչյուր հաղթանակ, ռուսական դիվանագիտության յուրաքանչյուր միջազգային պայմանագիր մոտեցնում էր հույների ու սերբերի, բուլղարների և չեռնոգորցիների, վրացիների ու հայերի ազատագրության օրը: Ամեն անգամ թուրքերի դեմ ռուսների մղած յուրաքանչյուր հաղթական պատերազմից հետո հայ ժողովուրդը ողջունում էր ռուսներին՝ լինի դա Կարսում կամ Էրզրումում, Վանում, Ալաշկերտում կամ Բայազետում, Արևմտահայաստանի մյուս մարզերում, նրանց համարելով իրենց ազատարարներ թուրքական ճնշումից:

Եվ, ընդհակառակն, եվրոպական տերությունների ամեն մի քաղաքական ու դիվանագիտական գործողությամբ, որն ուղղված էր Ռուսաստանի տերիտորիալ ձեռքբերումները առավելագույնս սահմանափակելու նպատակին, զոհաբերվում էին հայ ժողովրդի կենսական շահերը: Մեծ Բրիտանիայի արտաքին գործերի մինիստր Սոլսբերին 1878 թվականին հազվադեպ անպատկառությամբ հայտարարում էր, որ «քրիստոնյաների փրկության որևէ մարդասիրական նկատառումով իմ ձեռքը կանգ չի առնի՝ ռուսների հետագա առաջխաղացումը կանխելու համար»: Եվ սրանք դատարկ խոսքեր չէին: Այսպես, Սան Ստեֆանոյի 1878 թվականի պայմանագրի 16-րդ հոդվածի համաձայն Արևմտահայաստանի նշանակալի մասը պետք է անցներ Ռուսաստանին: Սակայն անգլիական, գերմանական և այլ քաղաքագետներն ու դիվանագետները միասնական ճակատով հանդես եկան դրա դեմ, որի հետևանքով «Բեռլինի տրակտատը հայ ժողովրդի մի նշանակալի մասին,— կարդում ենք «Դիվանագիտության պատմության» մեջ,— թողեց թուրքական լծի տակ: Պատմությունը ցույց տվեց, որ կապիտալիստական երկրների այդ որոշումը ճակատագրական եղավ թուրքահայերի համար, այն նրանց դատապարտեց ֆիզիկական բնաջնջման» (История дипломатии, т. II, М., 1963, стр. 333):



Սովետական թուրքագետ Ա. Ս. Տվերիտինովան հետևյալ կերպ է բնութագրում Օսմանյան կայսրությանը ենթակա ժողովուրդների դրությունը. «Թուրքական արշավանքներն ուղեկցվում էին քաղաքների ու գյուղերի անողոք ավերածությամբ, նյութական և մշակութային արժեքների կողոպուտով, հարյուր հազարավոր խաղաղ բնակիչների գերեվարությամբ: Այդ արշավանքները թուրքական լծի տակ ընկած բալկանյան, կովկասյան, արաբ և այլ ժողովուրդների համար պատմական աղետ էին, որոնք երկար ժամանակով կասեցրին նրանց տնտեսական ու մշակութային զարգացման պրոցեսը» (Всемирная, история, т. IV, гл. XXI, стр. 544):

Օսմանյան կայսրության պատմությունը համոզիչ կերպով վկայում է, որ տիպիկ բռնակալական այդ պետության կառավարողները դարեր շարունակ իրենց արտաքին ու ներքին քաղաքականությունը կառուցում էին իրենց իշխանության տակ ընկած բոլոր ժողովուրդների անողոք ճնշման, ռասայական ու կրոնական հակամարտության, ազգային ինքնագիտակցության նվաստացման, ազգային-ազատագրական շարժումների բարբարոսական ճնշման վրա: Թուրքական կառավարող շրջանների ռասայականությունն արտահայտվում էր թուրք ազգի բացառիկության քարոզի մեջ, որն իբր կոչված էր կառավարելու և իշխելու մյուս ազգերի վրա: Գործնականորեն դա դառնում էր վայրենի հալածանքների ու բռնությունների քաղաքականություն բազմաթիվ ժողովուրդների՝ հույների, ալբանացիների, արաբների, բուլղարների, սերբերի, մակեդոնացիների, կիպրացիների, քրդերի ու այլոց նկատմամբ:

Արևմտահայաստանի բնակչության համար խավար գիշերը շարունակվեց: Արևմտահայությունը դարձավ ավերիչ, մահաբեր քաղաքականության զոհը: Աբդուլ Համիդ II սուլթանի օրոք XIX դարի 90-ական թվականներին դրվեց հայերի զանգվածային բնաջնջման պլանավորված քաղաքականության իրականացման սկիզբը: Օսմանյան պետության ռազմաֆեոդալական վերնախավի այդ քաղաքականությունն առանձնապես դաժանորեն սկսեց իրականացվել XIX դարի ավարտին և իր գագաթնակետին հասավ երիտթուրքերի հետադիմական դիկտատուրայի ժամանակաշրջանում, երբ պանթյուրքիզմը հռչակվեց որպես պետական քաղաքականություն:

1908 թվականին Օսմանյան կայսրությունում իշխանության գլուխ անցած երիտթուրքական կուսակցությունը («Միություն և առաջադիմություն»), ղեկավարվելով երկրի բռնի թուրքացման շովինիստական ծրագրով, նախապատրաստեց և առաջին համաշխարհային պատերազմի տարիներին իրականացրեց Օսմանյան կայսրության հայ բնակչության բնաջնջման համապարփակ ծրագիր: Երիտթուրքական շարժումը մի ուշացած, կիսակատար բուրժուական «հեղափոխություն» էր, որը իբրև ժառանգություն էր ստացել թուրքական ռազմաֆեոդալական բյուրոկրատիայի բոլոր հետադիմական գծերը: Ինչպես «Պրավդան» էր գրում, երիտթուրքերի ձգտումը՝ «թուրքացնելու Օսմանյան կայսրությունում ապրող սլավոններին, հայերին, հրեաներին և այլոց, է՛լ ավելի կոպիտ ու հետևողական բնույթ ստացավ, քան Աբդուլ Համիդի օրոք էր» («Правда», № 76, 1912):

XIX և XX դարերի սահմանագծում Օսմանյան կայսրությունում ապրող հայերի դրության օբյեկտիվ ուսումնասիրումը բացահայտում է ողբերգական այն իրադարձությունների իսկական պատճառները, որոնք կարճ ժամանակամիջոցում երեք անգամ՝ 1894—1896, 1909 և 1915—1916 թթ. հանգեցրին Արևմտահայաստանի բնակչության մեծ մասի՝ ոչնչով չարդարացված բնաջնջման: Ուշագրավ է, որ հայերի առաջին զանգվածային կոտորածը իրականացվել էր Թուրքիայի պատմության մեջ առաջին «սահմանադրական» միապետ Աբդուլ Համիդ II-ի ցուցումով: Ոչ պակաս ուշագրավ է նաև այն, որ երիտթուրքերը, որոնք իրենց դրոշին գրել էին Աբդուլ Համիդի դեմ պայքարի նշանաբանը և ազատության, հավասարության ու եղբայրության կոչ էին անում «օսմանցի հայրենակիցներին», որդեգրեցին թուրքերի ազգային բացառիկության ռասիստական գաղափարները և իրենց շովինիստական քաղաքականության մեջ հասան հայ ժողովրդի ցեղասպանության կազմակերպմանը:

«Турецкая республика» տեղեկագրքում (Մոսկվա, 1975 թ., էջ 32) ասված է. «առաջին համաշխարհային պատերազմից առաջ Թուրքիայում ապրած 2 միլիոն հայերից 1965 թվականին, պաշտոնական տվյալներով, մնացել է 33 հազար»:

դժնդակ ջարդը...» (К. Либкнехт. Мой процесс по документам. Перевод с немецкого. Петроград, 1918, стр. 5):

«Թուրքերը և հայերը» գրքում, որը լույս է տեսել 1919 թվականին Փարիզում, կան այսպիսի տողեր. «Այլևս ոչ մի կասկած չի կարող լինել, որ խոսքը ամբողջ հայ ազգը ոչնչացնելու թուրքական կառավարության հաստատ արտահայտված կամքի մասին է» (Tahmazian K., Turcs et Arméniens. Plaidoyer et requisitoire. Paris, 1919, pp. 113—117):

Հայերին ոչնչացնելու քաղաքականությունը պլանավորված է եղել մեթոդիկորեն ու միանգամայն սառնարյուն կերպով, հավաստում է դեպքերի ականատես, ամերիկացի դիվանագետ Լ. Էյնշտեյնը (Einstein L., Inside Constantinople. Former Minister Plenopotentioary of US Diplomatic Service. N. Y., 1918, p. VII):

Համաշխարհային համբավ վայելող ֆրանսիացի լեզվաբան Անտուան Մեյեն 1919 թվականի սկզբին հայտարարել է, որ «հայերի դժբախտությունն անասելի է»: Գերմանացի հայտնի արևելագետ Յոզեֆ Մարքվարտը 1919 թվականի հունվարին արտասանած մի ճառում իր կառավարությունից պահանջեց ջանքեր գործադրել՝ երիտթուրքերի պարագլուխներին գտնելու և նրանց միջազգային տրիբունալին հանձնելու համար: Առնոլդ Թոյնբին համոզված էր, որ հայկական կոտորածների ժամանակաշրջանում երիտթուրքերի քաղաքականության էին ծառայում ինչպես մոլեգին պանիսլամիզմը, այնպես էլ թուրքիզմն ու պանթյուրքիզմը:

Ամերիկացի հեղինակ Կլեր Պլայսի կարծիքով, այն, ինչ հայերի հետ տեղի ունեցավ 1915 թվականին Օսմանյան կայսրությունում, վերջին 25 տարիների ընթացքում նրանց դեմ իրագործված արյունահեղ ու ողբերգական դեպքերի տրամաբանական ավարտն էր: 1915 թվականի ողբերգության գլխավոր մեղավորը նա համարում է Օսմանյան կառավարությանը:

Սովետական արևելագետները, թուրքագետները իրենց աշխատություններում ցույց են տվել պանթյուրքիստական գաղափարախոսության ողջ հետադիմականությունը: Իրենց ռասիստական, շովինիստական և հակասովետական հայացքներով պանթյուրքիստները ֆաշիստների գաղափարական ամենահարազատ դաշնակիցներն են (Гасанова Э. Ю., Антикоммунизм в Турции. Сборник «Национально-освободительное движение и современная идеологическая борьба», Баку, 1973, стр. 102):

Չնայած այն բանին, որ թուրքական պետականությունն ու հասարակայնությունը ակնհայտորեն չէին ցանկանում ընդունել հայ ժողովրդի նկատմամբ կատարված ոճրագործությունը, 1918 թվականի հոկտեմբերից սկսած (երիտթուրքական վարչակարգի անկումից հետո), Էնվերի, Թալեաթի, Ջեմալի և այլոց կործանարար գործունեության քննադատությունը դարձել էր Կոնստանդնուպոլսի մամուլի գլխավոր թեման:

1918 թվականի վերջին և 1919 թվականի սկզբին Կ. Պոլսի «Սաբահ» և «Ենի գյուն» թերթերի խմբագիրները բանավեճ էին սկսել հայկական կոտորածների մեղավորներին հայտնաբերելու հարցի շուրջը: «Ամբողջ աշխարհը գիտե, որ հայկական կոտորածը կազմակերպված է եղել Իթթիհադի կենտրոնական կոմիտեի հրամաններով»,— հայտարարում էր «Սաբահ» թերթի խմբագիր Ալի Քեմալը («La Renaissance», Constantinople, 15.XII.1918):

«Սաբահ» թերթը (27.11.1918 թ.) գրում էր. «Այսօր գոյություն ունի արևի նման պարզ մի իրողություն, աղետ, դժբախտություն, որն ուրանալ անհնարին է: Սայիդ Հալիմի և Թալեաթի կառավարություններն իրենց անիծյալ հոգում նյութում էին մի զարհուրելի պլան՝ պատերազմի պատրվակով քրիստոնյաներին, հատկապես հայերին, արտաքսել մի նահանգից մեկ ուրիշը, ընդհուպ մինչև արաբական անապատ. և այդ տեղահանության ընթացքում գազանաբար, միջնադարում և նոր ժամանակներում չտեսնված տմարդի մեթոդներով սպանել ոչ միայն տղամարդկանց ու երիտասարդներին, այլև ծծկեր երեխաներին, կանանց, ծերունիներին, որպեսզի իսպառ կոտորեն, արմատախիլ անեն ողջ հայ ազգը»:

Այդ օրերին թուրք ժողովրդի շատ ներկայացուցիչներ հանդես եկան Թուրքիայի հայ բնակչության դեմ ուղղված տմարդի գործողությունների դատապարտմամբ:



Այսպես, Ջելալ Նուրի բեյը, որը պատերազմի ժամանակ Սայիդ Հալիմի և Թալեաթի կառավարությունների քաղաքականության մոլի երկրպագուն էր, «Իկդամ» թերթի 1918 թվականի նոյեմբերի 3-ի համարում խոստովանում էր. «Անխոհեմ դաժան քաղաքականությունը հայերի և հույների նկատմամբ կիրառվել է անիմաստ կերպով»:

Թուրքիայի հասարակական մեկ այլ գործիչ, Ծահաբեդդինը «Հադիսաթ» թերթում (1918 թվականի նոյեմբերի սկզբին) գրում էր. «Զգայուն թուրք և արաբ մուսուլմաններն անգամ չէին կարողանում զսպել արցունքները, երբ իրենց աչքերի առաջ տեսնում էին հայերի կոտորածի սահմռկեցուցիչ տեսարանը»:

Թուրք բանաստեղծուհի, այն ժամանակ հասարակական ակտիվ գործիչ Հալիդե Էդիպ խանումը «Վաքիթ» թերթում հրապարակել էր մի հայտարարություն. «Այն օրերին, երբ մենք զորեղ էինք, աշխատում էինք միջնադարյան մեթոդներով ոչընչացնել քրիստոնյաներին, մասնավորապես հայերին... Այսօր մենք ապրում ենք մեր կյանքի ամենատխուր ու ամենամռայլ օրերը: Ամերիկան և Անգլիան մեր մեջ տեսնում են մի պետություն, որը ոչնչացրել է իր անմեղ հպատակներին ու զավակներին: Ներկայիս կառավարությունը հայտարարում է, որ հայերին հարկավոր է վերադարձնել նրանց բնակության վայրերը...»: Էդիպը երիտթուրքերի ղեկավարներին մեղադրում էր հայերի դեմ կատարած ոճրագործության համար («La Renaissance», 22.XII.1918):

Թուրքական զինվորական տրիբունալը, որի կազմի մեջ կային թուրքական բանակի գեներալներ ու սպաներ, իր նիստերում լիովին ընդունեց երիտթուրքական պարագլուխների մեղավորությունը և նրանց դատապարտեց մահվան:

Երիտթուրքական պարագլուխների դատավարության օրերին նախկին մեծ վեզիր Թեվֆիկ փաշան իտալական մի թերթի հետ ունեցած հարցազրույցում պահանջեց ստեղծել միջազգային հանձնաժողով՝ հայերի բնաջնջման փաստերը ուսումնասիրելու համար: «Այդ միջոցով միայն Եվրոպան կկարողանա իմանալ ճշմարտությունը: Մենք ոչ միայն չենք ժխտում Հայաստանում տեղի ունեցած դեպքերի ծանր փաստը, այլև խորապես ափսոսում ենք դրանց համար: Մենք այժմ դատում ենք նրանց, ովքեր պատասխանատվություն են կրում»:

Դեռ 1919 թվականին թուրքական պառլամենտը Կոստանդնուպոլսում անգլերեն լեզվով հրապարակել էր «Թուրք—հայկական հարցը» (Թուրքական տեսակետը) գիրքը: Չնայած առաջին համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանի դեպքերի լուսաբանման ողջ միտումնավորությանը, այն ժամանակաշրջանի «թուրքական տեսակետն» անկասկած ավելի մոտ էր պատմական ճշմարտությանը, քան այժմ ջանում են ներկայացնել թուրք պատմաբանները:

Թուրք աշխատավոր ժողովրդի ամենաճշմարտացի վերաբերմունքը իր բանաստեղծության մեջ արտահայտել է կոմունիստ, ինտերնացիոնալիստ բանաստեղծ Նազըմ Հիքմեթը.

*«Վառվեցին լույսերը Սուրենի*
*Նպարեղնի խանութում:*
*Նա չի մոռացել կոտորածը*
*Հայկական:*
*Մինչև վերջ, մինչ մահ, գերեզման*
*Նա չի ների իր հոր սպանողներին:*
*Բայց նա սիրում է քեզ,*
*քանզի դու էլ չես ներել նրանց, ովքեր օգնել են,*
*որ Թուրքիայի ճակատին դրվի*
*այդ խարանն ամոթալի»*

(Хикмет Назым, Избранное. Изд. Ин. литературы, М., 1953, стр. 226—227):

Ժամանակի ընթացքում թուրքական բուրժուական պոլիտոլոգիան գրավեց խիստ շեշտված միտումնավոր դիրք, գնաց պատմական իրականությունը կեղծելու ճանապարհով:

Չնայած հայերի ցեղասպանության վերաբերյալ պատմագիտական ընդարձակ գրականության և աղբյուրագիտական հիմնարար հրապարակումների առկայությանը, ժամանակակից թուրք բուրժուական հեղինակները փորձում են աշխարհին ներկայացնել առաջին համաշխարհային պատերազմի ժամանակների այդ դեպքերի իրենց նոր «մեկնաբանությունը»: Նրանց այնպես է թվում, թե աշխարհում ոչ մի օրինակ

րածի զոհ են դարձել ոչ թե հայերը, այլ թուրքերը: Մեթոդը նոր չէ, բայց դա կարող է ազդել երիտասարդ ընթերցողների թեկուզև ոչ մեծ ու անփորձ մասի գիտակցության վրա և նրանց աչքում արդարացնել երիտթուրքերին և մասնավորապես թուրքական ամբողջ պետականությանը: Իսկ եթե ինչ-որ մեկը Եվրոպայում, Ամերիկայում ինչ-որ բանով, ինչ-որ ձևով հիշեցնում է երիտթուրքերի չարագործությունների իսկական փաստերի մասին, ապա թուրքական պաշտոնական պրոպագանդան անմիջապես վիթխարի աղմուկ է բարձրացնում:

Բոլոր նրանք, ովքեր փորձում են կեղծել հայ ժողովրդի պատմությունը, պետք է իրենց համար պարզ պատկերացնեն՝ հայերի ողբերգությունը չի կարելի ոչ ջնջել, ոչ էլ մոռացության տալ, ճիշտ այնպես, ինչպես չի կարելի մոռանալ ֆաշիստների ոճրագործությունները երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին:

Կասկած չկա, որ թուրքական հակագիտական, հակապատմական հրապարակումները կարող են հաջողություն ունենալ միայն անիրազեկ քաղքենիների մոտ: Դրանք նպատակ ունեն խեղաթյուրել պատմական ճշմարտությունը, արդարացնել երիտթուրքական դահիճների հակահայկական չարագործությունները:

Պատմության կեղծարարներին հակահարված են տալիս թուրք դեմոկրատները, կոմունիստները: Ն. Գյուրելը Թուրքիայի կոմկուսակցության Կենտկոմի «Աթըլըմ» թերթում (№ 8, 1983) գրել է. «Գերմանամետ իթթիհադ կուսակցության պարագլուխների ցուցումով 1915 թվականին Օսմանյան կայսրության տարածքում ապրող մեկ միլիոնից ավելի հայեր բարբարոսաբար ոչնչացվեցին, իսկ հարյուր հազարավոր հայեր էլ ստիպված եղան հեռանալ իրենց հարազատ հողերից և ցրիվ գալ ամբողջ աշխարհով մեկ»: Հեղինակը 1915 թվականի ցեղասպանությունը համարում է «Թուրքիայի պատմության ամենաամոթալի էջերից մեկը»:

70-ական թվականների երկրորդ կեսից, 1915 թվականի ողբերգական դեպքերից տասնամյակներ անց, Արևմտյան Եվրոպայի երկրների, ԱՄՆ-ի պատմաբանները, քաղաքագետները վերստին որոշակի հետաքրքրություն են ցուցաբերում հայ ժողովրդի նոր և նորագույն պատմության պրոբլեմների նկատմամբ: Բազմաթիվ մենագրություններ, ժողովածուներ, ամսագրային ու լրագրական հոդվածներ են լույս տեսնում Ֆրանսիայում, ԱՄՆ-ում, Անգլիայում, ԳՖՀ-ում, Հունաստանում, Լիբանանում և ուրիշ շատ երկրներում: Պրոբլեմը լուսաբանելու գործում որոշակի հետաքրքրություն են ներկայացնում արխիվային և այլ փաստաթղթերի նոր հրապարակումները Արևմուտքի մի շարք երկրներում:

Հիշատակելի է Սորբոնի համալսարանի հրատարակությամբ ֆրանսերեն լույս տեսած «Մեծ տերությունները, Օսմանյան կայսրությունը և հայերը ըստ ֆրանսիական արխիվների (1914—1918)» ժողովածուն, որը 757 արխիվային արժեքավոր փաստաթուղթ է պարունակում: Ժողովածուի նյութերն ամբողջապես հերքում են ժամանակակից թուրք հեղինակների հիմնազուրկ պնդումները, հայ ժողովրդի դահիճների արյունոտ գործերն արդարացնելու նրանց ջանքերը:

Ամերիկյան ազգային արխիվների բազմաթիվ վավերագրերի բովանդակությունն ամբողջովին ու լիովին հաստատում է այն անհերքելի ճշմարտությունը, որ Օսմանյան կայսրության կառավարողները վարել են հայ ժողովրդի զանգվածային բնաջնջման քաղաքականություն, հերքում են թուրք հեղինակների ու նրանց օտարերկրյա փաստաբանների ամենայն հիմքերից զուրկ պնդումները: Այդ բանում կարող է համոզվել ամեն ոք, ով կցանկանա ծանոթանալ Կոստանդնուպոլսում ԱՄՆ-ի դեսպանության այն հեռագրերին, որոնք 1915 թվականին և հետագա տարիներին ուղարկված են եղել Վաշինգտոն՝ պետական դեպարտամենտ (United States National Archives, General Records of the Departament of State, Record Group 59 (Decimal File, 1910—1929): Տե՛ս Armenian Review, Spring, 1984, pp. 60—145): Հայերի կոտորածի մասին իր առաջին հեռագիրը դեսպանությունն ուղարկել էր 1915 թվականի ապրիլի 30-ին: 1915 թվականի մայիսի 25-ին ԱՄՆ-ի դեսպան Հենրի Մորգենթաուն պետական քարտուղարին հաղորդում էր հայերի նկատմամբ ստեղծված սարսափելի իրավիճակի մասին: 1915 թվականի մայիսի 28-ի հեռագրում հաղորդվում էր այն մասսայական կոտորածի մասին, որին մասնակցել էին օսմանյան պետական իշխանությունները: Նույն թվականի հուլիսի 10-ին ամերիկյան դես-



պանը գրում էր արդեն չտեսնված սարսափների, մասսայական ձերբակալությունների ու տեղահանությունների մասին: «Ինչպես երևում է,— նշում է նա,— առկա է հայ ազգի սիստեմատիկ ոչնչացման պլան» (նույն տեղը, էջ 77):

Այս վավերագրերից ամեն մեկի մեջ հաստատվում է երիտթուրքերի կողմից հայերի մասսայական ոչնչացման փաստը:

Ժամանակի ընթացքում երիտթուրքերի ահարկու ոճրագործությունների դատապարտումը, ցեղասպանության պաշտոնական ընդունումն ավելի ու ավելի էր դառնում Թուրքիային ներկայացվող պահանջ:

Բեռնարդ Լևինը «Թայմս» թերթի էջերում (1981 թ. մարտի 26-ին) «Ի՞նչ են հիշում հայերը» հոդվածում գրում է. «Անհնարին է ստույգ պարզել զոհերի թիվը, բայց կասկած չկա, որ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ և հետպատերազմյան առաջին տարիներին սպանվել է 1,5 միլիոն հայ»: Նա նշում է, որ սկսած Աբդուլ Համիդի ժամանակներից հայկական կոտորածները չեն դադարել մինչև մեր դարի 20-ական թվականները:

Ամերիկացի լրագրող Ք. Մեյերը «Հայերի հիշողությունը և թուրքերի հիշողության մթագնումը» հոդվածում հիշեցնում է, որ 1915 թվականին «Թուրքիայի մեծ ու բարգավաճող հայ համայնքը դարձավ XX դարի առաջին ցեղասպանության զոհը» (The New York Times, 23.IV.1983):

«Իսկական ցեղասպանություն»՝ այսպես է վերնագրված Ժան Գարզուի գիրքը: Հեղինակը բանավեճի մեջ է մտնում այս կամ այն թուրք պատմաբանի հետ, քանի որ այդ հեղինակների կատարած նենգափոխությունները համարում է ոչ թե առանձին հեղինակների ձեռքի գործ, ոչ թե նրանց սուբյեկտիվիզմի կամ սխալների արդյունք, այլ մի պաշտոնական «տեսություն», և այդ տեսությունն ապացուցելու անպարտելիս գործով է զբաղված այժմ թուրքական գրեթե ամբողջ պատմագիտությունը:

Բելգիական մի թերթ մեծ հոդված էր նվիրել պատմության թուրքական կեղծարարություններին, այն վերնագրելով՝ «Մահացածներ, որոնց նորից են սպանում»: Իսկ շվեդացի դիվանագետ Ռենե դե Ունկը գտնում է, որ հայերի սպանությունները «ցնցեցին եվրոպացիների խիղճը» (The New York Times, 1.VIII.1983):

Ֆրանսիայի պրեզիդենտ Ֆ. Միտերանը, որը 1984 թվականի հունվարին այցելել էր Իզեր դեպարտամենտը, արել էր հետևյալ հայտարարությունը. «Ֆրանսիան բոլոր հանգամանքներում էլ հիշեցնելու է հայերի ազգային ինքնագիտակցության մասին, որը նշված է եղել ցեղասպանության մեծ դրամայով... Չի կարելի ջնջել ցեղասպանության հետքը, որը հարված է հասցրել ձեր ժողովրդին... Դա պետք է տպավորված լինի մարդկանց հիշողության մեջ, իսկ այդ զոհերը պետք է երիտասարդների համար ծառայեն որպես դաս և միաժամանակ որպես տոկունության ու գոյատևման կամքի օրինակ, որպեսզի մարդիկ բոլոր ժամանակներում էլ իմանան, որ դա ներկայի ժողովուրդ է և որ նա ունի ապագա» («Humanité», 9.I.1984):

Զարմանալի ոչինչ չկա, որ չնայած թուրքական պատմագրության հուսահատական փորձերին, պատմական ճշմարտությունը Թուրքիայի անցյալ դարի 90-ական թվականների և 1915 թվականի դեպքերի մասին իր համար ուղի է հարթում դեպի Արևմուտքի միլիոնավոր մարդկանց մտքերը: Ավելի ու ավելի հաճախ են լսվում արևմտյան հրապարակախոսների ու քաղաքական գործիչների կոչերը թուրքական իշխանություններին և միջազգային հասարակայնությանը՝ ընդունելու Օսմանյան կայսրությունում հայերի ցեղասպանության փաստը, ինչպես որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ընդունվեց ու դատապարտվեց ֆաշիզմի կողմից հրեաների, սլավոնների և այլ ազգությունների զանգվածային բնաջնջման փաստը:

Վերջերս արևմտագերմանական «Ցայտ» հանդեսը մեծ հոդված էր նվիրել հայկական պրոբլեմին: Հոդվածի հեղինակներն անհերքելի են համարում թուրքական իշխանությունների մեղքը 1915 թվականի ցեղասպանության համար և իրենց տարակուսանքն են հայտնում, որ ներկայիս թուրքական իշխանությունները չեն ընդունում ցեղասպանության փաստը: Նրանք նշում են, որ հայկական ազգային-ազատագրական շարժման հանդեպ թուրքական իշխանությունների ունեցած վախը հանգեցրեց այն բանին, որ «կառավարությունն Անկարայում գրավել է ժխտելու (ցեղասպանությունը:— Ջ. Կ., Ա. Մ.) համառ ու անխոհեմ դիրք»: Ըստ հանդեսի, թուրքական պաշտոնական իշխանությունների նման վերաբերմունքը հայ ժողովրդի

ռավարությանը՝ տվյալ հարցի վերաբերյալ որևէ օբյեկտիվ հետազոտություն թույլ չտալու և պրոբլեմի իրավաբանական լուծմանը խոչընդոտելու նրա ջանքերում:

Այն, որ ներկայիս թուրքական պոլիտոլոգիան կեղծում է փաստերը և անտեսում հայ ժողովրդի շահերը, աղաղակող անարդարացիության մի ակտ է երկու ժողովուրդների միջև եղած հարաբերություններում և խիստ դատապարտման է արժանի միջազգային ընկերակցության կողմից, որը փորձում է ՄԱԿ-ի շրջանակներում, առաջին հերթին ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների ջանքերի շնորհիվ դնել արդարացի աշխարհակարգի հիմքերը: Այնպիսի գործոններ, ինչպես համաշխարհային պատերազմների ու համապարփակ ցնցումների բացակայությունն է երկրորդ համաշխարհային պատերազմը ավարտվելուց հետո, նախկինում ճնշված բազմաթիվ պետությունների ազատագրումը գաղութային լծից, համաշխարհային քաղաքականության վրա ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների ազդեցության ուժեղացումը բարենպաստ պայմաններ ստեղծեցին, որպեսզի միջազգային հարաբերություններում ուժի քաղաքականությանը փոխարինելու գա արդարության սկզբունքի վրա հիմնված քաղաքականությունը: Անկասկած է, որ դա կարող է որոշակի նախադրյալներ ստեղծել արդարացիորեն գնահատելու նաև հայկական գենոցիդի պրոբլեմը: Այդպիսով համաշխարհային ընկերակցությունը կհաստատի իր վճռականությունը պայքարելու այն բանի համար, որ Օսմանյան կայսրության՝ հայերի ցեղասպանության նման ոչ մի հանցագործություն անպատիժ չմնա:

Սովետական Միության և Թուրքիայի միջև ներկայումս հաստատված հարաբերությունները խարսխված են երկու երկրների շահերը փոխադարձորեն հարգելու, փոխշահավետ համագործակցությունը երկուստեք զարգացնելու հիմքի վրա: Հարևան երկրների ու ժողովուրդների և Թուրքիայի ու թուրք ժողովրդի միջև բարենպաստ, գործարար հարաբերությունների ողջ կոմպլեքսի հաստատման պրոցեսի հետագա խորացմանը կարող էին մեծապես նպաստել անցյալից եկող և մեր օրերում էլ դեռ այդ հարաբերությունների վրա ստվեր նետող պատմական անարդարությունների օբյեկտիվ գնահատումը, դրանից արվող ճշմարիտ և անկանխակալ հետևությունները:

Պատմության դասերը պետք է ծառայեն ժողովուրդների միջև բարեկամության ու համագործակցության զարգացմանը:

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 19.03.85 թ.: Ստորագրված է տպագրության 16.04.85 թ.: ՎՖ 05186: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 17382: Պատվեր 607:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.